ISSN 0130—8114



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1981 5.

## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5
ՄԱՅԻՍ, 1981
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
**Выходит один раз в месяц на армянском языке**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — **теоретический и политический журнал ЦК КП Армении**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ★ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում

# ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԼՈՒՅՍԻ ՆԵՐՔՈ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆԱՄԱԿՆԵՐԻ ԵՎ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ ՏԱՐՎՈՂ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՏԱԳԱ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ խոսվում է աշխատավորների նամակների և առաջարկությունների՝ որպես մասսաների հետ կուսակցության կենդանի կապի կարևորագույն միջոցի հսկայական նշանակության մասին։ Քաղաքացիների նամակների, խնդրանքների և գանգատների նկատմամբ զգայուն, ուշադիր վերաբերմունքը յուրաքանչյուր կուսակցական աշխատող, յուրաքանչյուր ղեկավար պարտավոր է դիտել որպես իր պարտքը ժողովրդի հանդեպ, կուսակցության հանդեպ։

*Կուսակցության XXV և XXVI համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում ՍՄԿԿ Կենտկոմում ստացվել է ավելի քան երեք միլիոն նամակ, Կենտկոմի ընդունարանում ընդունվել են գրեթե 100 հազար այցելուներ։ Այդ ժամանակաշրջանում տեղական կուսակցական մարմինները քննության են առել քաղաքացիների 15 միլիոն գրավոր և բանավոր դիմում։*

*ՍՄԿԿ XXVI համագումարի հասցեով ստացվել է ավելի քան 270 հազար նամակ, ողջույն և աշխատանքային զեկույց, որոնք արտացոլում են աշխատավորների խոր շահագրգռվածությունը երկրի զարգացման սոցիալ-տնտեսական հարցերի լուծմամբ, նրանց հոգատարությունը պետության և հասարակության գործերի նկատմամբ։ Աշխատավորների շատ առաջարկություններ և դիտողություններ օգտագործվել են համագումարի փաստաթղթերը նախապատրաստելիս։*

*Աշխատավորների նամակները և առաջարկությունները կուսակցական կազմակերպություններին օգնում են ավելի լավ կողմնորոշվելու իրադրության մեջ, ավելի օբյեկտիվորեն գնահատելու կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների և հասարակական կազմակերպությունների աշխատանքը, ավելի պարզորոշ տեսնելու թերությունները և դրանց վերացման ուղիները, մշակելու ՍՄԿԿ-ի լենինյան կուրսին համապատասխանող քաղաքական ճիշտ որոշումներ։ Դա քաղաքի և գյուղի աշխատավորների կարիքների և պահանջմունքների, մեր հասարակության սոցիալ-տնտեսական, քաղաքական և հոգևոր կյանքի տարբեր բնագավառներում տիրող իրավիճակի մասին ինֆորմացիայի առավել վստահելի և արժեքավոր աղբյուրներից մեկն է, սովետական քաղաքացիների սահմանադրական իրավունքների իրականացման միջոցներից մեկը։*

*Վերջին տարիներս կուսակցական և սովետական մարմինները, տնտեսական և հասարակական կազմակերպությունները էապես բարելավել են քաղաքացիների նամակների և առաջարկությունների հետ տարվող աշխատանքը։ Դա մեծապես նպաստել է աշխատավորական կոլեկտիվներում, հիմնարկներում և կազմակերպություններում աշխատանքի ու կենցաղի լավ պայմանների, բարոյահոգեբանական առողջ կլիմայի ստեղծմանը, արտադրական պլանների հաջող կատարմանը։*

*Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմը նշում է, որ մի քանի կենտրոնական*



*պետական, տնտեսական և հասարակական մարմիններում, տեղական կուսակցական, սովետական և այլ կազմակերպություններում լուրջ վրիպումներ կան քաղաքացիների գրավոր և բանավոր դիմումները քննության առնելու գործում։*

*Թույլ են տրվում օրինական խնդրանքների և հիմնավորված դիմումների նկատմամբ անհոգի, բյուրոկրատական վերաբերմունքի, ավելի վաղ տրված խոստումները չկատարելու փաստեր, մի բան, որը քաղաքացիներին ստիպում է դիմել վերադաս կազմակերպություններին ու հիմնարկներին, կատարել հեռավոր ուղևորություններ՝ հասնելու համար իրենց խնդրանքների բավարարմանը։*

*Որոշ կուսակցական և սովետական մարմիններ երբեմն պատշաճ սկզբունքայնություն և խստապահանջություն հանդես չեն բերում աշխատավորների նամակները քննության առնելու գործում բյուրոկրատիզմ և քաշքշուկ ցուցաբերող պաշտոնատար անձանց գործողությունները գնահատելիս, բավարար սրությամբ չեն արձագանքում նամակներում բովանդակվող աչքակապության փաստերին, քննադատության համար հետապնդելու փաստերին, աշխատանքում տեղ գտած թերությունների մասին ահազանգերին։ Առկա են քաղաքացիների ընդունելության սահմանված կարգը չկիրառելու դեպքեր։*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է.*

*1. ՍՄԿԿ Կենտկոմի բաժիններին, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեին, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային ու շրջանային կոմիտեներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, սովետական, արհմիութենական, կոմերիտական մարմիններին, մինիստրություններին, գերատեսչություններին, տնտեսական կազմակերպություններին՝ աշխատավորների նամակների և առաջարկությունների հետ տարվող աշխատանքում խստիվ ղեկավարվել կուսակցության XXVI համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած այն դրույթներով, որ քաղաքացիների նամակների, խնդրանքների ու գանգատների նկատմամբ զգայուն, ուշադիր վերաբերմունքը յուրաքանչյուր կուսակցական աշխատող, յուրաքանչյուր ղեկավար պարտավոր է համարել իր պարտքը ժողովրդի հանդեպ, կուսակցության հանդեպ։*

*2. Կուսակցական, սովետական, արհմիութենական ու տնտեսական մարմիններին՝ կոնկրետ միջոցառումներ մշակել ու իրականացնել նամակների հետ տարվող աշխատանքի և քաղաքացիների անձնական ընդունելության ձևերի ու մեթոդների հետագա կատարելագործման, կուտակված դրական փորձի ամրապնդման, թերություններ և գանգատներ ծնող պատճառների վերացման նպատակով։*

*Սիստեմատիկաբար ստուգել ձեռնարկություններում, հիմնարկներում ու կազմակերպություններում աշխատավորների նամակների և ընդունելության հետ կապված աշխատանքի վիճակը, լսել ղեկավարների հաշվետվությունները, այդ հարցերը կանոնավոր կերպով քննարկել կուսակցական մարմինների պլենումներում և բյուրոներում, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմների նստաշրջաններում և նիստերում, մինիստրությունների ու գերատեսչությունների կոլեգիաներում։*

*Բարձրացնել ղեկավարների և պաշտոնատար անձանց անձնական պատասխանատվությունը աշխատավորների նամակների, առաջարկությունների ու բանավոր դիմումների հետ տարվող աշխատանքը ճիշտ կազմակերպելու, արծարծված հարցերի առնչությամբ ըստ էության օպերատիվ միջոցներ ձեռնարկելու, դիմողներին հիմնավորված կերպով և ժամանակին պատասխանելու համար։ Վճռականորեն կասեցնել քննադատությունը ճնշելու, նամակների հեղինակներին հետապնդելու փորձերը, բյուրոկրատիզմի, քաշքշուկի, պաշտոնատար անձանց զանցանքներն ու չարաշահումները գնահատելիս թույլ տրվող անսկզբունքայնության փաստերը։ Բացահայտել և վերացնել այն պատճառները, որոնք հարուցում են քաղաքացիների կրկնվող և կոլեկտիվ գանգատները։*

*3. Անհրաժեշտ համարել աշխատավորների նամակների, առաջարկությունների ու գանգատների խոր ուսումնասիրման լայն արմատավորումը կու-*

սակցական ու սովետական մարմինների, մինիստրությունների ու գերատես-
չությունների, հիմնարկների և կազմակերպությունների աշխատանքի պրակ-
տիկայում, նամակների բովանդակած ինֆորմացիայի օգտագործումը աշխա-
տանքում: Ավելի ակտիվորեն օգտագործել բաց նամակի օրեր, նամակների
հետ տարվող աշխատանքի մասին աշխատավորական կոլեկտիվների առջև
ղեկավարների հաշվետվություններ անցկացնելու, անմիջականորեն ձեռնար-
կություններում, կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում և
բնակչության բնակության վայրում քաղաքացիների կոնկրետ դիմումները քըն-
նության առնելու և անձնական ընդունելության համար ղեկավար աշխատող-
ների տեղեր մեկնելու իրեն լավ երաշխավորած փորձը:

4. Կուսակցական, սովետական, արհմիութենական ու տնտեսական մար-
միններին՝ ապահովել աշխատավորների առաջարկությունները, հայտարարու-
թյուններն ու գանգատները քննության առնելու լայն հրապարակայնությունը,
կուսակցական կոմիտեների անդամների, դեպուտատների, առաջավոր բանվոր-
ների, կոլտնտեսականների, մտավորականության ներկայացուցիչների է՛լ ավե-
լի ակտիվ մասնակցությունը այդ աշխատանքին: Այն առաջարկությունները,
քննադատական դիտողություններն ու խնդրանքները, որոնց լուծումը պահան-
ջում է հաշվի առնել կոլեկտիվի կարծիքը, դնել բանվորական ժողովների և քա-
ղաքացիների հավաքույթների քննարկմանը:

Նամակների հետ տարվող աշխատանքը և աշխատավորների ընդունելու-
թյան կազմակերպումը կատարելագործելու հարցերը պետք է ամեն օր գտնվեն
ձեռնարկությունների ու հիմնարկների, մինիստրությունների ու գերատեսչու-
թյունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների տեսադաշտում:
Կուսակցական կազմակերպությունները պետք է միջոցներ նախատեսեն և իրա-
կանացնեն կադրերին մարդկանց նկատմամբ զգայուն վերաբերմունքի, աշխա-
տավորներից ստացվող խնդրանքները, ցանկություններն ու առաջարկություն-
ները ժամանակին և ճիշտ լուծելու համար բարձր պատասխանատվության ոգով
դաստիարակելու համար:

Աշխատավորական կոլեկտիվներում ստեղծել բարոյահոգեբանական առողջ
կլիմա, այնպիսի մթնոլորտ, որը նպաստի ընկերական անկեղծ քննադատու-
թյան ու ինքնաքննադատության զարգացմանը, որոնք բացառեն անանուն գըր-
պարտչագրերի երևան գալը:

5. Կուսակցական, սովետական և վարչական մարմիններին, սկզբնական
կուսակցական կազմակերպություններին՝ ուժեղացնել իրավական պրոպագան-
դան, սիստեմատիկաբար և օպերատիվ կերպով բնակչությանը ինֆորմացիա
տալ նամակներում և անձնական ընդունելության ժամանակ շոշափվող բազմա-
թիվ հարցերի վերաբերյալ: Կազմակերպել քաղաքացիների սահմանադրական
իրավունքների և պարտականությունների, առաջարկությունները, դիմումներն
ու գանգատները քննության առնելու օրենսդրության, աշխատավորների խընդ-
րանքները լուծելիս պետական և հասարակական մարմինների, ձեռնարկություն-
ների, հիմնարկների, կազմակերպությունների ու պաշտոնական անձանց լիա-
զորությունների և դիմումների ու գանգատների առթիվ կայացած որոշումները
գանգատարկելու կարգի որակյալ պարզաբանում:

6. Կենտրոնական և տեղական թերթերի, հանդեսների, ռադիոհաղորդում-
ների ու հեռուստատեսության խմբագրություններին՝ բարելավել նամակների
հետ տարվող աշխատանքը, ավելի հաճախ հրապարակել դրանք, սիստեմատի-
կաբար հաղորդել քննարկման արդյունքների մասին, նամակների տեսություն-
ներն ուղարկել համապատասխան կազմակերպություններ՝ միջոցներ ձեռնար-
կելու համար: Կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավարներին
ավելի ակտիվորեն ներգրավել ելույթների համար, որպեսզի նրանք պատաս-
խանեն նամակներում արծարծվող հարցերին: Լայնորեն լուսաբանել քաղաքա-
ցիների նամակների հետ տարվող աշխատանքի և նրանց ընդունելության կազ-
մակերպման դրական փորձը: Խստիվ քննադատել այն պաշտոնատար անձանց,
որոնք բյուրոկրատիզմ ու քաշքշուկ են թույլ տալիս դիմումներն ու գանգատ-
ները քննության առնելիս, խախտում են քաղաքացիների ընդունելության կար-
գը, անտեսում քննադատական ելույթները:

---

# ՄԵԾ ՎԵՐԸՆԹԱՑԻ ՀԱՋՈՂ ՄԵԿՆԱՐԿԸ

ԱՆՑԱԾ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԸ մեր հանրապետության
համար դարձավ ժողովրդական տնտեսության դինամիկ
զարգացման, պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների
կայուն կատարման ժամանակաշրջան: Բանվոր դասակարգի, կոլտնտեսային
գյուղացիության, ժողովրդական մտավորականության հայրենասիրական աշ-
խատանքով Սովետական Հայաստանի ակնառու նվաճումների տարեգրության
մեջ գրվեց նոր փառավոր էջ՝ հանրապետության առաջին կարմրադրոշ հընգ-
ամյակը: Հիրավի, տասներորդ հոբելյանականը կարելի է անվանել կոմունիս-
տական շինարարության բոլոր մարզերում հուժկու առաջընթացի, հանրային
արտադրության, նրա արդյունավետության և աշխատանքի որակի բարձրաց-
ման, գիտության, կուլտուրայի, ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի
հնգամյակ:

Հանրապետության աշխատավորները, ինչպես ողջ սովետական ժողովուր-
դը, միահամուռ հավանություն տալով ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական
որոշումներին, դրանք համարելով իրենց կենսական գործը, նոր եռանդով սո-
ցիալիստական մրցություն են ծավալել տասնմեկերորդ հնգամյակի առաջին
տարվա առաջադրանքներն ու պարտավորությունները կատարելու համար:
Նրանք լի են վճռականությամբ՝ ստեղծարար աշխատանքով իրենց արժանի
ավանդը մուծելու հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության
առավել ամրապնդման գործում:

Պատշաճը հատուցելով ձեռք բերված հաջողություններին, հանրապետու-
թյան կուսակցական կազմակերպությունը, ելնելով ՍՄԿԿ XXVI համագումարի
պահանջներից, քննադատաբար է գնահատում կատարվածը, չի անտեսում թե-
րություններն ու վրիպումները, ժողովրդական տնտեսության տակավին չլուծ-
ված խնդիրները: Անշուշտ, մեր հասումները կարող էին ավելի ծանրակշիռ լի-
նել, եթե լիովին օգտագործեինք առկա հնարավորությունները, եթե ամենուրեք
կուսակցական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարներն ավելի
գործարար ու նպատակասլաց կատարեին արտադրության արդյունավետու-
թյունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, ժողովրդատնտեսական վերջնա-
կան բարձր արդյունքների հասնելու առաջադրանքները, եթե ամենուրեք ամրա-
պնդվեր պետական, պլանային, արտադրական, աշխատանքային կարգապա-
հությունը:

«Բայց թերևս ամենագլխավոր պատճառն այն է,— ՍՄԿԿ XXVI համագու-
մարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ դեռ լիովին չեն հաղթահարվել իներ-
ցիայի ուժը, այն ժամանակաշրջանում արմատավորված ավանդույթներն ու
սովորույթները, երբ առաջին պլան էր մղվում գործի ոչ այնքան որակական,
որքան քանակական կողմը»:

Հարկ է նշել, որ թողարկվող արտադրանքի ծավալի աճի տեմպերի հնգամյա
պլանը չկատարեցին մի շարք միավորումներ ու ձեռնարկություններ: Հնգամ-
յակի ընթացքում ամեն տարի միջին հաշվով ձեռնարկությունների մոտ 9 տո-
կոսը չէր ապահովում թողարկվող և իրացված արտադրանքի ծավալի, իսկ
ավելի քան 15 տոկոսը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման
պլանների կատարումը: Չնայած 1981 թվականի առաջին եռամսյակում ողջ
արդյունաբերության մեջ ապահովվեց պլանների գերակատարումը, այնուամե-
նայնիվ արդյունաբերական արտադրանքի իրացման և արտադրության ընդհա-
նուր ծավալի պլանները չկատարեցին մի շարք միավորումներ ու ձեռնարկու-
թյուններ: Դեռևս արմատախիլ չի արված նվազեցնելու միտումով պլաններն
անհիմն կերպով ճշգրտելու պրակտիկան:

ՍՄԿԿ XXVI համագումարում հատկապես շեշտվեց պետական պլանների կատարման համար պատասխանատվության բարձրացման անհրաժեշտությունը։ Կուսակցությունը պլանը դիտում է որպես օրենք։ Այո՛, պլանը օրենք է, որովհետև միայն նրա կատարումն է ապահովում ժողովրդական տնտեսության անխափան աշխատանքը։ Զեկուցման մեջ ընկեր Բրեժնևը միանգամայն տեղին շեշտեց, որ ժամանակն է խստացնել պահանջները ինչպես պլանային կարգապահության, այնպես էլ բուն պլանների որակի նկատմամբ։ Պլանն անպայման պետք է լինի ռեալ, հաշվեկշռված։ Բայց և անպայմանորեն այն պետք է կատարվի։

Համագումարի այս պահանջը պետք է կենսագործեն արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, շինարարության կուսակցական կազմակերպությունները, աշխատավորական բոլոր կոլեկտիվները։ Այդ նպատակով անհրաժեշտ է բարձրացնել կուսակցական, սովետական մարմինների պահանջկոտությունը տնտեսական ղեկավարների նկատմամբ։ Նամանավանդ որ 1981 թվականին հանրապետությունը պետք է ո՛չ միայն կատարի, այլև գերակատարի տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարվա պլանային առաջադրանքները, ապահովի աճի բարձր տեմպերը, մասնավորապես, արդյունաբերության մեջ։

Կուսակցության XXVI համագումարը սահմանեց տասնմեկերորդ հնգամյակի և ութսունական թվականների ժողովրդատնտեսական հրատապ խնդիրները, մշակեց երկրի տնտեսական ու սոցիալական հետագա զարգացման գիտականորեն հիմնավորված ծրագիրը։ Բնորոշն այն է, որ այստեղ նոր հնգամյակի խնդիրները սահմանվել են տասնամյա հեռանկարի առումով, որը հնարավորություն է ընձեռում ապահովելու հաջորդայնությունը տնտեսական քաղաքականության իրականացման գործում, ճիշտ նախատեսելու մոտակա և հեռավոր բնագծերը։

Մեր տնտեսական քաղաքականության առանցքը սոցիալիստական վերաբերմունքն է հանքային բարիքի նկատմամբ, մեր ողջ ունեցվածքը լրիվ, նպատակահարմար օգտագործելու կարողությունը։ Այդ խնդրին պետք է ծառայեն աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությունը, կուսակցական մասսայական աշխատանքը, կապիտալ ներդրումների պրակտիկան։ «Էկոնոմիկան պետք է լինի խնայողական՝ այսպիսին է ժամանակի պահանջը»,— ասաց ընկեր Բրեժնևը։

Արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, տնտեսությունն ինտենսիվ զարգացման ռելսերի վրա փոխադրելու հիմնական, ընդհանրացնող ցուցանիշը աշխատանքի արտադրողականության առավել արագ աճն է։ Այժմ այն վճռական դեր է խաղում կուսակցության տնտեսական ստրատեգիայի գերագույն նպատակի իրագործման՝ ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման գործում։

Աշխատանքի արտադրողականության զգալի աճին հասնելու համար անհրաժեշտ է արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, որը հրամայաբար պահանջում է գիտության և արտադրության սերտ համագործակցություն։ ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց՝ բարձրացնել գերատեսչությունների, ձեռնարկությունների, ինստիտուտների ղեկավարների անձնական պատասխանատվությունը արտադրանքի նոր տեսակների արտադրության, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման համար։ Հարկավոր է վերացնել այն ամենը, ինչ նորի կիրառման պրոցեսը դարձնում է դժվարին, դանդաղ, հիվանդագին։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը ենթադրում է ո՛չ միայն գիտատեխնիկական առաջընթացի արագացում, այլև դրա հասումների պրակտիկ կիրառման հետ առնչվող ռեզերվների մոբիլիզացում։ Հարկավոր է արդյունավետ և լրիվ օգտագործել կազմակերպական-տնտեսական և սոցիալական հնարավորությունները։ Դրանց թվին են պատկանում թե՛ պլանավորման կատարելագործումը, թե՛ ողջ տնտեսական մեխանիզմի բարելավումը և սոցիալիստական մրցության ծավալումը, թե՛ աշխատավորների քաղաքական և աշխատանքային մշտական ակտիվության ապահովումը։

Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները մեծ գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ հանրապետության կուսակցական կազմակերպությանը տրված գնահատականը՝ աշխատավորական կոլեկտիվների, կառավարման ու պլանավորման բոլոր օղակների ջանքերը արդյունաբերական արտադրանքի որակի բարձրացմանն ուղղելու համար։ Այդ ոգեշնչող գնահատականը նաև պարտավորեցնող է։ Այսուհետև հանրապետության բոլոր կուսակցական կազմակերպություններին հարկ է նպատակամղել այն բանին, որպեսզի թողարկվող արտադրանքն իր որակով լինի բարձր, համապատասխանի համաշխարհային և հայրենական լավագույն նմուշներին։



Հաշվի առնելով տրանսպորտի բնագավառում կուտակված պրոբլեմների լրջությունն ու մասշտաբները, հիմնական ուղղություններով նախատեսված է մշակել երկարաժամկետ կոմպլեքսային ծրագիր, որի իրականացումը հնարավորություն կընձեռի բարձրացնելու փոխադրումների արդյունավետությունը։

Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում ասվեց, որ անհրաժեշտ է հարվածային տեմպերով իրականացնել Իջևան—Հրազդան երկաթուղու շինարարությունը, որի նշանակությունը մեր հանրապետության էկոնոմիկայի համար դժվար է գերագնահատել։ Մինչդեռ ընթացիկ տարվա շինմոնտաժային աշխատանքները դանդաղ են ընթանում։ Հարկավոր է լրջորեն բարելավել քաղաքային տրանսպորտի աշխատանքը, ուղևորների փոխադրումը, նվազագույնի հասցնել չվացուցակի խախտումները, բարձրացնել սպասարկման ընդհանուր կուլտուրան։ Դրան, ինչ խոսք, զգալիորեն կնպաստի շահագործման հանձնված Երևանի մետրոպոլիտենի առաջին գիծը։

ՍՄԿԿ XXVI համագումարն առաջադրեց ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման լայն ծրագիր, որն իր մասշտաբներով աննախադեպ է։ Առաջին պլան է մղվում բնակչությանը պարենամթերք մատակարարելու գործի բարելավման խնդիրը։ Այդ պրոբլեմի արմատական լուծման նպատակով այժմ մշակվում է հատուկ պարենային ծրագիր։

Հանրապետության գյուղատնտեսության նվաճումներն ակնառու են, այդուհանդերձ, եթե ճյուղի գործերի վիճակը քննության առնենք կուսակցության առաջադրած խնդիրների տեսանկյունից, ապա անհրաժեշտ է զգալիորեն բարձրացնել գյուղատնտեսության արդի մակարդակը։ Իրողություն է, որ ճյուղում լրիվ չեն օգտագործվում արտադրության ինտենսիվացման ռեզերվները։ Կոլտնտեսությունների և սովխոզների մեծ մասում, ինչպես նաև շրջաններում, ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասնապահության մթերատվությունը, բարձր է մթերքների ինքնարժեքը։ Ամենուրեք չէ, որ բավարար արդյունավետությամբ են օգտագործվում հողը, տեխնիկան, պարարտանյութերը, ոռոգման ջուրը և մյուս ռեսուրսները։ Անցած հնգամյակում գյուղատնտեսությանը հատկացված զգալի միջոցներ մնացին չիրացված։ Մի շարք տնտեսություններում ստեղծված նյութատեխնիկական բազան դեռևս պատշաճ հատուցում չի տալիս, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության աճը նկատելիորեն ետ է մնում ճյուղի հիմնական արտադրական ֆոնդերի աճից։ Կուսակցության XXVI համագումարի իր զեկուցման մեջ ընկեր Բրեժնևը նշեց, որ «...հիմա ծանրության կենտրոնը,— և դա ութսունական թվականների ագրարային քաղաքականության տարբերիչ առանձնահատկությունն է,— տեղափոխվում է կապիտալ ներդրումների փոխհատուցման վրա, գյուղատնտեսության մթերատվության աճի, ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի հետ նրա կապերի խորացման և կատարելագործման վրա»։

Ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման՝ ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած ծրագիրը հրամայաբար պահանջում է առաջին հերթին ավելացնել գյուղատնտեսական արտադրանքի այն տեսակների արտադրությունը, որոնց պակասը հատկապես շոշափելի խափանումներ է առաջացնում պարենի մատակարարման գործում։ Մասնավորապես նկատի են առնվում անասնապահական մթերքները։ Հանրապետությունում տասնմեկերորդ հնգամյակում նախատեսվում է մսի արտադրության տարեկան միջին ծավալը սպանդային քաշով հասցնել 95 հազար տոննայի, կաթինը՝ 520 հազար տոննայի։ Այս բարդ խնդիրը հաջող լուծելու համար պետք է հատուկ ուշադրություն նվիրել անաս-

նապահության հետագա վերելքին: Ի դեպ, ընթացիկ հնգամյակում անասնապահական մթերքների արտադրության ծավալների ավելացման գործում պետական համալիրներն ու թռչնաֆաբրիկաները կոչված են ծանրակշիռ ավանդ ներդնելու: Կուսակցության շրջանային կոմիտեները պարտավոր են բարձրացնելու այդ ձեռնարկությունների ղեկավարների և մասնագետների պատասխանատվությունը հանձնարարված բնագավառի համար, մշտական վերահսկողություն հաստատելով նրանց գործունեության նկատմամբ:

Մսի, ինչպես նաև մյուս գյուղատնտեսական մթերքների ռեսուրսների համալրման էական նեցուկ պետք է դառնան բնակչության անձնական օժանդակ տնտեսությունները, ինչպես նաև արդյունաբերական և մյուս ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունները: ՍՄԿԿ XXVI համագումարն անհրաժեշտ համարեց՝ ըստ ամենայնի պաշտպանել և տարածել այդպիսի տնտեսությունների վարման արդեն եղած փորձը: Տեղական կուսակցական, սովետական մարմինները, տնտեսությունների ղեկավարները պետք է միջոցառումներ իրականացնեն հիշյալ որոշումների կատարման նպատակով:

Կուսակցության պարենային ծրագրի հաջող կատարումը ենթադրում է զարգացնել գյուղատնտեսության նաև մյուս ճյուղերը: Ավելացնել հացահատիկի, կարտոֆիլի, բանջարեղենի, պտուղների, խաղողի և այլ մթերքների արտադրությունը: Ուստի նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակում հացահատիկի արտադրության տարեկան միջին ծավալը Հայաստանում հասցնել 315 հազար, խաղողինը՝ 240—260 հազար, կարտոֆիլինը՝ 290 հազար տոննայի:

Այժմ համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների, շրջանային կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների գլխավոր խնդիրն է որքան կարելի է լավ, առավելագույն արդյունավետությամբ օգտագործել հատկացվող կապիտալ ներդրումներն ու նյութատեխնիկական ռեսուրսները, ինչպես նաև այն մեծ ռեզերվները, որ ունեն կոլեկտիվ ու պետական տնտեսությունները: Ամեն մի տնտեսություն պետք է լիակատար փոխհատուցմամբ օգտագործի հողի յուրաքանչյուր հեկտարը, յուրաքանչյուր մեքենան, պարարտանյութերի, վառելանյութի յուրաքանչյուր կիլոգրամը, էլեկտրաէներգիայի յուրաքանչյուր կիլովատ-ժամը:

Մեծ նշանակություն ունի արտադրության մասշտաբների ընդլայնման համեմատ գյուղատնտեսական մթերքները սպառողին նվազագույն կորուստներով և բարձր որակով հասցնելը: Սակայն բանջարեղենի, կարտոֆիլի, պտուղների և հողագործական մյուս մթերքների կորուստները հանրապետությունում շարունակում են զգալի քանակ կազմել:

Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում, կապիտալ շինարարության պրակտիկայում տեղ են գտել լուրջ թերություններ: Չնայած ձեռնարկված միջոցառումներին և աշխատանքի տեմպերի որոշ արագացմանը, ընթացիկ տարում շինարարության մեջ դեռևս պատշաճ բարելավում չի նկատվում: Անհանդուրժելի անտարբերություն ցուցաբերեցին պատվիրատուների և կապալային շատ կազմակերպությունների ղեկավարները հնգամյակի առաջին տարվա պլանը կազմելու ընթացքում:

«Նոր հնգամյակը,— ասաց ընկեր Բրեժնևը,— լուրջ քննություն կլինի շինարարների համար: Հնգամյակի բնորոշ գիծը ուժերի ըստ ամենայնի համակենտրոնացումն է այն ձեռնարկությունների շուտափույթ ավարտման և գործարկման վրա, որոնք ի վիճակի են ապահովել արտադրանքի առավել մեծ աճը, վերացնել նեղ տեղերը: Մենք արդեն վերցրել ենք այդ կուրսը և հարկավոր է անշեղորեն հետևել դրան»:

Կուսակցության համագումարի առաջադրած խնդիրների հետևողական ու անշեղ լուծումը մեծապես պայմանավորվում է ժողովրդական տնտեսության ղեկավարման, պլանավորման ու կառավարման մակարդակով: Անհրաժեշտ է մշտապես կատարելագործել տնտեսության ղեկավարման մեթոդները, բարձրացնել պահանջկոտությունը, սովորել արդյունավետ աշխատել, տնտեսավարել, լինել գործնական, դրսևորել քննադատական վերաբերմունք թերությունների նկատմամբ:



Սովետական հասարակությունը աշխատանքի մարդկանց հասարակություն է: Կուսակցությունը և պետությունը շատ ջանքեր են գործադրել և գործադրում, որ մարդու աշխատանքը դարձնեն ոչ միայն ավելի արտադրողական, այլև առավել բովանդակալի, ստեղծագործական: Սոցիալիզմը աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունք է ծնում: Դրա ցայտուն դրսևորումներից է սոցիալիստական մրցությունը, մասսաների ստեղծագործությունը: Իր բուն էությամբ այն հիմնված է մարդկանց բարձր գիտակցականության ու նախաձեռնության վրա: Ի պատասխան կուսակցության կոչի՝ նոր հնգամյակը նշանավորել հարվածային աշխատանքով, արդյունաբերական ձեռնարկություններում ու միավորումներում, կոլեկտիվ ու պետական տնտեսություններում, շինարարական և տրանսպորտային կոլեկտիվներում նոր ուժով է ծավալվում սոցիալիստական մրցությունը սահմանված առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու համար:

Տնտեսավարման պրակտիկայի վրա մրցության ներգործության ուժեղացումը մեր կյանքի բնորոշ հատկանիշներից է: Մեզանում ամեն մի նոր նախաձեռնություն, ամեն մի լավ գործ երկրով մեկ լայնորեն տարածվում է: Հնգամյակի առաջին տարվա անհատական և բրիգադային առաջադրանքները մինչև նոյեմբերի 7-ը կատարելու մասին մոսկվացիների և լենինգրադցիների նախաձեռնությունը ջերմ արձագանք գտավ նաև մեր հանրապետության ձեռնարկություններում: Երևանի «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումներում, Կիրովականի քիմիական և Չարենցավանի հաստոցաշինական գործարաններում, Զանգեզուրի պղնձամոլիբդենային և Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատներում հազարավոր բանվորներ, բրիգադներ, բազմաթիվ արտադրամասերի կոլեկտիվներ որոշել են տարվա առաջադրանքների կատարման մասին զեկուցել 2—3 ամիս շուտ:

Հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների աշխատողները պարտավորվել են տարվա պլանից ավելի թողարկել 30 միլիոն ռուբլու բարձրորակ կոշիկներ, տրիկոտաժեղեն, գործվածքեղեն և լայն սպառման այլ ապրանքներ: Երևանի, Լենինականի, Կիրովականի, Հրազդանի, Սպիտակի, Սևանի շատ ձեռնարկություններում ակտիվ պայքար է ծավալվել «Տնտեսությունը վարել խնայողաբար», «Ժամկետից շուտ յուրացնել նախագծային կարողությունները» նշանաբանով: Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, որակը բարելավելու մասին լավ նախաձեռնություններ են կիրառվում Հրազդանի, Աբովյանի, Ախուրյանի, Կրասնոսելսկի շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում:

Տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու համամիութենական սոցիալիստական մրցության մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման մեջ նշված է, որ սոցիալիստական մրցությունը մասսաների կենդանի ստեղծագործությունն է, հայրենասիրական շարժում, որը հիմնված է սովետական մարդկանց բարձր գիտակցականության ու նախաձեռնության վրա: Առաջիկայում ևս սոցիալիստական մրցության նշանաբանն է՝ «Աշխատել արդյունավետորեն և որակով»: Այն ենթադրում է հոգատար վերաբերմունք ցուցաբերել հանրային բարիքի նկատմամբ, հմտորեն օգտագործել բոլոր առկա ռեսուրսները, ողջ արտադրական պոտենցիալը, նվազագույն ծախսումներով հասնել շատ արդյունքների:

Վ. Ի. Լենինի ծննդյան 111-րդ տարեդարձի պատվին համամիութենական կոմունիստական շաբաթօրյակ անցկացնելու մասին Մոսկվայի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների հայրենասիրական նախաձեռնությունը ջերմորեն արձագանքեցին հանրապետության աշխատավորները: Համակված ՍՄԿԿ XXVI համագումարի հոյակապ կանխագծումները իրականացնելու վճռականությամբ, ապրիլի 18-ին նրանք աշխատանքային հերթափոխի ելան և իրենց ծանրակշիռ ավանդը ներդրեցին հնգամյակի առաջին տարվա լարված պլանների հաջող կատարման հայրենանվեր գործում:

Արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական և տրանսպորտային կազմակերպություններում ծավալված նախամայիսյան մրցության

շնորհիվ, աշխատավորական կոլեկտիվները դարնան պայծառ տոնը դիմավորեցին արտադրական նոր հասումներով։

Այժմ կուսակցությունը հատուկ ուշադրություն է նվիրում սոցիալիստական մրցության ծավալմանը բրիգադներում, տեղամասերում, բաժանմունքներում, ֆերմաներում։ Հարկավոր է ուժեղացնել այդ կոլեկտիվների դերը արտադրության արդյունավետության ու որակի բարձրացման, կարգապահության ամրապնդման, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ներարկման համար մղվող պայքարում։ Կուսակցական կազմակերպությունները ամեն կերպ պետք է պաշտպանեն ու տարածեն հանդիպական պլանները մշակելու, տեխնիկապես հիմնավորված նորմաներ, բրիգադային տնտհաշվարկ, խնայողության և որակի անհատական հաշիվներ արմատավորելու, աշխատանքի սահմանված ծավալը անձնակազմի նվազագույն թվով կատարելու վերաբերյալ բանվորների ու կոլտնտեսականների առաջարկությունները։

Հայտնի է, սակայն, որ առանձին ձեռնարկություններում ու տնտեսություններում նման խելամիտ առաջարկություններից շատերը պատշաճ պաշտպանության չեն արժանանում։ Չի կարելի հաշտվել այդպիսի երևույթների հետ։

Միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվների աշխատանքը գնահատելիս, պետք է հաշվի առնել պետական պլանների լարվածությունը, աճի տեմպերը, արտադրական գործունեության վերջնական արդյունքները, կարողությունների և բնակարանային ու կուլտուր-կենցաղային նշանակության օբյեկտների կոմպլեքսային գործարկումը, դաստիարակչական աշխատանքի վիճակը, տարվա և հնգամյակի սկզբից հարաճուն կերպով սոցպարտավորությունների կատարումը։ Հետևողականորեն կատարելագործելով մրցության մասնակիցների նյութական և բարոյական խթանման սիստեմը, անհրաժեշտ է արդյունավետ օգտագործել աշխատողներին պարգևատրելու համար հատկացված միջոցները, մրցության արդյունքներն ամփոփելիս ապահովել նրա օպերատիվությունն ու լայն հրապարակայնությունը։

Կուսակցության սոցիալական քաղաքականության ծրագրային խնդիրներից է բաշխման պրոբլեմը։ «Սոցիալիզմի օրոք բաշխման գլխավոր չափանիշը կարող է լինել միայն աշխատանքը՝ նրա քանակն ու որակը,— համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։— Ցավոք սրտի, գործնականում միշտ չէ, որ այդպես է լինում։ Ամեն տեսակ հավասարությունը, ըստ էության, սոսկ աշխատանքի ներկայանալու համար, այլ ոչ թե նրա ռեալ արդյունքների համար աշխատավարձ դուրս գրելը, չվաստակած պարգևավճարներ տալը՝ այդ ամենն անչափ վնասակար է անդրադառնում թե՛ արտադրական ցուցանիշների և թե մարդկանց հոգեբանության վրա»։

Սովետական մարդիկ մեծամասնությամբ աշխատում են ազնվորեն, հոգու նվիրումով։ Նրանք իրավամբ և խելամտորեն են օգտվում բազմապիսի բարիքներից, որ նրանց տալիս է հասարակությունը, պահպանում ու բազմապատկում են մեր ժողովրդական սեփականությունը։ Բայց մեզանում կան նաև այնպիսի մարդիկ, որոնք ձգտում են որքան կարելի է քիչ տալ հասարակությանը, բայց ավելի շատ պոկել նրանից։ Նման հոգեբանությունը ծնում է սնամոլություն ու քաղքենիություն, կուտակման տենչ, ժողովրդի հոգսերի ու գործերի նկատմամբ անտարբերություն։ Պրակտիկան վկայում է, որ պայքարը բացասական երևույթների դեմ հաջողություն ունի այնտեղ, ուր ներգրավվում են հասարակության լայն ուժեր, ուր պայքարը հենվում է աշխատավորական կոլեկտիվների գործնական աջակցության վրա։

Ուստի անհրաժեշտ է հետայսու հետևողական, լայն ճակատով պայքար մղել սոցիալիստական ապրելակերպին անհարիր երևույթների դեմ։ Մեր համակեցության նորմերը խախտողների նկատմամբ ամենուրեք պատժի անխուսափելիության, հասարակական դատապարտման, արհամարհանքի մթնոլորտ ստեղծելը կոմունիստական դաստիարակության ներգործունության կարևոր պայմանն է։ Կուսակցական կազմակերպությունները, մեր բոլոր կոմունիստները կոչված են ջանադրաբար գլխավորելու պայքարն այն բոլոր բացասական երևույթների դեմ, որոնք հակասում են սովետական ապրելակերպի բուն էությանը։ Այդ նպատակի համար պետք է լրիվ օգտագործել թե՛ աշխատավորական կոլեկտիվի կարծիքը, թե՛ մամուլի քննադատական խոսքը, թե՛ համոզելու մեթոդները, թե՛ օրենքի ուժը։



«...Հարկավոր է կազմակերպական, ֆինանսական, իրավաբանական բոլոր միջոցներով,— ասաց ընկեր Բրեժնևը,— ամուր փակել ամեն տեսակ սողանցքները պորտաբուծության, կաշառակերության, սպեկուլյացիայի առաջ, անաշխատ եկամուտների, սոցիալիստական սեփականության նկատմամբ ամեն տեսակ ոտնձգությունների առաջ»։ Անդրադառնալով այս հարցերին՝ ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ դրանց լուծումը, ինչպես որ առհասարակ նոր մարդու կերպավորումը, պետք է խարսխվի սոցիալ-տնտեսական քաղաքականության ամուր հիմքի վրա։ Հիրավի, եթե բացասական երևույթները հանգեցվեն սոսկ մարդկանց գիտակցության մեջ «անցյալի մնացուկներին», ապա տեսադաշտից դուրս կմնան այն թերությունները, որոնց պատճառները պետք է որոնել այսօրվա պրակտիկայում, այս կամ այն աշխատողի վրիպումներում։ Ահա այստեղ կարող է խզում առաջանալ խոսքով դաստիարակելու և գործով դաստիարակելու միջև, որն անհարիր է մարքս-լենինյան գաղափարախոսությանը։

Անհրաժեշտ է հետևողականորեն շարունակել ու կատարելագործել թերությունների ազատ, գործարար և սկզբունքային քննադատության իրադրություն ստեղծելու աշխատանքը, որպեսզի այն մարդկանց մղի ակտիվության, ձեռներեցության, նրանց մեջ հաստատի իրենց ուժերի նկատմամբ վստահության զգացում, համակի թերությունները վերացնելու, լավագույն արդյունքների հասնելու վճռականությամբ։

Ընթացիկ հնգամյակում առավել մասշտաբային, առավել բարդ են դառնում մեր խնդիրները։ Նոր բնագծերի նվաճման կարևորագույն պայմանը կուսակցական ղեկավարման մեթոդների կատարելագործումն է, յուրաքանչյուր տեղամասում, օղակում պատասխանատվության ուժեղացումը։ Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեների խնդիրն է՝ առավելագույնս բարձրացնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտունակությունն ու հեղինակությունը։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ դրանք ամենուրեք դառնան աշխատավորական կոլեկտիվների իսկական ղեկավարներ, սերտորեն կապված լինեն մասսաների հետ, ավելի լայնորեն կիրառեն առաջավոր փորձը։ Կուսակցական կազմակերպությունները պետք է լիովին օգտագործեն ադմինիստրացիայի գործունեության իրենց վերահսկման իրավունքը, չփոխարինեն տնտեսավարներին և չտառապեն մանրախնդիր խնամակալությամբ։

Կուսակցական կազմակերպությունների, գաղափարական ներազդման մարմինների կարևոր խնդիրն է՝ մշտապես հաշվի առնել սովետական մարդկանց արդի պահանջմունքները։ Այժմ խոսքը վերաբերում է ո՛չ միայն աշխատավորների մարքս-լենինյան ուսուցմանը, սեփական պարտականությունների և իրավունքների ըմբռնմանը, սովետական ապրելակերպի սկզբունքների կիրառմանը, այլև կոմունիստական հոգևոր արժույթների ողջ հարստության յուրացմանը։

Այժմ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքում առաջնակարգ խնդիր է՝ ապահովել կուսակցության Կենտկոմի հաշվետու զեկուցման և ՍՄԿԿ XXVI համագումարի մյուս փաստաթղթերի խոր ուսումնասիրումը և պարզաբանումը։ Այդ ոգով պետք է տոգորված լինեն կուսակցական-քաղաքական ուսուցումը, տնտեսագիտական կրթությունը, պրոպագանդայի մասսայական ձևերը։

Կուսակցության բոլոր խոհերն ու պլանները նպատակ ունեն՝ ամեն ինչ անել խաղաղության ամրապնդման, մեր ժողովրդի բարօրության ապահովման համար։ Այժմ հատկապես կարևոր է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր աշխատող խորապես գիտակցի իր կենսական շահերի սերտ կապը համագումարի որոշումների իրականացման հետ, հստակորեն պատկերացնի, թե անձամբ ինքն ինչ կարող է ու պետք է անի այդ որոշումների իրագործման համար։

Հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների պարտքն է՝ ամրապնդել ձեռք բերված հաջողությունները, շարունակել հարվածային հերթափոխը, աշխատավորների բոլոր ուժերը նպատակամղել 1981 թվականի և ողջ հնգամյա պլանի հաջող կատարմանը։

---

# ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Հ. Յ. ԼԻԼՈՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

*ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ գործի ու պայքարի հուժկու լիցք հաղորդեց մեր երկրի աշխատավորությանը, բարի կամքի տեր բոլոր մարդկանց: Համագումարն ամփոփեց ՍՄԿԿ ղեկավարությամբ սովետական ժողովրդի ծավալած ստեղծարար աշխատանքի արդյունքները, նախանշեց կուսակցության և պետության առաջիկա խնդիրները:*

*Կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը, որով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, արդիականության աչքի ընկնող փաստաթուղթ է, ծանրակշիռ ներդրում մարքս-լենինյան տեսության մեջ: Այնտեղ տրված են միջազգային դրության օբյեկտիվ գնահատականը, արդի հեղափոխական պրոցեսի կարևորագույն միտումները, սոցիալիստական համագործակցության երկրների, կոմունիստական և բանվորական կուսակցությունների դերն ու նշանակությունը համաշխարհային ասպարեզում: Լ. Ի. Բրեժնևի զեկուցման դրույթներն ու հետևությունները լայն հեռանկարներ են բացում մեր ժամանակի բոլոր առաջադեմ ուժերի հետագա համախմբման համար՝ խաղաղության, ազգային անկախության և սոցիալական առաջընթացի համար նրանց մղած պայքարում:*

*Սովետական կոմունիստների անցած համաժողովը ցույց տվեց, որ ՍՄԿԿ-ի բազմակողմանի, հիրավի տիտանական գործունեության մեջ առանձնապես կարևորվում են նաև արտաքին քաղաքականության հարցերը: Ուստի բնական է, որ համագումարում շատ մեծ ուշադրություն նվիրվեց ժամանակակից աշխարհի միջազգային դրության պրոբլեմների քննարկմանը:*

*Սահմանելով սովետական արտաքին քաղաքականության ուղղությունները, ՍՄԿԿ XXVI համագումարը վիթխարի ավանդ ներդրեց ՍՍՀՄ լենինյան արտաքին քաղաքական կուրսի տեսական մշակման և պրակտիկ իրականացման գործում՝ մի հանգամանք, որը խիստ կարևոր է աշխարհի ժողովուրդների հետագա բախտի համար, քանի որ առանց ՍՍՀՄ-ի մասնակցության այժմ չի լուծվում և չի կարող լուծվել ոչ մի քիչ թե շատ լուրջ միջազգային պրոբլեմ: «Այսօր,— հաշվետու զեկուցման մեջ շեշտեց Լ. Ի. Բրեժնևը,— միանգամայն ակնհայտ է՝ Սովետական Միությունը և նրա դաշնակիցներն այժմ ավելի, քան երբևիցե, հանդիսանում են խաղաղության գլխավոր պատվարն աշխարհում»:*

*Միջազգային, ինչպես և իր ողջ հեղափոխական վերակերտիչ գործունեության մեջ, որի հիմքերը դրել է Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն ղեկավարվում է լենինյան պատգամներով, հենվում է նրա մտքի ու գործի բազմահարուստ ժառանգության վրա, աշխարհում ստեղծվող իրադրության համեմատ, ստեղծագործաբար զարգացնում այդ ժառանգությունը:*

*ՍՄԿԿ XXVI համագումարն առաջադրեց արտաքին քաղաքական նոր կարևոր նախաձեռնություններ, որոնք վիթխարի նշանակություն ունեն խաղաղության ամրապնդման, լարվածության թուլացումը խորացնելու, ժողովուրդների*



*անվտանգությունն ամրապնդելու համար: ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ արված առաջարկությունները, ըստ էության, Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV և XXV համագումարների ընդունած խաղաղության ծրագրի օրգանական զարգացումն են: Սովետական առաջարկությունները հայտնվեցին համաշխարհային քաղաքականության կիզակետում: Դրանք մեծ հետաքրքրություն առաջացրին ամբողջ աշխարհում, այդ թվում և Արևմուտքի երկրների կառավարող շրջաններում: Սովետական պետության ղեկավարը վերջերս ուղերձներ հղեց մի ամբողջ շարք երկրների պետությունների ու կառավարությունների ղեկավարներին, ուր նրանց ուշադրությունը հրավիրեց XXVI համագումարի արած առաջարկներին:*

*ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ տեղի ունեցավ երկու տասնամյակների սահմանագծում. 70-ական թվականները, որոնք նշանավորվեցին խաղաղության ուժերի խոշոր նվաճումներով, անցան պատմության գիրկը՝ 80-ական թվականներին ժառանգություն թողնելով միջազգային իրադրության խիստ սրման մրթնոլորտ: ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ այդ ժամանակն անվանելով «բարդ ու բուռն», ընկեր Լ. Ի. Բրեժնևն այնուհետև ասաց. «այն նշվեց, նախ և առաջ, համաշխարհային քաղաքականության մեջ երկու ուղղությունների ինտենսիվ պայքարով: Մի կողմից՝ սպառազինությունների մրցավազքը սանձահարելու, խաղաղությունն ու լարվածության թուլացման պրոցեսն ամրապնդելու, ժողովուրդների սուվերեն իրավունքներն ու ազատությունները պաշտպանելու կուրս: Մյուս կողմից՝ լարվածության թուլացման պրոցեսը խարխլելու, սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու կուրս, սպառնալիքների և ուրիշի գործերին միջամտելու, ազատագրական պայքարը ճնշելու քաղաքականություն»: Հիշեցնելով Եթովպիայում, Աֆղանստանում, Նիկարագուայում կատարված հեղափոխությունների, Իրանում միապետական վարչակարգի տապալման և գաղութային կայսրությունների վերացումն ավարտելու մասին, Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Նեղացավ աշխարհում իմպերիալիստական տիրապետության ոլորտը: Սրվեցին ներքին հակասությունները կապիտալի երկրներում և նրանց մրցակցությունը: Խիստ աճեց իմպերիալիզմի, և ամենից առաջ ամերիկյան իմպերիալիզմի, քաղաքականության ագրեսիվությունը»: Չնայած դրան, Սովետական Միությունը մյուս խաղաղասեր ուժերի հետ միասին շարունակում էր պայքարը սպառազինությունների մրցավազքի դեմ, պահպանում խաղաղությունը:*

*Եթե խոսելու լինենք արդի փուլում ՍՄԿԿ-ի միջազգային գործունեության մասին, ապա պետք է հատկապես առանձնացնել մեր կուսակցության վիթխարի ծառայությունն այն բանում, որ խորաթափանցորեն գնահատելով անցած հինգ տարիներում միջազգային իրադրությունը, նա առաջադրեց փոխկապակցված կոնստրուկտիվ միջոցառումների լայն կոմպլեքս, որն ընդգրկում է խաղաղության, ժողովուրդների ազատության ու անկախության համար մղվող պայքարի բոլոր բնագավառները: Կարողանալով իրականացնել ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների արտաքին քաղաքական ծրագրի կարևոր դրույթները, ՍՍՀՄ-ը վճռական ավանդ ներդրեց լարվածության թուլացման ու ամրապնդման գործում: Լարվածության թուլացումը գնահատելով միջազգային իրադրության բարդացման դրոշմը կրող այսօրվա դիրքերից, չի կարելի չտեսնել, որ ՍՄԿԿ վերջին երկու համագումարների միջև ընկած ժամանակահատվածում ձեռք բերված արդյունքներն այն վճռական գործոններից են, որոնք բարերար ազդեցություն ունեն արդի միջազգային հարաբերությունների վրա:*

*Իր արտաքին քաղաքական գործունեության մեջ կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում խաղաղության գլխավոր հենարանի՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորության աճին, սոցիալիզմի երկրների համագործակցությանը: Զեկուցման մեջ ընկեր Բրեժնևը, հանգամանորեն բնութագրելով սոցիալիստական համագործակցության երկրների նոր տիպի հարաբերությունները, ցույց տվեց, որ դրանց մասնակցում են սոցիալիստական պետությունների և եղբայրական կուսակցությունների ղեկավարներից մինչև շարքային բանվորներն ու գյուղացիները, և բոլոր բնագավառներում՝ համատեղ գազամուղներ կառուցելուց մինչև համատեղ տիեզերական թռիչքները:*

Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրների հետ սերտորեն համագործակցած, ձգտում է հասնել ողջ միջազգային մթնոլորտի արմատական բարելավման։ Եղբայրական սոցիալիստական երկրներն իրենց համաձայնեցված արտաքին քաղաքականությունում ամենից բարձր են դասում խաղաղության պահպանման ու ամրապնդման շահերը, բոլոր ժողովուրդների ազատ ու անկախ զարգացման իրավունքների հաստատումը։ Առաջ մղել լարվածության թուլացումը, այն լրացնել ստրատեգիական զենքերի կրճատման միջոցառումներով, ապահովել իրական շրջադարձ սպառազինության մրցավազքից դեպի զինաթափում, հասնել կոնֆլիկտային իրավիճակների արդարացի քաղաքական կարգավորման— սրանք են սոցիալիստական համագործակցության երկրների արտաքին քաղաքականության գլխավոր խնդիրները։ Միաժամանակ եղբայրական կուսակցություններն ու պետություններն ամրացնում են իրենց պաշտպանական ռազմական դաշինքը։ Վարշավայի պայմանագիրը հուսալիորեն ապահովում է իր կազմի մեջ մտնող պետությունների անվտանգությունը, այն համընդհանուր անվտանգության կարևոր գործոն է։

«Անցած ժամանակաշրջանը համոզիչ կերպով ցույց տվեց,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— թե եվրոպական, ինչպես և ամբողջությամբ վերցրած միջազգային գործերում ինչպիսի ազդեցիկ և բարերար դեր է խաղում Վարշավայի պայմանագրի կազմակերպության և ամենից առաջ նրա Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի գործունեությունը։ Ավելի վաղ հարթելով համաեվրոպական խորհրդակցության ճանապարհը, մեր պայմանագրի բարձրագույն քաղաքական մարմինը Բուխարեստում, Մոսկվայում, Վարշավայում գումարած իր նիստերում հանդես եկավ մի շարք նոր նախաձեռնություններով, որոնք իրենց վրա գրավեցին աշխարհի լայն հասարակայնության ուշադրությունը։ Դրանց գլխավոր նպատակն է պաշտպանել լարվածության թուլացումը, դրան տալ եռանդուն ռիթմ, ինչպես ասում են, երկրորդ շնչառություն»։

Այդ ժամանակաշրջանում ստեղծվեց մի նոր մարմին ևս՝ Արտաքին գործերի մինիստրների կոմիտեն, որի շնորհիվ ավելի օպերատիվ է դարձել սոցիալիստական երկրների արտաքին քաղաքական գործողությունների համաձայնեցումը։

Անցած տարիներին զգալիորեն աճել են Սովետական Միության, մյուս սոցիալիստական երկրների հզորությունը, ակտիվությունն ու հեղինակությունը։ Խորացել է նրանց միասնությունը, ամրապնդվել համախմբվածությունը։ ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը առավել ուշադրություն են նվիրում սոցիալիզմի երկրների հետ բարեկամության, համագործակցության, փոխօգնության ամրապնդմանն ու զարգացմանը։ ՍՍՀՄ նոր սահմանադրությունը այդ նոր, պետությունների միջև պատմության մեջ դեռևս աննախադեպ, իսկապես արդարացի, իրավահավասար, եղբայրական հարաբերությունները հռչակեց որպես սովետական արտաքին քաղաքականության անկյունաքար։ Արդի պայմաններում վիթխարի նշանակություն են ստանում սոցիալիստական համագործակցության երկրների մասշտաբային ժողովրդատնտեսական պլանները, առավել ցայտուն է դառնում դրանց սոցիալական կողմնորոշումը։ Չէ՞ որ հենց էկոնոմիկայի, տնտեսական քաղաքականության ոլորտն ընդգրկում է այժմ ծանր ժամանակներ ապրող կապիտալիզմի հետ մրցության վճռական ճակատը։

Այդ ֆոնի վրա առանձնապես տպավորիչ են սոցիալիստական էկոնոմիկայի հաջողությունները։ ՏՓԽ-ի անդամ երկրները եղել են աշխարհի պետությունների առավել դինամիկ զարգացող խումբը և անցած տասնամյակի տնտեսական աճի տեմպերով երկու անգամ գերազանցել են զարգացած կապիտալիստական տերություններին։ Ինչպես նշվեց համագումարում, մեր երկրները վերջին տարիներին ստիպված են իրենց ստեղծարար խնդիրները լուծել բարդացած պայմաններում, որոնց վրա մեծապես ազդեցին համաշխարհային տնտեսական կոնյունկտուրայի վատթարացումը, գների խիստ բարձրացումը։ Լարվածության թուլացման պրոցեսի արգելակումը, իմպերիալիզմի կողմից պարտադրվող սպառազինությունների մրցավազքը որպես ծանր բեռ ընկնում են նաև սոցիալիստական երկրների վրա։

Օգտագործելով աշխատանքի սոցիալիստական բաժանման առավելություն-



ները, հմտորեն ու լայնորեն միավորելով ջանքերը, ռեսուրսները, փորձը, եղբայրական երկրները հսկայական հնարավորություններ են ստանում դժվարությունները հաղթահարելու, սոցիալ-տնտեսական առաջընթացի ուղիով զարգանալու համար։ Սոցիալիստական տնտեսական ինտեգրացիան դարձել է տնտեսական քաղաքականության որոշիչ գործոն, որը բարերար է ազդում ինչպես ամբողջ ճյուղերի, այնպես էլ առանձին ձեռնարկությունների գործունեության վրա։ Առանց ջանքերի ու ռեսուրսների այդպիսի միավորման այժմ արդեն անհնար է պատկերացնել սոցիալիստական համագործակցության այս կամ այն երկրի հետևողական զարգացումը։

Եղբայրական երկրների պատմական հասումների հիմքերի հիմքը մեր ժողովուրդների, կառավարող կոմունիստական կուսակցությունների անխախտ մարտական դաշինքն է, նրանց գաղափարաքաղաքական միասնությունը։

Հաշվետու զեկուցման մեջ, համագումարի պատգամավորների և հյուրերի ելույթներում կարևորվեցին այն խոր փոխըմբռնումը, վստահությունն ու համաձայնությունը, որ գոյություն ունեն սոցիալիստական համագործակցության եղբայրական կուսակցությունների և պետությունների միջև։ Սոցիալ-տնտեսական զարգացման, միջազգային քաղաքականության ոլորտներում սոցիալիստական համագործակցության երկրների միջև հաստատվել է սկզբունքային միասնություն։ «Պետությունների հարաբերությունները հնուց ի վեր կոչվել են միջազգային հարաբերություններ,— նշեց Լ. Ի. Բրեժնևը։— Բայց միայն մեր ժամանակներում, սոցիալիզմի աշխարհում, դրանք իրոք դարձել են ժողովուրդների հարաբերություններ։ Դրանց անմիջականորեն մասնակցում են միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ»։

Սերտ են ու բազմակողմանի եղբայրական սոցիալիստական երկրների հետ մեզ միացնող կապերը։ Մեր միասնության ու համախմբվածության իրական արտահայտությունը եղան ՍՄԿԿ XXVI համագումարից հետո կայացած Բուլղարիայի կոմունիստական կուսակցության XII համագումարը, Չեխոսլովակիայի կոմկուսի XVI և ԳՍՄԿ X համագումարները։ Դրանք ցույց տվեցին, որ եղբայրական կուսակցություններն ու երկրները հանդես են գալիս միասնական ճակատով, լուծում ընդհանուր խնդիրներ։ Մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին հավատարմությունը նրանց սերտ համագործակցության հուսալի հիմքն է։

ՍՄԿԿ-ի և սովետական պետության արտաքին քաղաքական գործունեության կարևոր ուղղություններից է զարգացող երկրների հետ, իրենց ազգային ու սոցիալական ազատագրման համար, ընդդեմ գաղութատիրության ու դրա մնացուկների դեմ պայքարող ժողովուրդների հետ համագործակցության ուժեղացումը։

Վ. Ի. Լենինի պատգամներին, իրենց ինտերնացիոնալ պարտքին հավատարիմ Սովետական Միությունը և սոցիալիստական համագործակցության մյուս երկրները ակտիվորեն պաշտպանում են ազգային-ազատագրական շարժման ուժերին, գաղութային ճնշումից ազատագրված ժողովուրդների ձգտումը՝ ամրապնդելու իրենց քաղաքական ու տնտեսական ինքնուրույնությունը, վերջնականապես ազատվելու իմպերիալիստական շահագործումից։

Մեր երկիրը նկատելիորեն ընդլայնել է համագործակցությունը գաղութային ճնշումից ազատագրված երկրների հետ, նրանց հետ զարգացնելով տնտեսական, գիտատեխնիկական փոխշահավետ կապեր, աջակցում կադրերի՝ ինժեներների, տեխնիկների, որակյալ բանվորների պատրաստման գործում։ Տասնյակ հազարավոր սովետական մասնագետներ անձնվիրաբար աշխատում են Ասիայի և Աֆրիկայի երկրների շինհրապարակներում, արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ, ուսումնական հաստատություններում, հիվանդանոցներում։

Այդ պետությունների նկատմամբ միանգամայն այլ վերաբերմունք են ցուցաբերում իմպերիալիստական տերությունները։ Վերջիններս փորձում էին ներքին հակահեղափոխությանը խրախուսելու կամ դրսից ագրեսիա կազմակերպելու միջոցով ճնշել ժողովրդական հեղափոխություններն ազատագրված երկրներում, ինչպես այդ եղավ Անգոլայում և Եթովպիայում։ Իմպերիալիստական ուժերը չհայտարարված պատերազմ սանձազերծեցին աֆղանական հեղափոխու-





թյան դեմ։ Սովետական Միությունը Աֆղանստանի կառավարության խնդրանքով աֆղան ժողովրդին օգնություն ցույց տվեց ՍՍՀՄ-ի և ԱԴՀ-ի միջև 1978 թվականին կնքված բարեկամության, բարիդրացիության և համագործակցության պայմանագրին և ՄԱԿ-ի կանոնադրությանը լրիվ համապատասխան։

«Մենք դեմ ենք հեղափոխության արտահանմանը, բայց չենք կարող համաձայնել նաև հակահեղափոխության արտահանմանը,— հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը։— Իմպերիալիզմը իսկական չհայտարարված պատերազմ էր սանձազերծել աֆղանական հեղափոխության դեմ։ Դա ուղղակի սպառնալիք էր ստեղծել նաև մեր հարավային սահմանի անվտանգության համար։ Այդպիսի դրությունը մեզ հարկադրեց ցույց տալ ռազմական օգնություն, որի մասին խնդրել էր բարեկամ երկիրը»։

Իմպերիալիստական ուժերը ձեռնամուխ են եղել ուժեղացնելու իրենց կոպիտ միջամտությունն ուրիշ պետությունների ներքին գործերին՝ Մերձավոր և Միջին Արևելքում, Պարսից ծոցի, Հնդկական օվկիանոսի գոտում, Հարավ-արևելյան Ասիայում և Լատինական Ամերիկայում։ Աշխարհի որոշ շրջաններ հայտարարելով իր «կենսական շահերի» ոլորտ, ԱՄՆ-ը սկսել է տենդորեն ամրապնդել իր արդեն ունեցած ռազմական բազաները, ինչպես նաև նոր վայրեր որոնել այդ ու դրանց հարող շրջաններում բազաներ ստեղծելու համար։ Միացյալ Նահանգները ծովային մի մեծ նավախումբ են ուղարկել դեպի իրանական ափերը, ստեղծել են «արագ ծավալման» կորպուս, որի նպատակն է պահպանել հակաժողովրդական վարչակարգերը, վախեցնել անկախ պետություններին։

Աճել է սոցիալիստական զարգացման ուղին ընտրած երկրների թիվը։ Սակայն այդ երկրների զարգացումը տեղի է ունենում ոչ միատեսակ, բայց առաջընթացի հիմնական ուղղությունները նման են։ «Դա,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— իմպերիալիստական մոնոպոլիաների, տեղական խոշոր բուրժուազիայի և ֆեոդալների դիրքերի աստիճանական վերացումն է, օտարերյա կապիտալի գործունեության սահմանափակումը։ Դա էկոնոմիկայի մեջ ժողովրդական պետության հրամանատարական բարձունքների ապահովումն է և անցումը դեպի արտադրաուժերի պլանային զարգացումը, գյուղում կոոպերատիվ շարժման խրախուսումը։ Դա հասարակական կյանքում աշխատավոր մասսաների դերի բարձրացումն է, պետական ապարատի աստիճանական ամրապնդումը ժողովրդին նվիրված ազգային կադրերով։ Դա այդ երկրների արտաքին քաղաքականության հակաիմպերիալիստական բնույթն է։ Դրանցում ամրապնդվում են հեղափոխական կուսակցությունները, որոնք արտահայտում են աշխատավորական լայն մասսաների շահերը»։

Մեր երկիրը բարեկամության և համագործակցության պայմանագրերով կապված է Սիրիայի, Անգոլայի, Եթովպիայի, Մոզամբիկի, Աֆղանստանի և Եմենի Ժողովրդական Դեմոկրատական Հանրապետության հետ։ Բազմակողմանի համագործակցություն է ծավալվում Ալժիրի, Գվինեայի և Ասիայի ու Աֆրիկայի ուրիշ երկրների հետ, որոնցում ՍՍՀՄ-ի օգնությամբ կառուցվում են արդյունաբերական շատ օբյեկտներ։

ՍՍՀՄ-ը հետևողականորեն հանդես է գալիս հօգուտ Մերձավոր Արևելքի պրոբլեմի համակողմանի կարգավորման՝ բոլոր շահագրգռված կողմերի, այդ թվում նաև Պաղեստինի ազատագրման կազմակերպության մասնակցությամբ։ Ժամանակն է վերադառնալ արդարացի և ռեալիստական հիմքի վրա համապարփակ կարգավորման ազնիվ կոլեկտիվ որոնումների։ Սովետական Միությունը պատրաստ է մյուս շահագրգռված կողմերի՝ արաբների հետ (ներառյալ, իհարկե, Պաղեստինի ազատագրման կազմակերպությունը), Իսրայելի, ԱՄՆ-ի հետ համատեղ մասնակցելու այդպիսի աշխատանքին, համագործակցելու եվրոպական պետությունների, բոլոր նրանց հետ, ովքեր անկեղծ ձգտում են ցուցաբերում արդարացի և կայուն խաղաղություն ապահովելու Մերձավոր Արևելքում՝ 1967 թվականին զավթած բոլոր արաբական տերիտորիաների իսրայելյան օկուպացումը դադարեցնելու և ընդհուպ մինչև սեփական պետություն ստեղծելը Պաղեստինի արաբ ժողովրդի իրավունքները ճանաչելու հիման վրա։

Համագումարը հաստատեց, որ ՍՄԿԿ-ն այսուհետ ևս հետևողականորեն վարելու է ազատագրված երկրների հետ ՍՍՀՄ համագործակցությունը զարգաց-



նելու, համաշխարհային սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման դաշինքը ամրապնդելու կուրս։

Սովետական արտաքին քաղաքականության գլխավոր սկզբունքներից մեկը խաղաղ գոյակցության սկզբունքն է։ Ելակետ ունենալով այն հետևությունը, որ արդի պայմաններում սոցիալիզմի հաղթանակը հնարավոր է սկզբում մի քանի կամ նույնիսկ մեկ առանձին վերցրած կապիտալիստական երկրում, Վ. Ի. Լենինը հիմնավորեց տարբեր սոցիալ-տնտեսական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականությունը։ Կապիտալիստական երկրների հետ ունեցած իր հարաբերություններում ՍՍՀՄ-ը հետևողականորեն ղեկավարվում է խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքով, որը ոչ թե կոնյունկտուրային լոզունգ է, այլ սովետական արտաքին քաղաքականության հիմնարար սկզբունքը։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ արդի կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սրման պայմաններում շարունակում է ակտիվորեն վարել բուրժուական պետությունների հետ խաղաղ գոյակցության և փոխշահավետ համագործակցության, իմպերիալիզմի ագրեսիվ մեքենայություններին վճռական հակահարված տալու լենինյան քաղաքականություն։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սրումը ուղեկցվել է ինֆլյացիայի չտեսնված աճով (1970 թվականից զարգացած կապիտալիստական երկրներում գները բարձրացել են միջին հաշվով 2,3, իսկ 1975 թվականից՝ մեկուկես անգամ), սոցիալական հակասությունների ուժեղացմամբ և դասակարգային պայքարի առավել շիկացմամբ։ Սրվում են միջիմպերիալիստական հակասությունները, ուժեղանում է պայքարը վաճառահանման շուկաների համար։

Այդ ամենը ազդում է կապիտալիստական երկրների քաղաքականության վրա։ «Արկածախնդրություն, իրենց նեղ-շահադիտական նպատակների համար մարդկության կենսական շահերը խաղաքարտի վրա դնելու պատրաստակամություն,— նշեց Լ. Ի. Բրեժնևը,— ահա թե ինչն է հատկապես մերկ ձևով դրսևորվում իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանների քաղաքականության մեջ։ Լիակատար արհամարհանք ցուցաբերելով ժողովուրդների իրավունքների և իղձերի նկատմամբ, նրանք փորձում են ժողովրդական մասսաների ազատագրական պայքարը պատկերել որպես «տեռորիզմի» դրսևորում»։ Աճում են ռազմական ծախսերը, ռազմական հատկացումների ավելացումը պլանավորված է գրեթե մինչև դարի վերջը, ստեղծվում են ստրատեգիական միջուկային զենքի նոր տեսակներ, առաջադրվում են ռազմական դոկտրինաներ, որպեսզի մարդկանց ներշնչեն միջուկային պատերազմի հնարավորության և թույլատրելիության գաղափարը։

ԱՄՆ-ը իր «կենսական շահերի» ոլորտ է հայտարարում յուրաքանչյուր շրջան, որտեղ տնօրինություն են անում ամերիկյան մոնոպոլիաները։ Իր զավթողական պլանների համար նա ձգտում է ՆԱՏՕ-ի բլոկի ֆունկցիաները տարածել Մերձավոր և Միջին Արևելքի վրա։ Նման իրավիճակում սովետական կառավարությունն առաջարկել է համատեղ ջանքերով, հաշվի առնելով բոլոր կողմերի օրինական շահերը, այդ շրջանում ստեղծել կայունության և հանգստության վիճակ և երաշխավորել ռեգիոնի պետությունների սուվերեն իրավունքները և այն մնացած աշխարհի հետ կապող ծովային և այլ կոմունիկացիաների անվտանգությունը։ Անհրաժեշտ է, որ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս երկրների կառավարությունները սթափ և անկանխակալ կերպով կշռադատեն այդ հարցը, որպեսզի հնարավոր լինի գտնել բոլորի համար ընդունելի լուծում։

Այժմ սովետա-ամերիկյան հարաբերություններում տեղ են գտել որոշ խոչընդոտներ։ Սպիտակ տան ղեկավարությունը փոխվելուց հետո էլ Վաշինգտոնից բացահայտ ռազմատենչ կոչեր ու հայտարարություններ են լսվում, որոնք, ասես, հատկապես նպատակ ունեն թունավորել մթնոլորտը։ «Մենք,— հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը,— չենք ձգտել և չենք ձգտում ռազմական գերազանցության հասնել մյուս կողմի նկատմամբ։ Դա մեր քաղաքականությունը չէ․ բայց մենք նաև թույլ չենք տա այդպիսի գերազանցություն ստեղծել մեր նկատմամբ։ Նման փորձերը, ինչպես նաև մեզ հետ ուժի դիրքերից վարվող խոսակցությունները, բացարձակապես հեռանկարներ չունեն»։

Համոզիչ կերպով ապացուցելով, որ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև, Վարշավայի պայմանագրի և ՆԱՏՕ-ի երկրների միջև իրոք գոյություն ունի ռազմաստրատեգիական հավասարակշռություն, Լ. Ի. Բրեժնևը զգուշացրեց. «Փորձել միմյանց հաղթել սպառազինությունների մրցավազքի ասպարեզում, հույս դնել միջուկային պատերազմում հաղթելու վրա՝ վտանգավոր խելահեղություն է»:

Ինչպես հայտնի է, աշխարհում միջազգային դրությունը մեծապես պայմանավորված է ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի քաղաքականությամբ: Սակայն սովետա-ամերիկյան հարաբերությունների արդի վիճակը և իրենց լուծումը պահանջող միջազգային պրոբլեմների սրությունը թելադրում են բոլոր մակարդակներում երկխոսության անհրաժեշտությունը:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ արտաքին քաղաքականության գլխավոր ուղղությունը եղել և մնում է սպառազինությունների մրցավազքի սանձահարումը և զինաթափումը: Ինչպես ցույց է տալիս կյանքը, դա պատմական նշանակություն ունեցող խնդիր է: Ելնելով լենինյան այն հետևությունից, որ զինաթափումը սոցիալիզմի իդեալն է, ՍՍՀՄ-ը վիթխարի ջանքեր է գործադրում պատերազմի սպառնալիքը վերացնելու համար: Դրա գլխավոր աղբյուրը իմպերիալիզմն է, որն անշեղորեն մեծացնում է ռազմական զինանոցները: Հենց այդ պատճառով սովետական կոմունիստների համաժողովից հնչեց մի ձայն, որն առաջարկում է ժողովուրդների անվտանգությունն ամրապնդելու, միջազգային մթնոլորտն արմատապես բարելավելու խաղաղասիրական կոնկրետ ծրագիր:

Նշելով միջուկային սպառազինությունների մրցավազքին վերջ դնելու, մասսայական ոչնչացման զենքի բոլոր տեսակների արգելմանը հասնելու Սովետական Միության ջանքերը և ՍՍՀՄ-ի ու Վարշավայի պայմանագրի երկրների մյուս խաղաղասիրական նախաձեռնությունները, Լ. Ի. Բրեժնևը կարևորեց ռազմական բնագավառում վստահությունն ամրապնդելու նպատակով միջոցներ իրականացնելու, մասնավորապես ցամաքային զորքերի զորավարժությունների մասին վաղօրոք ծանուցելու կարևորությունը և առաջարկեց «էապես ընդլայնել նաև այդպիսի միջոցառումների կիրառման գոտին: Մենք պատրաստ ենք,— հայտարարեց նա,— դրանք տարածել ՍՍՀՄ-ի ամբողջ եվրոպական մասի վրա այն պայմանով, եթե վստահության միջոցառումների գոտին համապատասխանորեն ընդլայնեն նաև արևմտյան պետությունները»: Նշելով Հեռավոր Արևելքի շրջանի առանձնահատուկ կարևորությունը, որտեղ հարևան են ՍՍՀՄ-ը, Չինաստանը, Ճապոնիան և որտեղ կան ամերիկյան ռազմական բազաներ, Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սովետական Միությունը պատրաստ կլիներ բոլոր շահագրգռված երկրների հետ կոնկրետ բանակցություններ վարելու Հեռավոր Արևելքում վստահության միջոցառումների շուրջ»:

Համագումարում արտահայտվեց նաև ՍՍՀՄ-ի պատրաստակամությունը՝ պայմանավորվածության հասնելու Պարսից ծոցի՝ որպես ուրույն պրոբլեմի և Աֆղանստանի շուրջը դրության առանձին կարգավորման վերաբերյալ, ինչպես և Աֆղանստանի հետ առնչվող հարցերը քննարկելու Պարսից ծոցի անվտանգության հարցերի հետ շաղկապված:

Արդի իրավիճակը պահանջում է նոր, լրացուցիչ ջանքեր, որպեսզի վերացվի պատերազմի սպառնալիքը, ամրապնդվի միջազգային անվտանգությունը: Այդ նպատակով համագումարն առաջադրեց նոր, խոշոր մասշտաբի գաղափարների ու ռեալիստական առաջարկությունների մի կոմպլեքս: Սովետական Միությունը պատրաստ է ԱՄՆ-ի հետ անհապաղ շարունակելու բանակցությունները ստրատեգիական զենքերի կրճատման մասին՝ պահպանելով այն ողջ դրականը, ինչ մինչ օրս ձեռք է բերվել այդ բնագավառում: Նման բանակցությունները, իհարկե, կարող են տեղի ունենալ միայն հավասարության և միատեսակ անվտանգության հիման վրա: Հարկ եղած դեպքում այդպիսի բանակցություններում պետք է ներգրավվեն նաև մյուս բոլոր միջուկային տերությունները: Միաժամանակ շեշտվում է ամեն մի սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ բանակցություններ վարելու ՍՍՀՄ-ի պատրաստակամությունը:



Սովետական Միությունը կարևոր նշանակություն է տալիս Եվրոպայում հրթիռային զենք տեղադրելու հարցին: Լ. Ի. Բրեժնևն առաջարկեց «պայմանավորվածության հասնել այն մասին, որ արդեն այժմ մորատորիում սահմանվի Եվրոպայում ՆԱՏՕ-ի երկրների և ՍՍՀՄ-ի միջին հեռավորության նոր հրթիռամիջուկային միջոցների տեղաբաշխման համար, այսինքն՝ քանակական և որակական տեսակետից սառեցնել այդպիսի միջոցների գոյություն ունեցող մակարդակը, ներառյալ, իհարկե, այդ շրջանում ԱՄՆ-ի առաջավոր բազավորման միջուկային միջոցները»: Որպեսզի ժողովուրդները կարողանան իմանալ ճշմարտությունը միջուկային պատերազմի կործանարար հետևանքների մասին, Սովետական Միությունը առաջարկում է ստեղծել միջազգային հեղինակավոր կոմիտե, որը ցույց տար միջուկային աղետի կանխման կենսական անհրաժեշտությունը:

Անհրաժեշտ է նաև հրավիրել անվտանգության խորհրդի հատուկ նիստ՝ Անվտանգության խորհրդի անդամ պետությունների բարձրագույն ղեկավարների մասնակցությամբ, միջոցներ ու եղանակներ որոնել միջազգային մթնոլորտը բարելավելու, պատերազմ թույլ չտալու նպատակով: Նիստին, հավանաբար, ցանկության դեպքում, կարող են մասնակցել նաև այլ պետությունների ղեկավարներ:

Սովետական Միության առաջադրած նոր միջոցառումները վերաբերում են նաև հրթիռամիջուկային և սովորական տիպի զենքերին, ցամաքային զորքերին, ծովային և օդային ուժերին: Դրանք շոշափում են Եվրոպայի, Մերձավոր և Միջին Արևելքի, Հեռավոր Արևելքի դրությունը: Ինչպես ասված է հաշվետու զեկուցման մեջ, դա խաղաղության մեր ծրագրի օրգանական շարունակությունն ու զարգացումն է՝ մեր օրերի միջազգային առավել հրատապ, կենսական պրոբլեմների պայմաններում: «Պաշտպանել խաղաղությունը. միջազգային տեսակետից այժմ մեր կուսակցության, մեր ժողովրդի, ինչպես նաև մոլորակի բոլոր ժողովուրդների համար չկա ավելի կարևոր խնդիր»:

ՍՄԿԿ XXVI համագումարում սովետական նոր առաջարկությունները վառ կերպով վկայում են Սովետական Միության հաստատ վճռականությունը՝ խորացնելու լարվածության թուլացումը, պահպանելու խաղաղությունը մեր մոլորակի վրա:

Ամբողջ հողագնդի ժողովուրդները լսեցին Մոսկվայից հնչած խաղաղության հուժկու կոչը: Միջազգային մթնոլորտը բարելավելու, սպառազինությունների մրցավազքը սանձահարելու վերաբերյալ Սովետական Միության առաջարկած նոր, խոշոր միջոցառումները համաշխարհային քաղաքականության գլխավոր թեման են: Բոլոր ուղղությունների մամուլը խոսում է «80-ական թվականների խաղաղության ծրագրի», «սովետական նոր խաղաղ հարձակման» մասին: ՍՍՀՄ առաջարկությունները համապատասխանում են ժողովուրդների իղձերին, դրանք ջերմորեն ողջունում և պաշտպանում են երկրագնդի բարի կամքի տեր մարդիկ: Մեր կուսակցությունը, սովետական մարդիկ այժմ սպասում են մեր առաջարկությունների կոնկրետ ու պարզ պատասխանին: Այդ պատասխանին են սպասում նաև ամբողջ աշխարհի ժողովուրդները:

Սովետական պետության արտաքին քաղաքական կուրսը, որ ձևակերպեց կուսակցության XXVI համագումարը, վկայում է սովետական արտաքին քաղաքականության հնարավորությունների անչափ մեծացման, նրա գործունեության ոլորտի համապարփակ ընդլայնման, բոլոր ժողովուրդների, մեր ամբողջ մոլորակի բախտի համար նրա նպատակների ու խնդիրների կենսական նշանակության մասին:

Համագումարի պատգամավորները, եղբայրական կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչները շեշտում էին այն աչքի ընկնող դերը, որ կատարում է Լ. Ի. Բրեժնևը՝ ինչպես երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում մեր կուսակցության լենինյան կուրսի ստեղծագործական զարգացման ու կենսագործման բնագավառում: Սոցիալիզմի երկրների միասնության և համախմբվածության ամրապնդման, միջազգային կյանքի ըն-

*թացքի վրա նրանց բարերար ներգործության ուժեղացման գործում, հասարակական տարբեր սիստեմների պատկանող պետությունների փոխհարաբերություններում լարվածության հանգույցների արձակման, միջազգային հարաբերությունների արմատական բարելավման գործում բացառիկ նշանակություն ունեն Լ. Ի. Բրեժնևի արտասահմանյան բազմաթիվ այցերը, նրա հանդիպումներն ու բանակցությունները պետական գործիչների հետ։ Այդ այցերի շնորհիվ ստորագրված քաղաքական փաստաթղթերը խոշոր ուղենիշեր են ժամանակակից Եվրոպայի կյանքում, միջազգային հարաբերությունների ողջ համակարգի վերակառուցման գործում։ Լ. Ի. Բրեժնևի վիթխարի անձնական ավանդը կուսակցության հսկայածավալ գործունեության մեջ, որի նպատակն է ամրապնդել լարվածության թուլացումը և վերացնել նոր համաշխարհային պատերազմի վտանգը, նրան արժանացրեց սովետական ժողովրդի խոր երախտագիտությանը, նրան բերեց բարձր ու արժանի հեղինակություն համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման մեջ, ամբողջ աշխարհի աշխատավորական ամենալայն զանգվածների շրջանում։ Պատմական ու քաղաքական վիթխարի նշանակություն ունեցող կուսակցական փաստաթղթեր են Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները, որոնք նվիրված են ՍՄԿԿ-ի և սովետական պետության արտաքին քաղաքականության հարցերին։*

*ՍՄԿԿ XXVI համագումարը ցուցադրեց խաղաղության համար մղվող պայքարում լենինյան արտաքին քաղաքական կուրսի ճշմարտացիությունը, որն այնքան վառ կերպով ձևակերպված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։ Լենինյան կուսակցության համագումարը վիթխարի նշանակություն ունեցող իրադարձություն է, վառ էջ կուսակցության, սովետական պետության և համաշխարհային պատմության մեջ։*

*Սովետական մարդիկ միահամուռ հավանություն են տալիս ՍՄԿԿ-ի և սովետական պետության արտաքին քաղաքականությանը։ ՍՄԿԿ XXVI համագումարը հաստատեց այդ քաղաքականության գլխավոր ուղղությունները, նշեց մեր կուսակցության ու երկրի արտաքին քաղաքական գործունեության նոր ուղիները՝ հանուն խաղաղության, միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության։*

---

# ԱՐԴԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՃԳՆԱԺԱՄԻ ՇՈՒՐՋ

**Ն. Ռ. ԹՈՎՄԱՍՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ քննադատությունը եղել և մնում է մարքս-լենինյան տեսության կարևորագույն խնդիրներից մեկը։ Կապիտալիստական երկրների հետ խաղաղ գոյակցության քաղաքականությունը, որ հետևողականորեն վարում է մեր կուսակցությունը, ընդհանուր ոչինչ չունի գաղափարախոսական պայքարի ոլորտում կոմպրոմիսների հետ, այն բացառում է այդ ասպարեզում որևէ զիջման հնարավորությունը։ Այդ պայքարն առանձին ուժգնությամբ է դրսևորվում մանավանդ մեր օրերում, երբ, ինչպես ասված է ՍՄԿԿ XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ, «աճել է դասակարգային հակառակորդի պրոպագանդիստական միջոցների ակտիվությունը, ուժեղացել են սովետական մարդկանց գիտակցության վրա քայքայիչ ազդեցություններ գործելու նրա փորձերը»։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի արդի փուլում այդ փորձերը դարձել են ավելի ճկուն, երկդիմի, ուստի և ավելի վտանգավոր։ Այդ ճգնաժամը, ինչպես հայտնի է, ընդգրկում է կապիտալիստական աշխարհի բոլոր կողմերը, նրա տնտեսական, քաղաքական և գաղափարական կյանքի բոլոր բնագավառները։ Քաղաքատնտեսության մեջ այդ ճգնաժամն ունի իր ուրույն դրսևորումները, որոնց բնութագրությունը և կազմում է սույն հոդվածի բովանդակությունը։*

*Բուրժուական քաղաքատնտեսության ճգնաժամը սկսվում է նրա գռեհկացմամբ, երբ, ինչպես Մարքսն էր գրում, բուրժուական տնտեսագետների համար «արդեն հարցը վերաբերում է ոչ այն բանին, թե արդյոք ճի՞շտ է այս կամ այն թեորեման, այլ այն բանին, թե այդ թեորեման կապիտալին օգտակա՞ր է, թե՞ վնասակար, հարմա՞ր է, թե՞ անհարմար, համապատասխանո՞ւմ է ոստիկանական նկատառումներին, թե՞ ոչ»* (Կապիտալ, Հայպետհրատ, 1954, հ. 1, էջ 13)։

*Կապիտալիստական կարգերի ջատագովությունը եղել և մնում է բուրժուական քաղաքատնտեսության բովանդակությունը։ Դրա էվոլյուցիայի առանձին փուլերում միմյանց հաջորդափոխում են այդ գաղափարի արտահայտության տարբեր ձևերը միայն։*

*XIX դարի բուրժուական գռեհիկ քաղաքատնտեսության ջատագովական էությունը շատ էր բացահայտ հետևյալ առումով. նախ, կապիտալիզմը համարվում էր որպես մարդկային էությունից բխող կատարյալ սիստեմ, և երկրորդ՝ մարքսիզմը համարվում էր ուտոպիական սոցիալիզմի մի նոր տարբերակ, որը պետք է շուտով մոռացվեր և դառնար պատմության հուշ։*

*Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի պայմաններում, մանավանդ դրա խորացման վերջին փուլերում, պարզ էր, որ այդ կարգի քարոզները նույնությամբ վերարտադրվել չէին կարող։ Այժմ, երբ համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրները, զբաղեցնելով մոլորակի տերիտորիայի քառորդ մասը, տալիս են համաշխարհային արդյունաբերական արտադրանքի երկու հին-*

գերորդը, ակնհայտորեն սնամեջ են դարձել կապիտալիզմի հավերժականության և մարքսիզմի ուտոպիկ բնույթի մասին հերյուրանքները։ Արդի բուրժուական տնտեսագիտական որոշ հոսանքներ նույնիսկ «սոցիալիստական» կերպարանք են ընդունում, իսկ դրա ներկայացուցիչներից շատերը սեթևեթում են մարքսիզմի հետ։

Այս կարգի հոսանքներից մեկը կոնվերգենցիայի տեսությունն է, ըստ որի համաշխարհային տնտեսության զարգացումն ընթանում է երկու սոցիալական սիստեմների՝ կապիտալիզմի և սոցիալիզմի տարբերությունների աստիճանական վերացման ուղիով։ Ընդ որում, դրանք իբր պետք է միաձուլվեն մեկ ընդհանուր հիբրիդ տնտեսաձևի մեջ, որը ներառելու է կապիտալիզմի և սոցիալիզմի տնտեսաձևերի դրական կողմերը։ Ամերիկյան տնտեսագետ Ջ. Գելբրեյտն ուղղակի գրում է, որ «շուկայական սիստեմը պետք է գոյություն ունենա պլանային սիստեմի հետ զուգահեռ, և պետք է ընդունել, որ այդ փաստը շատ մեծ ազդեցություն է ունենում տնտեսության զարգացման վրա» (Дж. К. Гэлбрейт, Экономические теории и цели общества, М., 1976, стр. 74)։ Պլանային սիստեմը, ըստ նրա, ներառում է ինչպես խոշոր մոնոպոլիստական միավորումները, նույնպես և պետական ձեռնարկությունները, որոնց փոխհարաբերությունները գործում են «սերտ սիմբիոզի պայմաններում» (նույն տեղը, էջ 77)։ Դեռ ավելին, այս պլանային-շուկայական «սոցիալիստական» սիստեմում միաձուլվում է ֆինանսական օլիգարխիան՝ իր միլիտարիստական ողջ ապարատով հանդերձ, որը Գելբրեյտը ներկայացնում է որպես կատարյալ տնտեսաձև, որի զարգացումն ու կատարելագործումը «նշանակում է սպառման աճ, եկամուտների մեծացում, հարկերից բյուջեի մուտքերի ավելացում, սոցիալական ապահովության ընդլայնում» (նույն տեղը, էջ 139)։ Մոնոպոլիստական ձեռնարկությունների գործող անձնակազմի, կամ ինչպես Ջ. Գելբրեյտն է ասված, տեխնոստրուկտուրայի «նպատակն է ամբողջ հասարակության առաջընթացը, որի ճիշգրիտ չափանիշը սպառման մակարդակն է» և այն «ոչ մի առանձին կապ չունի շահույթի ծավալի հետ» (Дж. Гэлбрейт, Новое индустриальное общество, М., 1970, стр. 70, 76)։

Մոնոպոլիստական կապիտալիզմի այս կարգի գովաբանություններն են արդի բուրժուական տնտեսագիտության բուն բովանդակությունը։ Շվեդացի տնտեսագետ Գ. Մյուրդալը հայտարարում է, թե «հավասար հնարավորությունների համար մղվող հարյուրամյա պայքարը մոտենում է իր ավարտին, այնքանով, որքանով որ զարգացած երկրներում մենք դրան գրեթե հասել ենք» (Г. Мюрдаль, Мировая экономика, М., 1958, стр. 484)։

Անհետևողականությունը, բացահայտ իրարամերժ դատողությունները բնորոշ են բուրժուական տնտեսագիտությանը։ Իմպերիալիզմի տնտեսակարգի ջատագովությանը զուգընթաց, այդ հեղինակները հանդես են գալիս կապիտալիստական կարգերի ճշմարտացի քննադատությամբ։ «Այժմ արդեն դժվար է հավատալ,— գրում է Ջ. Գելբրեյտը,— որ տնտեսական սիստեմը կատարելագործման տենդենց ունի։ Անհամաչափ զարգացումը, անհավասարությունը, իշխանություն պետության նկատմամբ, ինֆլյացիան, ճյուղերի միջև կոորդինացիայի կարգավորման անկարողությունը սիստեմի բաղկացուցիչ մասն են։ Դրանք մանր պակասություններ չեն, որոնք մեքենայի կոտրված պտուտակի նման հնարավոր լինի դյուրությամբ փոխել այն բանից հետո, երբ դա հայտնաբերված է։ Դրանք խորապես ներհատուկ են իրեն՝ սիստեմին» (Дж. Гэлбрейт, Экономические теории и цели общества, стр. 269—270)։

Բայց այս դեռ բոլորը չէ։ Կապիտալիստական սիստեմի արատները հեղինակի առջև գծագրվում են ավելի ընդարձակ մասշտաբներով։ Ժամանակակից բուրժուական պետությունները հանդես են գալիս մոնոպոլիաների շահերի պաշտպանությամբ։ Դրանով կառավարությունը նկատելիորեն ուժեղացնում է տնտեսության անհամաչափ զարգացումն այն առումով, որ միջոցների մեծ մասը հատկացնում է գլխավորապես արտադրության զարգացած բնագավառներին և հատկապես՝ ռազմական արդյունաբերության ճյուղերին, «չնայած



մենք ապրում ենք խաղաղ պայմաններում»։ Իսկ «գյուղատնտեսության, բնակարանային շինարարության, կրթության, առողջապահության ծախսերը և չքավորության նպաստները կրճատվում են՝ տնտեսման պատրվակով» (նույն տեղը, էջ 367—368)։ Հեղինակը ծաղրում է այն տնտեսագետներին, որոնք կառավարության նման վարքագիծը համարում են առողջ տնտեսական քաղաքականություն և ավելացնում է, որ «նախասիրությունների այս աղավաղումն ամենևին էլ սիստեմի յուրատեսակ սխալներ չեն, ինչպես հաճախ կարծում են... Դրանք ժամանակակից էկոնոմիկայի այնպիսի անբաժան հատկություններն են, ինչպես գինեմոլի դողացող ձեռքերը» (նույն տեղը, էջ 368)։

Հայտնի է, որ եկամուտների հավասարեցման գաղափարը արդի բուրժուական քաղաքատնտեսության լեյտմոտիվն է։ Մասնավորապես շեշտվում է այն դրույթը, թե աշխատավորների եկամուտների «առաջընթացը» իբր տեղի է ունենում բարձր տեմպերով։ Գ. Հաբերլերը պնդում է, թե արդի զարգացած երկրներում «աշխատավարձն ավելի արագ է աճում, քան աշխատանքի ընդհանուր արտադրողականությունը» (Г. Хаберлер, Процветание и депрессия, М., 1960, стр. 554)։ Այլ կերպ ասած, ստացվում է, որ աշխատավարձն աճում է շահույթների հաշվին, որոնք հաճախ կրճատվում են «մասամբ սպառողների օգտին՝ մրցակցությունից առաջացած գների իջեցման հետևանքով, մասամբ էլ աշխատավարձի բարձրացման պահանջի ճնշման ազդեցության տակ» (Э. Хансен, Экономические циклы и национальный доход, 1959, стр. 687)։ Իսկ Գ. Հաբերլերը, հակասելով և՛ իրեն, և՛ Հանսենին, գրում է, որ «աշխատավարձի աճը նշանակալից չափով ետ է մնում գների և շահույթի աճից» (Г. Хаберлер, նույն տեղը, էջ 52)։ Հանսենը ավելի հեռու է գնում, խոստովանելով, որ հսկայական հարստության տեր ԱՄՆ-ը հասարակության զգալի մասի աղքատության երկիր է։ Ցածր եկամուտները, խղճուկ կրթությունը, վատ բնակարանը, հետնախորշերը, թերսնումը, հիվանդություններն ու հանցագործությունը— այս բոլորը փոխադարձաբար կապված են միմյանց (տե՛ս Э. Хансен, նույն տեղը, էջ 687)։

Հիշատակված դատողությունները բավական են բուրժուական տնտեսագիտության մեջ ստեղծված իրադրությունը բնութագրելու համար։ Բանն այն է, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման ներկա պայմաններում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի նվաճումների ֆոնի վրա, կապիտալիզմին ներհատուկ հակասություններն այնքան ցայտուն են, որ շատ թե քիչ օբյեկտիվ հետազոտություններն ի վիճակի չեն դրանք շրջանցել։

Ինչպես ասված է ՍՄԿԿ XXVI համագումարին Կենտկոմի տված հաշվետվության մեջ, կապիտալիզմն «ապրում է վերջին տասը տարում արդեն երրորդ տնտեսական անկումը», «Նկատելիորեն սրվել են սոցիալական հակասությունները... Մեկ տասնամյակում զարգացած կապիտալիստական երկրներում գործազուրկների բանակը կրկնապատկվել է։ 1980 թվականին այն կազմում էր 19 միլիոն մարդ» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարին և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան», հրատ., 1981 թ., էջ 31, 32)։

Այս իրադրության պայմաններում, ինքնապաշտպանության բնազդի ճնշման ներքո, կործանվող սիստեմի ջատագովությունը, որպես կենսական անհրաժեշտություն, պոռթկում է բազմապատկված ուժով։ Բանն այնտեղ է հասնում, որ բուրժուական տնտեսագետներից ոմանք սոցիալիստական սիստեմի առավելությունները վերագրում են կապիտալիզմին, իսկ կապիտալիզմի արատները՝ սոցիալիզմին։ Նման իրողությունն ինչպես կապիտալիզմի սիստեմի, այնպես էլ նրա գաղափարախոսության, այդ թվում՝ բուրժուական քաղաքատնտեսության ճգնաժամի արտահայտության դրսևորումներից է։

Բուրժուական տնտեսագետները ժամանակակից խոշոր կորպորացիաներն ու պետական ձեռնարկությունները ներկայացնում են որպես «սոցիալիստական» բնույթի միավորումներ, որի բոլոր անդամները հավասարապես շահագրգ-

գրված են արտադրության կատարելագործման, դրա արդյունքների աճի գործում՝ հանուն հասարակության բարօրության։ Այդ կոլեկտիվներում «առանձին անդամի» եսը «նույնացվում է կազմակերպությանը»,— գրում է Ջ. Գելբրեյթը (Дж. Гэлбрейт, Экономические теории и цели общества, стр. 137)։ «Նրանց գործունեության արդյունքն ամենից ավելի քիչ կախում ունի աշխատավարձից։ Նրանք ամենից շատ հպարտ են աշխատանքին իրենց բարոյական նվիրվածությամբ» (էջ 333)։ Ըստ որում, բուրժուական տնտեսագետները հավատացնում են, որ այդ կոլեկտիվների համար ամենաբնորոշն այստեղ շահագործողական հարաբերությունների բացակայությունն է։ «Առաջին հայացքից արտաքին նմանություն կա մանր ֆիրմաներին կուլ տալու միջոցով ժամանակակից խոշոր ֆիրմաների աճի և Մարքսի կանխատեսած կապիտալիստական կենտրոնացման մեջ, երբ խոշոր կապիտալիստներն ավելի ու ավելի մեծ չափերով խժռում են ավելի փոքրերին։ Բայց այդպիսի համեմատությունը չի արդարացվում։ Մարքսի նկարագրած պրոցեսի դրդապատճառը շահագործումն էր և շահույթը։ Իսկ ժամանակակից պրոցեսի դրդապատճառը տեխնոստրուկտուրայի բյուրոկրատիկ առավելությունների, նրա հեղինակության և եկամուտների աճի ձեռքբերումն է» (նույն տեղը, էջ 143)։

Սոցիալիստական տնտեսության բնորոշ օրինաչափություններից է դրա պլանաչափ համամասնական զարգացումը։ Բուրժուական տնտեսագետները ո՛չ միայն այդ չեն ժխտում, այլև այն համարում են ինդուստրիալ հասարակության առաջընթացի կարևոր պայմանն առհասարակ՝ ինչպես սոցիալիստական, այնպես և կապիտալիստական երկրներում։ Նրանք գտնում են, որ սոցիալիստական երկրների նման «անհրաժեշտ է ստեղծել պետական պլանային կազմակերպություն» (նույն տեղը, էջ 397), որը պետք է զբաղվի տնտեսության զարգացման, դրա ճյուղային կառուցվածքի կատարելագործման, վերարտադրության փուլերի կոորդինացման հարցերով։ Բայց բուրժուական տնտեսագետների ճնշող մեծամասնությունը դրա հետ միաժամանակ չի բացառում շուկայական օրենքների գործողության անհրաժեշտությունը։ Տնտեսության պլանաչափ զարգացումը տեղի է ունենում շուկայական հարաբերությունների ծավալման պայմաններում։ Ամերիկացի տնտեսագետ Պ. Սամուելսոնը արդի կապիտալիստական տնտեսությունը բնութագրում է որպես «խառը էկոնոմիկա», որտեղ գների մեխանիզմի միջոցով լուծվում են երեք հիմնական պրոբլեմներ՝ «ի՞նչ, ի՞նչպես և ո՞ւմ համար արտադրել» (П. Самуэльсон, Экономика, М.. 1964, стр. 71)։ Այս «խառը էկոնոմիկան» բուրժուական տնտեսագետները համարում են բնորոշ նաև սոցիալիստական երկրներին։ Ինչպես հայտնի է, 1965 թ. տնտեսական ռեֆորմի կենսագործումը նրանք հենց այդ առումով էլ մեկնաբանեցին, պնդելով, թե սոցիալիզմի երկրները «ուղղում են իրենց սխալը»՝ ասպարեզ են բացում շուկայական օրենքների գործողության համար, առանց որի տնտեսությունը բնականոն ընթացքով զարգանալ չի կարող։

Բուրժուական տնտեսագետների այդ տեսությունները, իրենց փաստարկումներով հանդերձ, սնանկ են։ Այն իրողությունը, որ կապիտալիստական մասնավոր և պետական ձեռնարկություններում մշակվում և իրագործվում են պլանային միջոցառումներ, ամենևին դեռ չի նշանակում, թե այդ տնտեսություններում գործում է պլանաչափ համամասնական զարգացման օրենքը։ Այդ միջոցառումների անհրաժեշտությունը պայմանավորված է արտադրության հանրայնացման աստիճանով։ Ժամանակին Վ. Ի. Լենինը գրել է, որ այնտեղ, ուր կան տրեստներ, չի կարող արտադրության պլանավորում չլինել։ Այդ պլանավորումը, սակայն, կապիտալիզմի պայմաններում կատարվում է անարխիայի և մրցակցության տնտեսական օրենքի գործողության պայմաններում, իսկ պլանաչափ համամասնական զարգացման օրենքը գործում է միայն արտադրամիջոցների սոցիալիստական սեփականության հիման վրա։

Բուրժուական տնտեսագետները շուկայական հարաբերությունները ներկայացնում են որպես միայն կապիտալիզմին հատուկ կատեգորիաներ, դա նույն-



պես զուրկ է գիտական հիմքից։ Այդ կատեգորիաները եղել են մինչև կապիտալիզմը, պահպանվում են նաև նրանից հետո՝ սոցիալիստական հասարակարգում, և ամեն անգամ դրանք արտահայտում են տվյալ հասարակարգին բնորոշ սոցիալ-տնտեսական հարաբերությունները։ Ժամանակակից կապիտալիզմը սոցիալիզմի հետ նույնացնելով, որոշ բուրժուական տնտեսագետներ պնդում են, թե իբր գալիք հետինդուստրիալ հասարակարգում փոխվում է աշխատանքի բնույթը, այն ծանր բեռից վերածվում է ներքին անհրաժեշտության։

Ըստ նրանց, այնպես է ստացվում, թե կապիտալիստական ինդուստրիալ հասարակությունը կոմունիզմի առաջին փուլն է, իսկ նրա հետինդուստրիալ աստիճանը՝ երկրորդ։ Մնում է ավելացնել, որ այս դատողությունները վկայում են ժամանակակից բուրժուական տնտեսագիտության անսկզբունքայնության մասին, որը նրա ճգնաժամի բնորոշ արտահայտություններից է։

Անցյալում բուրժուական տնտեսագիտությունը համարվում էր անընդհատ զարգացման ու կատարելագործման հնարավորություններով օժտված ուսմունք, որի դասական նախորդների հետ միաժամանակ դրվատվում էին Սեյնն ու Մալթուսը, Մարշալն ու Բեմ-Բավերկը, որոնց աշխատությունները բնութագրվում էին որպես այդ գիտության զարգացման նորագույն աստիճան։ Իսկ Քեյնսի տեսությունը, իր տարբերակներով, ներկայացվեց իբրև «պլանային կապիտալիզմի» դարաշրջանի տեսական հիմն, որը հավակնում էր ժխտել մարքսիզմը։

Այժմ այս կարգի դատողությունները կարող են հանդիպել որպես բացառություն։ Այժմ բնորոշը բուրժուական տնտեսագիտության հեռանկարների նկատմամբ տխրող հոռետեսությունն է։ Բանն այն է, որ կապիտալիզմի հակասությունների խորացման արդի պայմաններում դրանց փոքրիշատե հավանական բացատրություններն անհնարին են դառնում, կամ ինչպես Ու. Կ. Միտչելն է խոստովանում՝ «աշխատության տպագրության պրոցեսը դեռևս չավարտված, այն արդեն հնանում է»։ Բուրժուական տնտեսագետները նման պայմաններում արդեն զինաթափվում են։ Հակաճգնաժամային տեսությունների մասին գրում են, որ դրանք հապճեպ և չարդարացված դատողություններ էին, որոնց պատճառն այն բնորոշ խոստովանությունն է, թե մենք ավելի շատ բան գիտենք «արևի պտույտի մասին տիեզերքում, քան արդյունաբերական ցիկլերի մասին»— ինչպես գրել է անգլիական լեյբորիստների գլխավոր օրգան «Մանչեստեր գարդիանը»։ Անգլիայի նախկին պրեմիեր մինիստր Ջ. Կալագենը, նկատի ունենալով գործազրկության բարձր մակարդակը, բազմանշանակ հայտարարեց, թե ինքը հավակնություն չունի ասելու, որ իրեն հայտնի է, թե այդ պրոբլեմն ինչպես պետք է լուծվի։

Եթե կապիտալիստական արտադրության ցիկլի ճգնաժամի փուլի բնույթը բուրժուական տնտեսագետներն անկարող են բացատրել, կամ չեն ցանկանում այդ անել, ապա վերելքի փուլի մասին նրանք արտահայտվում են միանգամայն որոշակիորեն։

Նրանք ամեն առիթով գրում են, որ հետպատերազմյան աննախադեպ վերելքի հիմնական պատճառը «հետաձգված» հսկայական պահանջարկն էր։ Հետևությունն ակնհայտ է՝ նոր վերելքի ուղին նրանք համարում են էկոնոմիկայի ռազմականացումը, սպառազինությունների մրցավազքը։ Բուրժուական քաղաքատնտեսության դարագլխի «մարգարեն» ուղղակի ազդարարեց, «Բուրգերի կառուցումը, երկրաշարժերը, նույնիսկ պատերազմները կարող են ծառայել հարստության աճմանը» (Дис. М. Кейнс, Общая теория занятости, процента и денег, М., 1948, стр. 124)։ Ամերիկյան տնտեսագետ Կ. Բոուլդինգն այդ միտքն ավելի բացահայտ ձևով արտահայտեց ամերիկյան տնտեսագետների 1977 թ. կոնֆերանսում. «Աշխարհն այժմ կանգնած է իր ստեղծած երկընտրանքի առջև՝ կամ ընդլայնել սպառումը պատերազմի միջոցով կամ կրճատել արտադրությունը ճգնաժամերի ու գործազրկության միջոցով»։

Այս պարագաներում միանգամայն օրինաչափ է, երբ բուրժուական տնտեսագետներն ընդունում են իրենց գիտության հնարավորությունների սպառման փաստը և նոր գիտություն ստեղծելու ուղիներ են որոնում։ Անգլիացի տնտեսագետ Թոմաս Բալոգը զեկուցումներից մեկում ասել է, որ արդի մոդայիկ

տնտեսագիտական ուղղությունների մեծ մասը կտրված է ռեալ իրականությունից, հետևաբար վնասակար ազդեցություն է ունենում տնտեսական քաղաքականության մշակման գործում։ Այս բնագավառում ստեղծված «դժվարությունները անհաղթահարելի են»— ասում էր նա։ Ժամանակակից տնտեսական կանխատեսումները հիմնվում են ինտուիցիայի վրա, որը «տնտեսական խորհրդատուների ամենամեծ արժանիքն է»։

Միևնույն մոտիվներով է գրված նաև արևմտագերմանական «Վիրտշաֆտսվոխե» ամսագրի 1978 թ. № 48-ում «Ուղիներ դեպի նոր գիտություն» վերնագրով խմբագրական հոդվածը։ «Տնտեսագետ գիտնականները և տնտեսական քաղաքականություն մշակողները սպառել են այդ գիտության հնարավորությունները։ Նրանք դադարել են ազգի տնտեսական դրությունը ճանաչելուց»։ «Տնտեսագետ-քաղաքագետների և տնտեսագետ-գիտնականների միտքն ամենուրեք սմքել է։ Նրանց դասագրքերի բանաձևերն անբովանդակ են, ինչպես և նրանց դատողությունները։ Դրանց մասին կարելի է մոռանալ և չհիշել»։

Այս դրույթները սոսկ առանձին հեղինակների կարծիքներ չեն, այլ մի ամբողջ ուղղության կոնցեպցիա։ Այսպես, «Հռոմեական ակումբի» հեղինակների աշխատությունները հասարակության հեռանկարների և նրա զարգացման առթիվ տոգորված են հոռետեսությամբ։ Եթե անգամ ընդունենք, որ միջուկային էներգիան կարող է լուծել ռեսուրսների պրոբլեմը,— գրում են նրանք,— ապա կենսամիջավայրի աղտոտման հետևանքով «վերահաս կրախը չի կարող հետաձգվել 2100 թ. սահմաններից այն կողմը» (տե՛ս «Вопросы экономики», № 4, 1977, стр. 137)։ Բուրժուական տնտեսագիտության ճգնաժամի պրոբլեմների քննարկումը, սակայն, կատարվում է նոր գիտության ուղիների որոնման նպատակով։ «Վիրտշաֆտսվոխե» ամսագրի վերոհիշյալ հոդվածում ասված է, որ, անշուշտ, ստեղծված «ճգնաժամից ելք գոյություն ունի։ Այն ապահովում է նոր տնտեսագիտությունը, որի կիզակետը մարդկանց վարքագծի ուսումնասիրությունն է»։ Բայց այս գիտությունն անունով է նոր, քանի որ իրականում այն բուրժուական քաղաքատնտեսության մեջ վաղուց ի վեր հայտնի հոգեբանական դպրոցի մի «նոր» տարբերակն է միայն, որովհետև դեռ Ջ. Քեյնսը «պարզեց» գերարտադրության տնտեսական ճգնաժամերի պատճառ հանդիսացող «հիմնական հոգեբանական օրենքի» բովանդակությունը։

Մարդկային վարքագիծը, անշուշտ, կարելի է բնութագրել տնտեսական փաստերի, երևույթների, իրադարձությունների ուսումնասիրության, վերլուծության միջոցով, այս դեպքում պարզ է, որ նման բնութագրումները գիտականորեն հիմնավորված կլինեն։ Այն կարող է բնութագրվել նաև այլ չարժառիթներով։ Ինչպես պարզվում է, «նոր» գիտության հեղինակները մարդկանց վարքագծի կանխատեսման համար կազմակերպում են հարցումներ, որպեսզի դրանցից բխեցնեն համապատասխան գնահատումները, կողմնորոշվեն զարգացման տենդենցների և ընդհանուր ուղղության բնութագրման հարցում։ Հայտնի է, որ կապիտալիստական արտադրահարաբերությունների ուսումնասիրության փոխարինումը հոգեբանական կատեգորիաների վերլուծմամբ բուրժուական տնտեսագիտության մեթոդաբանության գլխավոր արատներից է։

Բուրժուական քաղաքատնտեսության ճգնաժամը սոցիոլոգիայի, կապիտալիստական կրթական սիստեմի ճգնաժամի արտահայտություններից մեկն է, որն արտացոլում է կապիտալիզմի արտադրաուժերի ու արտադրահարաբերությունների խոր բախումները։ Հիշենք, որ գաղափարախոսության հիմունքներ մշակվում են հանրակրթական և առավել ևս մասնագիտական ուսումնական հաստատություններում, որտեղ ստեղծված իրադրությունը վաղուց անհանգստացնում է բուրժուական գիտնականներին։ Նրանք խոստովանում են, որ բուրժուական հասարակարգում կրթությունն անկարող է հետևել հասարակության զարգացման ընթացքին, որ հետպատերազմյան ժամանակաշրջանում հսկայական թռիչք կատարվեց հասարակական կյանքում, գիտության, տեխնիկայի, էկոնոմիկայի բնագավառում, որից, սակայն, կրթական սիստեմները ետ մնացին։ Առաջացած ճեղքվածքի հետևանքով սկսվում է կրթության ճգնաժամը, որն արտահայտվում է ամենատարբեր ձևերով։ Կրթության տեխնոլոգիան, օրինակ,



շատ չի հեռացել տնայնագործության մակարդակից,— գրում է Ֆ. Կումբսը,— այն ժամանակ, երբ նյութական արտադրության ճյուղերում տեխնոլոգիան և աշխատանքի արտադրողականությունը շատ առաջ են անցել։ Ըստ որում, հատկանշական է, որ բուրժուական երկրներում ունևոր խավերի երեխաների համար բարձրագույն կրթություն ստանալու հնարավորությունը մի քանի տասնյակ անգամ մեծ է, քան բանվորների և գյուղացիների համար։ Դրությունն ավելի է բարդանում նրանով, որ կապիտալի աշխարհում մասնագիտական կրթություն ստացողների գործազրկությունը մշտապես աճում է։

Հատկանշական է, որ բուրժուական շատ հեղինակներ զբաղվում են միայն կրթական սիստեմի ճգնաժամի արտահայտության բնութագրումներով, իսկ դրա վերացման միջոցների մասին չեն խոսում։ Նրանք ստիպված են խոստովանել, որ իրենց հիմնական խնդիրն է ախտորոշել, բայց ոչ բուժել։ Նույն Ֆ. Կումբսը գրում է, որ քննարկվող պրոբլեմների լուծումը հնարավոր կլինի, եթե նշանակալի չափերով կրճատվեն ռազմական ծախսերը և միջոցները վերաբաշխվեն դրանք խաղաղ նպատակներով օգտագործելու համար, որոնք, սակայն, եթե ելնենք գոյություն ունեցող ռեալ պայմաններից, հեռավոր ապագայի երազանքներ են միայն։ Իսկ երազանքը չի կարող ռեալ հիմք լինել կրթության բնագավառում պլանավորման և քաղաքականության մշակման համար։

Ասված է միանգամայն որոշակի, կապիտալիզմի պայմաններում սկսված կրթության ճգնաժամը հետզհետե խորանալու է. դա մի լուրջ «բախում է հեղափոխական տեխնիկա ստեղծող գիտության և այդ տեխնիկային տիրապետող մարդու հնարավորությունների միջև»։ Այս խորիմաստ եզրակացությունն անմիջականորեն արձագանքում է Մարքսի այն հռչակավոր դրույթին, որ կապիտալիստական արտադրահարաբերություններն արդեն դարձել են արտադրաուժերի զարգացման կապանք և արգելակում են դրանց հետագա առաջընթացը։

Կապիտալիստական արտադրության, ինչպես և գաղափարախոսության ճգնաժամի պատճառները պետք է որոնել բուրժուական հասարակարգին ներհատուկ սոցիալ-տնտեսական և քաղաքական հակասությունների մեջ։

---

# «ՄԱՐԴ-ՏԵԽՆԻԿԱ» ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Վ. Ա. ՄԻՐԶՈՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ սոցիալական հետևանքների հետագա ուսումնասիրության անհրաժեշտությունը հատկապես շեշտվեց ՍՄԿԿ XXVI համագումարում։ Այսօր տեսական և գործնական հույժ կարևորություն ունի գիտատեխնիկական հեղափոխության ըմբռնումը՝ որպես սոցիալական երևույթի, գիտության և տեխնիկայի հասումների գնահատումը մարդկության զարգացման հեռանկարների առումով։ Առանձնահատուկ ուշադրություն է պահանջում «մարդ-տեխնիկա» փոխհարաբերությունը, որը դարձել է բազմաթիվ գիտությունների հետազոտության առարկա։*

*Ստորև մենք կանդրադառնանք առավելապես այդ փոխհարաբերության փիլիսոփայական և սոցիոլոգիական պրոբլեմներին։ Այժմ ինչպիսի՞ն է մարդու հարաբերությունն իր ստեղծած տեխնիկական միջոցների զանգվածի նկատմամբ։ Որպիսի՞ն են մարդու ֆիզիկական, մտավոր և հոգևոր զարգացման հնարավորությունները։ Ինչպե՞ս են ազդում տեխնիկական միջոցները մարդու աշխարհայացքի, նրա արժույթների և բարոյական նորմերի, մարդկանց միջև եղած փոխհարաբերությունների վրա։*

*Իր պատմության նախասկզբից մարդն ստեղծել է գործիքների, տեխնիկական միջոցների մի ամբողջ զանգված, որի դերն այսօր դժվար է գերագնահատել հասարակական և անձնական կյանքի բոլոր բնագավառներում։ Այդ վերընթաց դերը տարբեր կերպ է արտացոլվում մարքսիստական և բուրժուական աշխարհայացքների շրջանակներում՝ դառնալով արդի գաղափարախոսական պայքարի թիրախներից մեկը։ Բուրժուական մտածելակերպի համար, լինի դա տեխնիկական միջոցների ամենազոր դերի գովերգում, տեխնոկրատական պաշտամունք, թե ընդհակառակը, հոռետեսական տեխնոֆոբիա և գիտատեխնիկական զարգացման ուղղակի մերժում, բնորոշ է տեխնիկայի ինքնուրույնության բացարձակացում, հասարակական հարաբերությունների, սոցիալ-տնտեսական գործոնների դերի անտեսում։ Գիտատեխնիկական հեղափոխության բարերար հնարավորությունները հռչակվում են իբրև կապիտալիզմի բարենորոգման միջոց, «ետինդուստրիալ հասարակության» տարբեր մոդելների հիմնավորման միջոց։ Մինչդեռ տեխնիկական զարգացման բացասական հետևանքները բացատրվում են բացառապես բուն տեխնիկական միջոցների դերի աճով, անհրաժեշտ չափով հաշվի չի առնվում գիտատեխնիկական հասումների կապիտալիստական օգտագործման սոցիալական ձևի նշանակությունն այդ հետևանքների գոյացման մեջ։ Միայն մարքսիստական մեթոդաբանությունն է գիտականորեն քննարկում «մարդ-տեխնիկա» փոխհարաբերությունը, նկատում տեխնիկական միջոցների դերի աճի բուն պատճառները, գնահատում տեխնիկական հնարավորությունների իրականացման սոցիալական գործոնների վճռորոշ նշանակությունը։*

*Տեխնիկան, նախ և առաջ, մարդու նպատակասլաց գործունեության արդյունքն է, այսինքն՝ սուբյեկտի օբյեկտիվացումն է, մարդու նպատակների,*



*ցանկությունների, պահանջմունքների առարկայացումը։ Տեխնիկական միջոցների աշխարհը մարդու ստեղծագործ ուժի, մարդկային բանականության հզորության առարկայական ապացույցն է, հասարակական զարգացման հիմքը, նյութական կրողը։ Ժամանակակից տեխնիկան բնութագրվում է ֆունկցիոնալ հնարավորությունների ընդլայնմամբ, որը հնարավոր է դարձնում տեխնիկական միջոցների թափանցումը հասարակական և անձնական կյանքի նորանոր բնագավառները։ Արդի մարդն իր աշխատանքային գործունեության ընթացքում, ժամանցի, հանգստի ոլորտում, այլ մարդկանց հետ հաղորդակցման ժամանակ, իմացության պրոցեսում և այլն, ավելի շատ է շփվում տեխնիկայի հետ, հետզհետե ավելի միջնորդավորում իր կենսագործունեությունը տեխնիկական միջոցներով։ Փիլիսոփայական-սոցիոլոգիական առումով ինչպե՞ս պետք է գնահատել հասարակական և անձնական կյանքի նման տեխնիկացումը, որը, ամենևին էլ դժվար չէ նկատել, ուժեղանում է գիտատեխնիկական հեղափոխության ընձեռած հնարավորությունների շնորհիվ։ Եթե մենք իրավացիորեն մերժում ենք արևմտյան տեխնոֆոբների դատողություններն այն մասին, թե իբր տեխնիկան ըմբոստանում է մարդու դեմ, փորձում է ստրկացնել նրան և այլն, ապա կարելի՞ է արդյոք միանշանակորեն դրական գնահատել տեխնիկական միջոցների ֆունկցիոնալ դերի աճը մարդկության զարգացման տեսակետից։ Այս հարցում, անշուշտ, կույր լավատեսությունը հոռետեսական գնահատականներից ամենևին նախընտրելի չէ։*

*Առհասարակ, տեխնիկական միջոցների պատմական զարգացման մեջ կարմիր թելի պես անցնում է մարդու և տեխնիկայի միջև ֆունկցիաների վերաբաշխումը։ Դա հատկապես ակնհայտ է, երբ համեմատում ենք տեխնիկական միջոցների զարգացման որակական փուլերը՝ ձեռքի գործիք, մեքենա, ավտոմատ։ Աճում է տեխնիկայի դերը «մարդ-տեխնիկա» համակարգի գործունեության մեջ։ Սա, իհարկե, ինչ-որ միստիկական մի երևույթ չէ. տեխնիկային մարդն ինքն է օժտում ավելի լայն ֆունկցիոնալ հնարավորություններով, որպեսզի ազատվի ծանր, միապաղաղ աշխատանքից, այն բարդելով տեխնիկական միջոցների ուսերին։ Եվ որքան զարգացած է տեխնիկան, այնքան ավելի է այն «արտամղում» մարդուն արտադրության բուն պրոցեսից, գործունեության նպատակի կոնկրետ իրականացումից։*

*Տեխնիկայի առաջընթացը, գրել է Վ. Ի. Լենինը, «հենց նրանով է արտահայտվում, որ մարդկային աշխատանքը մեքենաների աշխատանքի առջև ավելի ու ավելի հետին պլանն է նահանջում» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 1, էջ 91)։ Այս միտքը մեր պայմաններում հաստատվում է ներկա արտադրությունը բնութագրող կոմպլեքսային մեքենայացման, ավտոմատացման, ունիվերսալ ավտոմատների (ռոբոտների) կիրառման շնորհիվ։ Գիտատեխնիկական հեղափոխության հեռանկարները վկայում են, որ մարդն իրոք հետզհետե կձերբազերծվի ոչ ստեղծագործական, ծանր աշխատանքից։ Այդպիսով կիրականանա Կ. Մարքսի այն հանճարեղ կանխատեսումը, թե «կդադարի այնպիսի աշխատանքը, որի դեպքում մարդն ինքն է անում այն, ինչը նա կարող է ստիպել իրերին անելու իրեն՝ մարդու համար»* (К. Маркс, Ф. Энгельс. **Соч.**, т. 46, ч. I, стр. 280)*։ Նման հեռանկարը թելադրում է եզրակացնել գիտատեխնիկական հեղափոխության հումանիստական ընթացքի մասին և տեխնիկայի ֆունկցիոնալ դերի աճը գնահատել իբրև մարդու ֆիզիկական, մտավոր և հոգևոր զարգացման բարենպաստ գործոն։*

*Սակայն դժվար չէ համոզվել, որ հասարակության տեխնիկացումը հարուցում է նաև մի շարք բացասական երևույթներ։ Այժմ բժիշկներին անհանգստացնում է հիպոդինամիայի՝ շարժունակության պակասի հետ կապված սրտանոթային հիվանդությունների խիստ աճը։ Տեխնիկական կոմֆորտի այնպիսի միջոցը, ինչպիսին, օրինակ, վերելակն է, փոքրացնում է սրտի և մկանների անհրաժեշտ բեռնվածությունը, զրկում է օրգանիզմը մշտապես մարզման հնարավորությունից։ Զարմանալի չէ, որ այսօր մամուլը և գիտական գրականությունը լի են բազմաթիվ խորհուրդներով՝ «չվախենալ» աստիճաններից ու հարկերից, քիչ օգտվել տրանսպորտից, հնարավորին չափ շատ քայլել և այլն։*

*Մի ավելի արտառոց փաստ. զարգացող երկրներում միլիոնավոր մարդիկ*

տառապում են սովից, մինչդեռ արդյունաբերապես զարգացած երկրներում մարդիկ ավելի շատ մահանում են շատակերությունից, քան թերսնումից։ Տեխնիկական կոմֆորտը, ինչպես տեսնում ենք, ուղղակիորեն հանգեցնում է մարդու կենսաբանական դեգրադացիայի վտանգին։

Այս տագնապալի երևույթներն ավելի են սրվում գիտատեխնիկական հեղափոխության ծավալման պայմաններում, սպառնում են մարդու ո՛չ միայն ֆիզիկական, այլև մտավոր ու հոգևոր զարգացմանը։ Բանն այն է, որ ժամանակակից տեխնիկան մուտք է գործում մարդու մտավոր գործունեության ոլորտը, տեղի է ունենում տեխնիկական միջոցների «ինտելեկտուալացում»։ Այսպես, էլեկտրոնային հաշվիչ մեքենան՝ մեր դարի մեծագույն գիտատեխնիկական հաստումներից մեկը, կոչված է թեթևացնելու մարդու աշխատանքը, նրա փոխարեն և նրանից շատ ավելի արագ ու ճիշտ կատարելու մտավոր աշխատանքի բազմաթիվ տեսակներ, որոնք նախկինում մարդն ինքն էր ստիպված անում։ Սակայն պարզվում է, որ նման թեթևացումը ուղեկցվում է մարդու մտքում ամենապարզ գործողությունները կատարելու ունակության որոշակի կորստով։ Ամերիկյան հոգեբանները մոտ 20 տարի առաջ տագնապ բարձրացրին, հայտաբերելով, որ երբ ուսուցման ընթացքում սովորողները օգտվում են գրպանի հաշվիչ մեքենաներից, նրանք սովորում են խնդիր լուծել մեքենայի հետ համատեղ, ավելի շուտ՝ մեքենային այն վերահանձնարարելով, սակայն չեն սովորում ինքնուրույն մտածել, դատել։ Մարդու նման «ռոբոտացման» վտանգը թերևս ամենից լավ է արտահայտել ամերիկյան հայտնի հոգեբան և սոցիոլոգ Էրիխ Ֆրոմն իր Բանական հասարակությունը գրքում (1956 թ.), գրելով, թե XX դարում մենք ստեղծում ենք «մեքենաներ, որոնք գործում են մարդկանց պես և մարդիկ, որոնք գործում են մեքենաների պես»։

Իհարկե, չի կարելի մոռանալ այն, որ բուրժուական աշխարհում մարդու մեքենայացման, ռոբոտացման մասին գրվել է մինչև էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, ռոբոտների և այլ կիբեռնետիկական տեխնիկայի կիրառումը, այսինքն՝ մարդու ռոբոտացումը սոցիալապես պայմանավորված, այլ ոչ զուտ տեխնոլոգիական երևույթ է։ Կ. Մարքսը Կապիտալում հանգամանորեն ցույց է տալիս այն վճռական դերը, որ խաղում են կապիտալիստական արտադրահարաբերությունները մեքենայական արտադրության մեջ մարդու՝ ընդամենը «մեքենայի կցորդի» վերածման, նրա պասսիվացման մեջ։ Կապիտալի իշխանությունը կենդանի աշխատանքի վրա համապատասխանում է, իբրև «տեխնոլոգիական փաստ», մեքենայական բանվորի աշխատանքի ենթարկվածությունը անկենդան մեխանիզմի աշխատանքին։

Արդի բուրժուական հասարակությունը նույնպես նպաստում է մարդու ռոբոտացման, բթացման միտումներին։ Այսուհանդերձ, չպետք է անտեսել և տեխնիկայի հարաբերական ինքնուրույնությունը, հետևաբար բացասական երևույթների հնարավորությունը նաև սոցիալիզմի պայմաններում, մանավանդ երբ փաստերն արդեն այդ են վկայում։ Մեր կենտրոնական փիլիսոփայական ամսագրերից մեկի էջերում «մարդ-մեքենա» համակարգի պրոբլեմների շուրջ ծավալված բանավեճում նույնպես շեշտվեց, որ հաշվիչ տեխնիկայի զարգացման վտանգն այն չէ, «թե մեքենան կկարողանա մտածել մարդու պես կամ անգամ կգերազանցի նրան, այլ այն, որ մարդը, ավելի ու ավելի փոխհարաբերության մեջ գտնվելով ԷՀՄ-ի հետ, կսկսի մտածել մեքենայի պես» («Вопросы философии», 1979, № 4, стр. 95)։ Սոցիալիստական հասարակության առավելությունը կապիտալիստականի նկատմամբ այն է, որ գիտակցաբար ձգտում է հնարավորին չափ չեզոքացնել գիտատեխնիկական զարգացման բացասական հետևանքները, և, ընդհակառակը, առավելագույն չափով օգտագործել գիտության և տեխնիկայի ընձեռած հնարավորությունները հանուն մարդու ֆիզիկական, մտավոր և հոգևոր զարգացման։

«Մարդ-տեխնիկա» փոխհարաբերության մեջ կարելի է առանձնացնել պրոբլեմների երեք խումբ։ Նախ, տեխնիկայի «ինտելեկտուալացման» հնարավորությունների և հնարավոր սահմանափակումների հարցերը։ Ապա, ձեռք բերված տեխնիկական հնարավորությունների իրականացման իմաստի, այլ կերպ ասած, տեխնիկան ինտելեկտուալ և այլ կարողություններով օժտելու նպա-



տակահարմարության, և, վերջապես, ապագայում մարդու և ինտելեկտուալ տեխնիկայի փոխհարաբերության հարցերը։

Հարցերի առաջին խումբն առավելապես գիտատեխնիկական բնույթ ունի, թեև դրանց լուծումը անհնար է առանց ճիշտ մեթոդաբանական, փիլիսոփայական հիմնավորման։ Այս դեպքում, կարելի է համոզվել այն փաստարկներով, որ բերում են «արհեստական ինտելեկտի» դեմ և կողմ հանդես եկող գիտնականները։ Մի կողմ թողնելով այդ փաստարկները և դրանց մեթոդաբանական հիմնավորվածությունը հարկ է շեշտել հետևյալը։ Սկզբունքորեն հնարավոր չէ սահման, խոչընդոտ դնել մարդու ստեղծագործ մտքին, այն էլ գիտատեխնիկական առաջընթացի արագացման նման պայմաններում։ Տեսականորեն ոչինչ չի խանգարում մարդուն ստեղծել իր ներկայիս մտավոր կարողությունները գերազանցող արհեստական ինտելեկտ։ Արդեն այժմ էլեկտրոնային հաշվիչ մեքենաները գերազանցում են մարդկային ինտելեկտի մի շարք հնարավորությունները։ Կիբեռնետիկական տեխնիկայի բուռն զարգացումը վկայում է, որ մարդկային միտքը գտնվում է այն փուլում, երբ հնարավոր է դառնում տեխնիկան օժտել ո՛չ միայն որոշակի իմացությամբ ու հմտությամբ և կամ շրջապատը ճանաչելու ու կողմնորոշվելու կարողությամբ, այլև բուն ինքնուսուցման, ինքնուրույն կերպով նոր գիտելիքներ և հմտություն ձեռք բերելու, փոփոխված իրադրությունում հարմարվելու և արդյունավետ գործելու ընդունակությամբ։ Ինքնազարգացող մեքենաների հնարավորությունը հիմնավորված է կիբեռնետիկայի հիմնադիր Ն. Վիների, ինչպես նաև սովետական գիտնականներ Վ. Մ. Գլուշկովի, Ն. Մ. Ամոսովի, Ա. Ա. Դորոդնիցինի և այլոց աշխատություններում։

Արհեստական ինտելեկտի ստեղծման, բնական ինտելեկտի ստեղծագործական պրոցեսների մոդելավորման նպատակը, անշուշտ, մարդկանց նկատմամբ ռոբոտների գերիշխանության ձգտումը չէ։ Տեխնիկան մարդու գործունեության միջոց է և իր զարգացման ցանկացած փուլում կոչված է ձերբազատելու մարդուն այն ամենից, ինչը նա կարող է ստիպել իրերին անելու իր փոխարեն։ Իսկ բացասական երևույթների արմատները պետք է փնտրել ոչ թե տեխնիկական միջոցների ֆունկցիոնալ հնարավորությունների ընդլայնման բուն փաստի մեջ, այլ այն բանում, թե ինչպես է հասարակությունը որոշում՝ ինչը պետք է հանձնել տեխնիկային ու ինչը թողնել մարդուն։

Իրոք, սոցիալական գործոնների դերն արդեն չի կարելի անտեսել, երբ անդրադառնում ենք «մարդ-տեխնիկա» փոխհարաբերության պրոբլեմների երկրորդ խմբին՝ տեխնիկական հնարավորությունների կիրառման նպատակահարմարությանը։ Սրանք նախ և առաջ տնտեսական կարգի հարցեր են։ Օրինակ, երկրորդ և երրորդ սերնդի ռոբոտների (համապատասխանաբար՝ զգայություններով օժտված և ինտելեկտուալ ռոբոտներ) արդյունաբերական կիրառությունը ձգձգվում է հիմնականում տնտեսական նկատառումներով. դրանց արժեքը շատ ավելի բարձր է, քան առաջին սերնդի ռոբոտների՝ ծրագրավորվող ռոբոտների արժեքը։ Կարևոր են նաև «մարդ-ԷՀՄ» համակարգի հոգեբանական, էրգոնոմիկական, ինժեներական, կազմակերպչական հարցերը, մանավանդ որ հեռանկարում մարդկային աշխատանքը վերածվելու է կիբեռնետիկական տեխնիկայի հետ համատեղ գործունեության։ Մեծ հետաքրքրություն են ներկայացնում ԷՀՄ-ի հետ աշխատելիս մարդու մտավոր գործունեության կառուցվածքի ապագա փոփոխությունները։ Կարելի է խոսել «մարդ-մեքենա» համակարգի իդեալական գործունեության մասին, երբ մարդուն բաժին ընկած ֆունկցիաները՝ նպատակադրումը, ներշնչանքը, ֆանտազիան, ինտուիցիան և այլն, լավագույն ձևով կհամադրվեն ԷՀՄ-ի հնարավորությունների՝ հսկայածավալ հիշողության, հաշվումների արագության, ձևական-տրամաբանական ունակությունների հետ և այլն։ Սակայն նման իդեալն այնպես, ինչպես դեռ Ն. Վիներն է ձևակերպել՝ մարդուն՝ մարդկայինը, մեքենային՝ մեքենայականը, նման իդեալը, իհարկե, ինքնին ձեռք չի բերվում։ Ոչ թե տեխնիկան, այլ մարդն ինքն է որոշելու, թե ինչ արժե իր համար ստեղծագործ, ստեղծարար աշխատանքը։

Նման հարցադրումը մեզ մոտեցնում է վերոհիշյալ պրոբլեմների երրորդ խմբին՝ մարդու և ինտելեկտուալ տեխնիկայի փոխհարաբերության պրոբլեմներին։ Դրանք նույնպես ունեն կարևոր տեխնիկա-կազմակերպչական նշանակու-

թյուն, պահանջում են էրգոնոմիական լուծումներ և այլն, սակայն իրենց էությամբ փիլիսոփայական-սոցիոլոգիական կարգի են, քանի որ, նախ, իրենցից ներկայացնում են «սուբյեկտ-օբյեկտ» տիպի հարաբերություն և, երկրորդ, հնարավոր են դարձնում քննարկել մարդկային զարգացման հնարավորությունները կիբեռնետիկական տեխնիկայի կիրառման պայմաններում և դրա շնորհիվ։

Մարդը ստեղծել և ստեղծում է տեխնիկական միջոցների օբյեկտիվ աշխարհը, նրանով միջնորդավորելով իր նպատակների մարմնավորումը։ Առավել տեխնիկան օժտելով ինքնուրույնությամբ «մարդ-մեքենա» համակարգի շրջանակներում, ընդլայնելով տեխնիկայի ֆունկցիոնալ հնարավորությունները, մարդն ինքը հետզհետե հետին պլանն է «նահանջում»։ Մարդու նման «նահանջը», նրա «արտամղումը» արտադրության բուն պրոցեսից, արտադրական և այլ նպատակների իրագործումն առանց նրա անմիջական մասնակցության՝ ինքնին վկայում են տեխնիկական առաջընթացի հումանիստական դերի մասին։ Մարդը ձերբազերծվում է ոչ ստեղծագործական աշխատանքից հանուն բովանդակալից, ստեղծարար աշխատանքի, «նահանջում է» մեքենայական աշխատանքի առջև՝ հակվելով դեպի մտավոր ու հոգեկան զարգացման ավելի բարենպաստ ոլորտը։ Ուստի, տեխնիկական միջոցների ֆունկցիոնալ հնարավորությունների ընդլայնումը, հասարակական կյանքի հարաճուն տեխնիզացիան ինքնին չեն ենթադրում ոչ մի սպառնալիք, չեն նսեմացնում մարդու գերապատվությունը, չեն սահմանափակում մարդու ազատությունը։ Սակայն նման ըմբռնումն իր հերթին ենթադրում է, որ մարդն ինքը կարողանում է գնահատել իր տեխնիկական միջոցները, անգամ առավել զարգացած փուլում, որպես իր գործունեության գործիքներ։ Մինչդեռ, եթե տեխնիկական միջոցները վերածվեն կուռքերի, եթե գերիշխի «մեքենայապաշտների հոգեբանությունը» (Ն. Վիներ), կամ ձևափոխելով Կ. Մարքսի վերը բերված միտքը, եթե մարդն ստիպի իրերին իր փոխարեն անելու և այն, ինչ հենց ինքը՝ մարդը պիտի անի, իբրև մտածող, ստեղծագործ, ստեղծարար էակ, ապա նրան, թերևս, իսկապես սպառնա ռոբոտացման վտանգը, հիմք կառաջանա ամենամռայլ կանխատեսումների համար։

Կարևոր է հաշվի առնել հետևյալ հանգամանքը։ Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, ռոբոտատեխնիկայի և տեխնիկական այլ միջոցների զարգացումը բնութագրվում է այդ միջոցների կիրառման պարզեցմամբ։ Այսպես, եթե առաջին սերնդի էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, ինչպես վկայում են մասնագետները, պահանջում էին հատուկ պատրաստվածություն, հմտություն, ջանասիրություն, ապա ժամանակակից մեքենաները, շնորհիվ ինֆորմացիայի մուտքի և ելքի ավտոմատացման, ինֆորմացիան բնական լեզվով և անգամ խոսքով փոխանակելու հնարավորության և այլն, շատ ավելի են ընդլայնում մեքենայից օգտվելու ընդունակների թիվը։ Ապագայում կվերանան մարդու և ԷՀՄ-ի հաղորդակցման, դեռևս անխուսափելի այնպիսի օղակներ, ինչպիսիք են ծրագրավորողը և մեքենայական մաթեմատիկայի մասնագետը, որոնք ներկայումս անհրաժեշտ են խնդիրների ֆորմալիզացման ու լուծման մեթոդի մշակման համար։ Ի վերջո մարդու գործունեության տարբեր ոլորտներում ԷՀՄ-ից օգտվելը կդառնա նույնքան հեշտ ու հասարակ, ինչպես, ասենք, հեռախոսից կամ հեռուստացույցից օգտվելը։ Ահա կիբեռնետիկական տեխնիկայի զարգացման նման պարզությունը, մատչելիությունը, նրա՝ մարդու փոխարեն ցանկացած խնդիր լուծելու «պատրաստակամությունը», այդ խնդիրների իրոք ընդլայնման և «մեքենայապաշտների հոգեբանության» առկայության պայմաններում հիմք են տալիս խոսելու մարդու «մտավոր ծուլության», ստեղծագործական խթանների թուլացման վտանգի մասին և այլն։ Թերևս, մարդուն իսկապես կործանում է սպառնում, եթե նա հրաժարվի այն ամենից, ինչը խորապես մարդկային է, ստեղծագործ աշխատանքից, աշխատանքում և աշխատանքի շնորհիվ ինքնահաստատումից, ինքնազարգացումից։

Մարդու ռոբոտացման, պասսիվացման վտանգը առավելապես պայմանավորված է այն աշխարհհայացքով, որի շրջանակներում ընդունելի է տեխնիկական ամեն տեսակ հնարավորությունների իրագործումը, ցանկալի է մարդկային ամեն տեսակ աշխատանքից ձերբազատվելը։ Իսկ եթե մարդը կամենա,



տեխնիկան կարող է և անկասկած կփոխարինի մարդուն ցանկացած մարզում, որքան էլ գործունեության շատ տեսակներ այսօր թվում են «խորապես» մարդկային, սկզբունքորեն ֆորմալիզացման չենթարկվող։ Նման հեռանկարի դեպքում միամիտ են թվում այն դատողությունները, թե մարդը միշտ հնարավորություն կունենա հնազանդ պահելու անգամ ամենազարգացած ռոբոտներին, օրինակ, նրանցում ծրագրավորելով մարդուն հավիտենապես ենթարկվելու հրամայական պահանջ։ Ռոբոտների վերահսկումը կասկածելի է «մեքենայապաշտության» պայմաններում, կասկածելի է բուն իսկ վերահսկման ցանկությունը, անգամ եթե հայտնի լինի, թե ինչպես դա անել։

Մարդու ռոբոտացումը ոչ թե տեխնոլոգիական, այլ սոցիալապես պայմանավորված երևույթ է, ճիշտ այնպես, ինչպես որ մարդու հոգևոր զարգացման բարենպաստ գիտատեխնիկական հնարավորություններն իրականանում են վերջին հաշվով շնորհիվ հասարակության սոցիալական նպատակների։ «Մեքենայապաշտությունը» հետևանք է հասարակական իշխող արժույթների, իդեալների, նպատակների, հասարակական հարաբերությունների։ Այսպես, Չապլինի «Նոր ժամանակներ» ֆիլմում ցուցադրված է մարդուն կերակրելու մեքենա, և այդ տեխնիկական անհրաժեշտությունը բուրժուական հասարակության պայմաններում նույնիսկ ռեկլամվում է պահանջարկ ստեղծելու նպատակով։ Կարել Չապեկի ֆանտաստիկ վեպում, ուր ռոբոտները (ի դեպ, հենց Չապեկն է մտցրել «ռոբոտ» բառը չեխերեն «աշխատանք» բառից) հեղեղում են ամբողջ աշխարհը և ի վերջո ոչնչացնում մարդկանց, քանի որ վերջիններս իրենք սկսում են ծուլանալ և ամեն տեսակի աշխատանք բարդել ռոբոտների վրա։

«Մեքենայապաշտությունը» խորապես հատուկ է ներկայիս բուրժուական մտածելակերպին։ Պերճախոս է այն, որ, թեև մի կողմից ուժեղանում է քննադատությունը բուն տեխնիկայի և տեխնոկրատների հասցեին, մյուս կողմից, հետզհետե տարածվում են նեոհեդոնիստական տրամադրությունները, որոնք ապագան պատկերում են իբրև յուրօրինակ տեխնոլոգիզացված դրախտ, ուր ամեն տեսակ աշխատանք կատարում են «մեխանիկական» ստրուկները՝ ռոբոտները, իսկ մարդու կյանքը անցնում է զվարճությունների, վայելքների մեջ։

Չի կարելի, իհարկե, պնդել, թե Արևմուտքում չեն հասկանում մարդու ծուլացման հետ կապված վտանգը։ Ավելին, անգամ որոշ բուրժուական հումանիստներ փորձում են հատկապես աշխատանքի մեջ գտնել մարդու «փրկությունը»։ Սակայն, ընդհանուր առմամբ, բուրժուական հասարակության իշխող արժույթների նմանօրինակ էվոլյուցիան անխուսափելի է։

Բանն այն է, որ ժամանակին վերընթաց զարգացում ապրող բուրժուազիայի գաղափարախոսները, պայքարելով ֆեոդալական, արիստոկրատական անգործունյա ապրելակերպի դեմ, առաջ մղեցին գործունյա մարդու իդեալը, այսպես կոչված, «ինքն իրեն ստեղծած մարդու» իդեալը, այսինքն, մի մարդու իդեալ, որը հասարակական դիրքի է հասնում առավելապես իր սեփական ջանքերով, սեփական աշխատանքով։

Պատմականորեն «աշխատանքային էթիկան» դրական դեր կատարեց, նպաստելով մարդկանց նախաձեռնության, ակտիվության, աշխատասիրության դրսևորմանը, դրանով իսկ ապահովելով բուրժուական հասարակության տնտեսական ու սոցիալական բուռն զարգացումը։ Սակայն ներկա պայմաններում ակնհայտ է դարձել, որ կապիտալի աշխարհում աշխատանքն ընդամենը միջոց է, բիզնեսին ենթակա, որ «աշխատանքային էթիկան» սոսկ պրոպագանդիստական հեքիաթ է, որ բուրժուական հասարակությունն ամենևին նպատակ չունի աշխատող մարդու համար բուն աշխատանքի ոլորտում զարգացման հնարավորություններ ապահովելու։

Ընչաքաղցությունը, շահի մոլուցքը, տնտեսական դաժան հաշվարկը և բուրժուական ապրելակերպին ներհատուկ մյուս երևույթները, հենց արևմտյան սոցիոլոգների վկայությամբ, անխուսափելիորեն հարուցում են «աշխատանքի նկատմամբ ալերգիա», աշխատանքի դեմ ըմբոստացում, փախուստ պրակտիկ գործունեությունից դեպի ժամանցի, զվարճությունների ոլորտը։ Սպառողական հոգեբանության վերելքը, հեդոնիզմի քարոզը, այլասերման աստիճանի հաճույքներին տրվելը, «աշխատանքային էթիկայի» վերածումն անգործության

ջատագովման, «մեքենայապաշտությունը» վկայում են հասարակական զարգացման այն փակուղու մասին, որին հանգեցնում են բուրժուական ապրելակերպի իշխող արժույթները, հաստատում են բուրժուական հասարակարգի անկարողությունը՝ հօգուտ մարդու զարգացման կիրառել նույնիսկ բարենպաստ տեխնիկական հնարավորությունները։

Իհարկե, ինչպես արդեն նշվեց, սոցիալիստական հասարակության պայմաններում նույնպես տեխնիկայի զարգացման հարաբերական ինքնուրույնությունը, նրա ֆունկցիոնալ դերի աճը «մարդ-տեխնիկա» համակարգի շրջանակներում հղի են որոշակի բացասական երևույթների հնարավորությամբ, հարուցում են մի շարք սոցիալական, կազմակերպչական, դաստիարակչական խնդիրներ։ Սակայն այս խնդիրները սոցիալիզմի օրոք միանգամայն լուծելի են, շնորհիվ այն բանի, որ սոցիալիստական հասարակության վերաբերմունքը դեպի «մարդ-տեխնիկա» փոխհարաբերությունը, արմատապես հակադիր է կապիտալիստական մոտեցմանը։ Դրանում համոզում է մեր երկրի տեխնիկաարտադրական զարգացման ստրատեգիան անգամ այն պայմաններում, երբ տնտեսական հնարավորությունները չափազանց սուղ էին։ Օրինակ, 1920 թ. վերջին, ելույթ ունենալով Սովետների համառուսաստանյան VIII համագումարում, Վ. Ի. Լենինն ամեն կերպ շեշտում էր մեքենաների կիրառման անհրաժեշտությունը տորֆի հանույթի մեջ, հիմնավորելով դա առաջին հերթին աշխատող մարդկանց շահերից ելնելով. «...Մենք տորֆի անսահման հարստություն ունենք։ Բայց մենք չենք կարողանում այդ օգտագործել այն պատճառով, որովհետև մենք չենք կարող մարդկանց այդ տաժանակիր աշխատանքին ուղարկել... Հարկավոր է ամենուրեք ավելի շատ մեքենաներ մտցնել, որքան կարելի է անցնել ավելի լայն չափերով մեքենայական տեխնիկայի գործադրմանը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 645, 646)։

Հասուն սոցիալիզմի պայմաններում ակնառու է դառնում այն, որ տեխնիկատնտեսական զարգացումը ինքնանպատակ չէ, այլ կոչված է լուծելու ավելի բարձր կարգի՝ բուն սոցիալական զարգացման խնդիրները, տեխնիկայի առաջընթացը ենթարկված է մարդու և հասարակական հարաբերությունների զարգացմանը։ «Կուսակցությունը և պետությունը,— շեշտեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— շատ ջանքեր են գործադրել և գործադրում են, որ մարդու աշխատանքը դարձնեն ո՛չ միայն ավելի արտադրողական, այլև ավելի բովանդակալից, հետաքրքիր, ստեղծագործական»։ Հատկապես աշխատանքի հումանիզացման բնագավառում խոշոր տեխնիկատնտեսական և սոցիալական միջոցառումներ են նախատեսվում ՍՍՀՄ 1981—1985 թթ. և մինչև 1990 թ. ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում։

Սոցիալիզմի օրոք մարդիկ բոլոր հիմքերն ունեն լավատեսորեն գնահատելու «մարդ-տեխնիկա» փոխհարաբերության ապագան։ Իր սոցիալական կառուցվածքով, իշխող արժույթներով, ծրագրային նպատակներով սոցիալիստական հասարակությունը միտում է գիտատեխնիկական և տնտեսական առաջընթացը մարդու ներդաշնակ զարգացմանը ծառայեցնելուն։ Այսպիսով, գիտատեխնիկական հեղափոխության հետագա ծավալումն է առավել հիմնավորում սոցիալիզմի նպատակները, վստահություն ներշնչում ապագայի նկատմամբ, ոգևորում կոմունիզմի վեհ գաղափարների անկասելի հաղթանակի հավատով։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻԱ ՀԱՍԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՕԲՅԵԿՏ

**Գ. Հ. ԴԱՎԹՅԱՆ**

> ...պատմականորեն պայմանական է ամեն մի գաղափարախոսություն, բայց անպայմանական է այն, որ ամեն մի գիտական գաղափարախոսության համապատասխանում է օբյեկտիվ ճշմարտությունը, բացարձակ բնությունը։
>
> Վ. Ի. ԼԵՆԻՆ

Արդի ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ հեղափոխությունը արմատական փոփոխություններ է կատարում ո՛չ միայն սոցիալական իրականության, այլև մարդու աշխարհըմբռնման մեջ։ Կյանքի են կոչվում գիտության նոր բնագավառներ, որոնք, մի կողմից, արտահայտում են գիտությունների ինտեգրացման միտումը, մյուս կողմից՝ հանգեցնում աշխարհի գիտական պատկերի փոփոխմանը։ Այդ նոր բնագավառներից են կիբեռնետիկան և ինֆորմացիայի տեսությունը։ Առաջանալով գիտությունների փոխազդեցության սահմանագծում, դրանք կռահումից իրականության վերածեցին Ֆ. Էնգելսի այն միտքը, որ գիտելիքների շատ բնագավառներ կառաջանան մատերիայի շարժման ձևերի փոխազդեցության ոլորտում։ Կիբեռնետիկան և ինֆորմացիայի տեսությունն առաջադրեցին ինչպես նոր պրոբլեմներ, այնպես և հին պրոբլեմների նոր մեկնություններ։ Ավանդական շատ պատկերացումներ և գաղափարներ ո՛չ միայն հնացան, այլև հակասեցին ողջախոհությանը։ Այս իմաստով հիշարժան են ո՛չ միայն միկրոաշխարհի, այլև արհեստական բանականության, արտաերկրային քաղաքակրթության պրոբլեմները։ Նոր ձևով է դրվում իմացաբանության առաջնակարգ հարցերից մեկը՝ օբյեկտ-սուբյեկտ պրոբլեմը։ Արդի գիտությունն առաջադրում է իմացաբանական նոր խնդիրներ, որոնք դուրս են գալիս նեղ գիտական ոլորտից և ձեռք բերում սոցիալ-աշխարհայացքային կարևորություն։

Դեռևս դարասկզբին **Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ** աշխատության մեջ Վ. Ի. Լենինը կանխատեսում էր, որ մոտ ապագայում դասակարգային պայքարում մեծանալու է իմացաբանական հարցերի նշանակությունը։ Հիրավի, այսօր, ավելի քան երբևէ, իմացաբանությունը դասակարգային ընդհանուր պայքարում շեշտված գաղափարախոսական երանգ է ստանում։ Այս պայմաններում մեր գաղափարական հակառակորդները, օգտագործելով իմացության պրոցեսի հետ կապված մի շարք յուրահատուկ բարդություններ, ուղղակի կամ անուղղակի ձևով հերքում են դիալեկտիկական մատերիալիզմի իմացաբանության հիմքը՝ արտացոլման տեսությունը, հայտարարելով այն ոչ գիտական։ Ծնվում են նոր «տեսություններ», որոնք փորձում են վերանայել մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթները։ Նման իրավիճակում բնականաբար մարքսիստ փիլիսոփաների առջև խնդիր է դրվում՝ բացահայտել բուրժուական փիլիսոփայական ուսմունքների բուն իմաստը, վերհանել դրանց աշխարհայացքային և սոցիալական ֆունկցիան։ Այդ հարցերը առանձնապես կարևորեցին կուսակցության XXVI համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսա-

կան, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը, որոնցում մասնավորապես ասված է, թե պետք է ժամանակին արժանի հակահարված տալ իմպերիալիզմի գաղափարական դիվերսիաներին և նրա կամակատարներին, հետևողական պայքար մղել օպորտունիզմի և ռևիզիոնիզմի բոլոր տարատեսակությունների դեմ։

Մեր դարի գիտատեխնիկական մտքի հասումները ո՛չ միայն հաստատեցին արտացոլման մարքս-լենինյան տեսության ճշմարտացիությունը, այլև փաստական մեծ նյութ տվեցին նրա հարստացման և զարգացման համար։ Այնուհանդերձ, այս հանգամանքը բնավ չթուլացրեց բուրժուական գաղափարախոսության պայքարը գիտական կոմունիզմի, մարքս-լենինյան փիլիսոփայության դեմ։ Ժամանակակից բուրժուական փիլիսոփայության իմացաբանության բնորոշ առանձնահատկություններն են աճող սուբյեկտիվիզմը, ծայրահեղ էմպիրիզմը, կապը կրոնի հետ և այլն։ Հետևաբար արդի բուրժուական փիլիսոփայության քննադատության համար անհրաժեշտ է, որ մեզ ընդհանուր մեթոդաբանական ուղեցույց ծառայի հատկապես արտացոլման լենինյան տեսությունը։

Վ. Ի. Լենինը գտնում է, որ կոմունիստներն ու բոլոր հետևողական մատերիալիստները, պահպանելով դաշինքը բուրժուական պրոգրեսիվ մտքի հետ, միաժամանակ պետք է անշեղորեն մերկացնեն այն, երբ խոսքը վերաբերում է սկզբունքային գաղափարախոսական խնդիրներին։ Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատության մեջ նա խնդիր է դնում բացահայտել և վեր հանել այն արժույթավորը, ինչ առկա է բուրժուական փիլիսոփայության մեջ։ Այստեղ Լենինը նկատի ուներ հիմնականում Հեգելյան իդեալիստական փիլիսոփայության ռացիոնալ հատիկը՝ դիալեկտիկան։ Այս առումով փորձենք քննարկել ինֆորմացիա հասկացության մեկնաբանման բուրժուական փիլիսոփայական հայացքները։

Այժմ ինֆորմացիա հասկացության շուրջը մղվող գաղափարախոսական պայքարը հիմնականում առնչվում է ինֆորմացիայի էության, դրա բովանդակության, օբյեկտիվության մեթոդաբանական և իմացաբանական-տրամաբանական խնդիրների վերլուծության հետ։ Այս իրողությունը, անշուշտ, ունի իր պատճառները։ Թեև ինֆորմացիա հասկացությունն այժմ չափազանց լայնորեն տարածվել է գիտության ամենատարբեր բնագավառներում, սակայն, դրա էության ըմբռնման հետ կապված են լուրջ դժվարություններ։

Սովետական փիլիսոփայական գրականության մեջ տակավին չկա ինֆորմացիա հասկացության միանշանակ ըմբռնում։ Չնայած ինֆորմացիա հասկացությունը գիտական լայն շրջանառության մեջ մտավ ինֆորմացիայի տեսության ստեղծումով, այդուհանդերձ, դրանում չի տրված ինֆորմացիա հասկացության էության վերլուծությունը։ Այնտեղ քննարկվում է միայն ինֆորմացիայի քանակ հասկացությունը։ Որակապես տարասեռ ինֆորմացիաներն այս տեսության մեջ փոխակերպվում և ստանում են մի միասնական վերացական մաթեմատիկական ձև։ Վերջինիս հիմնադիր Շեննոնը մեկնաբանեց ինֆորմացիան որպես հավանականությունների ամբողջության էնտրոպիա և ստացավ մի բանաձև, որը նման է ջերմային պրոցեսների էնտրոպիան բնութագրող թերմոդինամիկական տեսության բանաձևին։ Այս կերպ ըմբռնված ինֆորմացիա հասկացությունը գիտության մեջ մտավ և լայնորեն տարածվեց մեր դարի 50—60-ական թվականներին։

Ներկայումս մարքսիստական գրականության մեջ ինֆորմացիայի բնույթի վերաբերյալ կան հիմնականում երկու տարբեր տեսակետներ, որոնց շրջանակներում զարգացվում են նաև բազմաղան մասնավոր տեսություններ։ Նախ, ինֆորմացիան բնութագրվում է որպես կառավարման համակարգերի հատկություն և ծագում է արտաքին աշխարհի հետ այդ համակարգերի ունեցած փոխազդեցության հետևանքով։ Այս մոտեցմամբ ինֆորմացիան դիտվում է որպես զուտ կիբեռնետիկական հասկացություն, որպես ինքնակառավարվող համակարգերի գործառնություն, այն չի տարածվում անկենդան բնական օբյեկտների վրա և կապվում է միայն արտացոլման բարձր ձևերի հետ։ Երկրորդ մոտեցմամբ, ինֆորմացիան համարվում է ողջ մատերիայի հատկություն։ Այսինքն,



այն դուրս է բերվում կիբեռնետիկայի և ինֆորմացիայի տեսության շրջանակներից և տարածվում է ընդհանրապես մատերիական բոլոր համակարգերի վրա, բացահայտ կամ սքողված ձևով ներկայանալով որպես մատերիայի ատրիբուտ։

Այս երկու մոտեցումների գոյությունը պայմանավորված է ինչպես ինֆորմացիա հասկացության փիլիսոփայական ըմբռնման և իմաստավորման, այնպես էլ կիբեռնետիկայի և ինֆորմացիայի տեսության զարգացման առանձնահատկություններով։ Այս մոտեցումներն ու տեսակետները վկայում են ինֆորմացիա հասկացության ներքին դիալեկտիկական բնույթի մասին։ Դա պայմանավորված է նաև ինֆորմացիա հասկացության անընդհատ և արագ զարգացումով, որն առաջ է բերում նաև տեսակետների և հայացքների փոփոխություն։ Մինչ կիբեռնետիկայի և ինֆորմացիայի տեսության ստեղծումը ինֆորմացիան դիտվում էր զուտ սոցիալական կյանքի շրջանակներում։ Հետագայում այն դուրս եկավ նաև կիբեռնետիկայի շրջանակներից և ընկալվեց որպես ընդհանուր գիտական հասկացություն։ Այժմ ինֆորմացիան ըմբռնվում է մի դեպքում որպես մասնավոր գիտական հասկացություն, մյուս դեպքում՝ ընդհանուր գիտական, մի այլ դեպքում այն բարձրացվում է մինչև փիլիսոփայական հասկացության աստիճանի։ Անշուշտ, այս ըմբռնումներն ու մոտեցումները, բացահայտելով ինֆորմացիա հասկացության հակասական բնույթը, դրանով իսկ արտացոլում են նրա զարգացման միտումները։ Ուրեմն, ինֆորմացիայի պրոբլեմը ո՛չ միայն ակնհայտ ու սպառված չէ, այլև ենթակա է ավելի խոր գիտական ուսումնասիրման, փիլիսոփայական իմաստավորման։ Դրա հետ կապված շատ ու շատ խնդիրներ ինքնին անհասկանալի ու մշուշապատ են այն աստիճան, որ ինքնաբերաբար կարող են տեղիք տալ բազմապիսի սխալ փիլիսոփայական մեկնաբանությունների։

Բուրժուական փիլիսոփայական գրականության մեջ ինֆորմացիա հասկացությունը իմաստավորվում է հիմնականում (1) տարերային մատերիալիզմի և (2) տարերային դիալեկտիկայի, (3) օբյեկտիվ և (4) սուբյեկտիվ իդեալիզմի, (5) ագնոստիցիզմի դիրքերից, որի համար ընդհանուր մեթոդաբանական հիմք է ծառայում իդեալիզմը։ Իդեալիզմն իր արմատներն ունի բուն իմացության պրոցեսում, պայմանավորված է մտածողության ակտիվությամբ, նրանով, որ ճանաչողության պրոցեսում միտքը վերացարկվում, կտրվում է առարկայական աշխարհից։ Լենինը, բացահայտելով իդեալիզմի իմացաբանական արմատները, նշել է, որ իդեալիզմը անհող չէ։ «Նա անպտուղ ծաղիկ է, անտարակույս, ...որը բուսնում է մարդկային... իմացության կենդանի ծառի վրա» (Երկեր, հ. 38, էջ 461)։ Լենինյան այս դրույթն ակնհայտորեն դրսևորվում է նաև ինֆորմացիայի վերաբերյալ իդեալիստական հայացքների արմատների բացահայտման գործում։ Ընդսմին այստեղ էական դեր է խաղում նաև արդի գիտական իմացության մեջ սուբյեկտիվ գործոնի մեծացման փաստը։

Ըստ դիալեկտիկական մատերիալիզմի, իմացության պրոցեսում սուբյեկտի ակտիվությունը հանգեցնում է վերջին հաշվով իմացության մեջ օբյեկտիվ իրականության ավելի կամ պակաս ճիշտ արտացոլմանը, ընդ որում, գիտական իմացության զարգացման ընթացքում ձեռք է բերվում իմացության ավելի ու ավելի մեծ ճշգրտություն։ Չէ՞ որ «Իմացությունը մտածողության հավերժական, անվերջ մոտեցումն է օբյեկտին։ Բնության արտացոլումը մարդու մտքի մեջ պետք է հասկանալ ո՛չ թե «մեռյալ», ո՛չ թե «աբստրակտ», ո՛չ թե առանց շարժման, ո՛չ թե առանց հակասությունների, այլ շարժման, հակասությունների առաջացման և դրանց լուծման հավերժական պրոցեսում» (նույն տեղը, էջ 237)։ Հենց սուբյեկտի (գիտակցության) այդ ակտիվ ստեղծագործական, վերափոխիչ դերը նկատի ունի Լենինը, երբ գրել է. «Մարդու գիտակցությունը ո՛չ միայն արտացոլում է օբյեկտիվ աշխարհը, այլև կերտում այն... Աշխարհը չի բավարարում մարդուն, և մարդն իր գործողությամբ որոշում է փոխել այն» (նույն տեղը, էջ 260, 261)։

Սակայն իմացության պրոցեսում սուբյեկտիվ տարրի առկայությունը ինքնին վերցրած ամենևին էլ չի նշանակում գիտելիքի օբյեկտիվության մերժում ընդհանրապես, եթե այդ տարրը չի բացարձակացվում, չի կտրվում օբյեկտիվ

աշխարհից։ Իդեալիզմը ծնվում է հենց որպես այդ սուբյեկտիվ տարրի բացարձակացման արդյունք։

Հարկ է նշել, որ գիտության հեղափոխական վերափոխումների փուլի հիմնական բարդություններից են նաև գիտության հասկացութային առնչվածները։ Չէ՛ որ գիտական իմացության պրոցեսում կատարվում է ոչ միայն հին հասկացությունների բովանդակության և ծավալի ճշգրտում, այլև ծնվում են նոր հասկացություններ։ Կատարվում է այսպես կոչված հասկացութային հեղաբեկում։ Այդ երևույթը Լենինը ցույց է տալիս դարագլուխ կազմող բնագիտական հայտնագործությունների օրինակով։ Եթե մախիստները մոլեկուլների և ատոմների ամբողջություն ասելով հասկանում էին ոչ թե նյութի ռեալ կառուցվածքը, այլ սուբյեկտիվ զգայությունների կոմպլեքսները, ապա Լենինը մատնանշում է, որ մոլեկուլներն ու ատոմները գոյություն ունեն օբյեկտիվորեն, որոնք արտացոլվում են զգայությունների մեջ և դրանց միջոցով, որ մատերիալիզմի և իդեալիզմի բաժանման գիծը բոլորովին էլ չի որոշվում նրանով, թե ինչպիսի ծագում ունի էլեկտրոնի զանգվածը՝ էլեկտրամագնիսական, թե ինչ-որ ուրիշ։ Իմացության պրոցեսում «չքանում են մատերիայի այնպիսի հատկությունները, որոնք առաջ թվում էին բացարձակ, անփոփոխ, նախասկզբնական (թափանցելիություն, իներցիա, մասսա և այլն) և որոնք այժմ դրսևորվում են որպես հարաբերական հատկություններ, որոնք հատուկ են մատերիայի միայն առանձին վիճակների» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 18, էջ 339)։ Ստեղծագործաբար կիրառելով մատերիալիստական մեթոդը, Լենինը զարգացնում է այդ միտքը, հանգելով մեթոդաբանական նշանակություն ունեցող հետևության. «էլեկտրոնը նույնպես անսպառելի է, ինչպես և ատոմը, բնությունն անվերջ է...» (նույն տեղը, էջ 342)։ Այս բանը վերաբերում է գիտության գրեթե բոլոր հիմնարար հասկացություններին։ Ինչպես գրել է Լենինը. «...մարդկային հասկացություններն անշարժ չեն, այլ հավերժ շարժվում են, անցնում են մեկը մյուսին, փոխարկվում մեկը մյուսին, առանց դրա նրանք չեն արտացոլում կենդանի կյանքը։ Հասկացությունների վերլուծումը, նրանց ուսումնասիրումը, «նրանցով գործառնելու արվեստը» (Ֆ. Էնգելս) միշտ պահանջում են հասկացությունների շարժման, նրանց կապի, նրանց փոխանցումների ուսումնասիրում» (Երկեր, հ. 38, էջ 317)։

Հասկացությունների դիալեկտիկական կապի պրոցեսը ուղղակիորեն արտացոլվում է իմացաբանության ոլորտում։ Եվ բնական է, որ ինֆորմացիա գաղափարի շուրջը ծնված իդեալիստական տեսությունները հիմնականում ուղղված են մարքսիստական իմացաբանության դեմ՝ որպես արտացոլման տեսության։ Նույնիսկ իրենց մարքսիստ համարող որոշ փիլիսոփաներ այս հարցում դրսևորեցին մարքսիզմին խորթ հայացքներ։ Հատկանշական է 1961 թվականին Հարավսլավական փիլիսոփայական ընկերության կազմակերպած բանավեճը, որտեղ մի շարք առարկություններ եղան արտացոլման տեսության դեմ, դրան վերագրելով մեխանիկական տարրեր։ Կարծիք արտահայտվեց, թե արտացոլման տեսությունը և արտացոլում հասկացությունը բնորոշ չեն դիալեկտիկական մատերիալիզմին, որ Դեմոկրիտից սկսած այն պաշտպանել են միայն նայիվ մատերիալիզմի տարատեսակները։ Իբր, այդ տեսությունը չի արտացոլում այն նորը, ինչ Կ. Մարքսը ներդրել է փիլիսոփայության մեջ։

Իրականում, ինչպես հայտնի է, արտացոլման տեսությունը մարքսիզմի դասականների աշխատություններում զտված է մեխանիցիզմից, նրանում հաղթահարված է հիլոզոիզմը։ Չէ՛ որ արտացոլման տեսության զարգացումը Լենինի մոտ կատարվում է հենց մետաֆիզիկայի, գռեհիկ մատերիալիզմի դեմ մղվող պայքարում։

Վերջին ժամանակներս բուրժուական գաղափարախոսները արտացոլման լենինյան տեսությունը քննադատում են ինֆորմացիա հասկացության վերլուծության մեկնակետից։ Ինֆորմացիա հասկացության դիալեկտիկամատերիալիստական մեկնաբանման դեմ հանդես են գալիս նաև նեոթոմիստները, էկզիստենցիալիստները, նեոպոզիտիվիստները։ Չնայած առկա տեսակետների բազմազանությանը, դրանք բոլորն էլ ժխտում են ինֆորմացիայի օբյեկտիվ բնույ-



թը, այն սահմանափակում զուտ հոգեկանի ոլորտով, ինֆորմացիայի տեսությունը հռչակում որպես նոր մեթոդաբանություն։

XX դարի կեսերին, երբ ստեղծվեցին կիբեռնետիկան և ինֆորմացիայի տեսությունը, պարզորոշ դարձավ մատերիայի ինֆորմացիոն բնույթը, այն, որ մատերիական համակարգերը ենթարկվում են ո՛չ միայն նյութի և էներգիայի, այլև ինֆորմացիայի փոխակերպման օրենքներին։

Այստեղ հարկ է քննադատորեն վերլուծել իդեալիստական փիլիսոփայության որոշ դրույթներ, որտեղ սուբյեկտիվիզմն ու էկլեկտիզմը լրացվում են հակագիտական և հակամարքսիստական հայացքներով։ Լ. Կերշները կիբեռնետիկայի միջազգային V կոնգրեսին (1967 թ.) ներկայացրած «Կիբեռնետիկա, մատերիա, դիալեկտիկա» զեկուցմամբ փորձում էր ցույց տալ կիբեռնետիկայի և դիալեկտիկական մատերիալիզմի, կիբեռնետիկայի և սովետական փիլիսոփայական մտքի հակադրությունը։ Ինֆորմացիա հասկացությունը հակադրելով դիալեկտիկամատերիալիստական հիմնարար գաղափարներին՝ Կերշները կարծում է, թե այդ գաղափարների լույսի ներքո ինֆորմացիա հասկացությունը չափազանց դժվար է յուրացվում, որ ինֆորմացիան գրանցված չէ աշխարհի մատերիալիստական պատկերի մեջ և այլն։ Ինֆորմացիան մեկնաբանելով վիներյան ոգով («ոչ մատերիա է և ոչ էլ էներգիա»), նա հանգում է այն բանին, որ ինֆորմացիան շարժվում է, չլինելով ո՛չ մատերիա, և ո՛չ էլ գիտակցություն։ Այստեղ դժվար չէ նկատել Կերշների դատողությունների շեշտված հակագիտական և իդեալիստական բնույթը։

Կիբեռնետիկա, ինֆորմացիա, արտացոլում գրքի վերջին գլխում, որը նվիրված է ինֆորմացիայի տեսության դիալեկտիկամատերիալիստական մեկնության քննադատությանը, արդի բուրժուական փիլիսոփայության ներկայացուցիչներից Կիրշենմանը փորձում է ցույց տալ, որ ինֆորմացիայի տեսության հասկացությունների մարքսիստական մեկնաբանությունների դեպքում ծագում են անհաղթահարելի բարդություններ։ Նա հանգում է այն եզրակացության, որ այդպիսի մեկնությունն անհիմն է։ Ինչ վերաբերում է արտացոլման տեսությանը, ապա ըստ նրա, այն դիալեկտիկամատերիալիստական ուսմունքում գոյություն չունի որպես ամբողջական սիստեմ։ Այդպիսի հետևության համար նախադրյալ է ծառայել Կիրշենմանի այն պնդումը, թե իբր մարքսիզմ-լենինիզմի դասականներն իրենց հետևորդներին չեն թողել ամբողջական և անհակասական ուսմունք։ Ընդսմին նա չարաշահում է ո՛չ միայն ինֆորմացիա հասկացության ըմբռնման հարցում եղած օբյեկտիվ բարդությունները, այլև սովետական փիլիսոփաների հայացքների միջև եղած տարբերությունները ներկայացնում է որպես դիալեկտիկական մատերիալիզմի «իմմանենտ բարդությունների» արտահայտություն։ Մտածողության մեջ նման եղանակի կիրառումը միանգամայն անհիմն է։

Գաղտնիք չէ, որ գիտական հասկացությունների ծագումն ու ձևավորումը մշտապես ընթացել ու ընթանում են գիտական վեճերի, տարակարծությունների ոլորտում, և այստեղ բացառություն չեն կարող լինել նաև սովետական հետազոտողները, որոնք ինչպես նշվեց, ելնում են արտացոլման լենինյան տեսության հիմնական դրույթների միասնական ըմբռնումից։ Այնինչ նրանց տարակարծություններն ընդգրկում են այն հարցերը, որոնք արտացոլում հասկացության ըմբռնումն առնչում են գիտության նորագույն հասումների հետ։ Այստեղ առաջին պլան են մղվում հատկապես կիբեռնետիկան և ինֆորմացիայի տեսությունը՝ որպես բնագիտական հայտնագործությունների տեսական ընդհանրացումներ։ Նման պարագայում, ինչպես ասել է Ֆ. Էնգելսը. «Մատերիալիզմն անխուսափելիորեն պետք է փոխի իր ձևը դարագլուխ կազմող ամեն մի հայտնագործման հետ՝ մինչև անգամ բնագիտապատմական բնագավառում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 3, «Հայաստան» հրատ., 1978 թ., էջ 460)։ Անհիմն պետք է համարել Կիրշենմանի այն պնդումը, թե սովետական փիլիսոփայական գրականության մեջ կիբեռնետիկայի և ինֆորմացիայի տեսության հարցերի շուրջ եղած բանավեճը ոչինչ կամ շատ քիչ բան է տալիս հիմնական պրոբլեմներին։ Կիրշենմանի սուբյեկտիվիստական մոտեցումն ավելի

ցայտուն է դրսևորվում, երբ նա առանց լուրջ փաստարկների ենթադրում է, որ արտացոլում հասկացությունը միանգամայն ավելորդ է անօրգանական պրոցեսների նկարագրման համար։

Ավելին, Կիրշենմանը պահանջում է ինֆորմացիա հասկացությունը վերլուծել դիալեկտիկական մատերիալիզմի կատեգորիաների համակարգից դուրս, որն ըստ էության նշանակում է այն մեկնաբանել իդեալիստական փիլիսոփայության կատեգորիալ ապարատի շրջանակներում։ Կիրշենմանը սովետական հեղինակների մոտ գնահատելի է համարում այն, երբ նրանք իբր թե հեռանում են մարքսիզմ-լենինիզմից և անցնում «ռեալիզմի», պոզիտիվիզմի դիրքերը։

Արևմտագերմանական կիբեռնետիկ Կ. Շտեյնբուխի կարծիքով, իբր, գիտակցության երևույթի համար պիտանի չեն ո՛չ մատերիական, ո՛չ էլ էներգետիկական հասկացությունները, այն որոշվում է ինֆորմացիա կատեգորիայով (տե՛ս К. Штейнбух. Автомат и человек. М., 1967 г.)։

Իդեալիզմի տարբեր հոսանքներ և դպրոցներ յուրովի են մեկնաբանում ինֆորմացիան։ Նեոպոզիտիվիստները փորձում են ապացուցել, թե ինֆորմացիան մատերիայի հետ կապված չէ, իսկ ինֆորմացիայի տեսությունը գիտության ընդհանուր մեթոդաբանությունն է։ Նեոթոմիստները ինֆորմացիային վերագրում են աստվածային բնույթ, իսկ կեցությանը՝ կիբեռնետիկական։ Ըստ էկզիստենցիալիզմի, ինֆորմացիայի տեսությունը ոչ թե հակասում, այլ համահնչուն է «գոյության փիլիսոփայությանը», երբ ինֆորմացիա հասկացությունն իր իսկական տեղը կարող է գտնել միայն արդի էկզիստենցիալիզմի փիլիսոփայության մեջ, իսկ բուն ինֆորմացիոն պրոցեսների հետազոտությունները ոչ այլ ինչ են, քան էկզիստենցիալիզմի ծրագրի իրականացում (տե՛ս А. Д. Урсул. Информация (методологические аспекты). М., 1971 г.)։

Այս իդեալիստական տեսությունների նյութ են ծառայում նաև կիբեռնետիկայի հիմնադիր Ն. Վիների որոշ հոռետեսական մտքեր, ըստ որի, ժամանակի ընթացքում աշխարհում անկարգությունն ավելանում է, իսկ կարգավորվածությունը պակասում։ Սա իրականում տիեզերքի ջերմային մահվան ըմբռնումն է, շարադրված կիբեռնետիկական լեզվով, որից սկիզբ է առնում, այսպես կոչված, աշխարհի «ինֆորմացիոն» կործանման կոնցեպցիան։

Այս գաղափարական պայքարին դիմակայելու և իդեալիզմը հաղթահարելու համար սկզբունքային նշանակություն ունեն լենինյան դրույթներն այն մասին, որ «առանց լուրջ փիլիսոփայական հիմնավորման ոչ մի բնական գիտություն, ոչ մի մատերիալիզմ բուրժուական գաղափարների գրոհի և բուրժուական աշխարհայեցողության վերականգնման դեմ մղվող պայքարում դիմանալ չի կարող» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 274)։ Հարկ է նշել, որ ինֆորմացիա հասկացության շուրջ եղած գաղափարական պայքարն ունի նաև սոցիալական հիմք և հակակոմունիստական միտում։ Այս հանգամանքը ևս խիստ հրատապ է դարձնում ինֆորմացիայի տեսության և կիբեռնետիկայի դիալեկտիկամատերիալիստական իմաստավորումը։ Այս առումով չափազանց կարևոր է նաև ինֆորմացիա հասկացության ըմբռնման և փիլիսոփայության հիմնական հարցի փոխհարաբերության բացահայտումը։

Իդեալիզմը, որպես կանոն, հենվում է ինֆորմացիայի նեղ, սահմանափակ պատկերացման վրա, որը հատուկ էր դրա մինչկիբեռնետիկական ըմբռնմանը։ Այն, ինֆորմացիան աղերսելով միայն գիտակցության հետ, անտեսում էր դրա օբյեկտիվ մատերիական հիմքերը, իսկ վերլուծությունը մեկուսացնում փիլիսոփայության հիմնական հարցից։ Այն կարծեցյալ օբյեկտիվիզմը, որը հատուկ է բուրժուական փիլիսոփայությանը, Կիրշենմանի մոտ հանգեցնում է այն բանին, որ ինֆորմացիայի տեսության հասկացությունները մեկնաբանվում են իդեալիստորեն, նեոպոզիտիվիստական դիրքից։

Անկախ նրանից, ընդունում են թե ոչ, ինֆորմացիայի բնույթի վերաբերյալ բուրժուական գրեթե բոլոր կոնցեպցիաների հիմքում ընկած է փիլիսոփայության հիմնական հարցի իդեալիստական լուծումը։ Հենց դրանով էլ ամբողջականանում ու միավորվում են իդեալիստական բոլոր ուղղությունները։ Այսպես, որոշ մտածողներ ինֆորմացիան մեկնաբանում են՝ ելնելով իդեաների մասին



Պլատոնի ուսմունքից, կամ դիմելով ձևերի մասին արիստոտելյան-թոմիստական ուսմունքին։ Այս դեպքում ինֆորմացիան համարվում է որպես հավերժ և անփոփոխ հոգևոր սուբստանց, ի տարբերություն նյութական առարկաների, որոնք անցողիկ են։

Իդեալիստական ուղղության այլ ներկայացուցիչներ, ինֆորմացիան համարելով միայն մարդկային գիտակցության, հաղորդակցման հատկություն, ժխտում են դրա օբյեկտիվությունը, ինֆորմացիան մեկնաբանելով որպես սուբյեկտիվ կամ ինտերսուբյեկտիվ երևույթ։ Վերջինս հանգեցնում է այն բանին, որ, ըստ այդ տեսության, աշխարհում օբյեկտիվ օրինաչափություններ գոյություն չունեն, դրանք սուբյեկտիվ, ածանցյալ էություններն են։

Հիշատակված իդեալիստական համակարգերում տարածված է նաև ինֆորմացիայի ըմբռնումը որպես ինչ-որ «երրորդ» բաղադրամաս՝ մատերիայի և գիտակցության կողքին։ Այս դեպքում գործը ներկայացվում է այնպես, որ ինֆորմացիայի տեսությունն իբր թե հաղթահարում է մատերիալիզմի և իդեալիզմի միակողմանիությունները, «ոչնչացնում» է փիլիսոփայության հիմնական հարցը։

Նշված բոլոր ըմբռնումների քննադատական վերլուծությունը վկայում է, որ դրանք, իբրև կանոն, ժխտում են ինֆորմացիայի կապը մատերիայի հետ և ինֆորմացիայի վերլուծությունը հարատևում է մատերիայի հետ ունեցած կապից դուրս՝ և՛ ծագումնաբանական, և՛ իմացաբանական առումով։

Նման մեկնություններն անկարող են զերծ լինել նաև ագնոստիկական երանգներից, քանի որ ինֆորմացիան որպես պլատոնյան «էյդոս» կամ արիստոտելյան «ձև» համարելն ինքնին հանգեցնում է դրա անճանաչելիության ընդունմանը։

Ինֆորմացիայի տեսության փիլիսոփայական հարցերի գիտական լուծումը հնարավոր է միայն մարքսիստական փիլիսոփայության դիրքերից, ներառելով ինֆորմացիայի տեսության և կիբեռնետիկայի փաստական նվաճումները։ Այս խնդրում գիտական փիլիսոփայական հիմք են ծառայում արտացոլման լենինյան տեսությունը և «արտացոլում» հասկացության մատերիալիստական ըմբռնումը։ Ինֆորմացիան արտացոլման հետ կապելը ինքնին ենթադրում է փիլիսոփայության հիմնական հարցի մատերիալիստական լուծում, ինֆորմացիայի մատերիականության ընդունում, քանի որ արտացոլումը ենթադրում է արտացոլվողի օբյեկտիվ գոյությունը։ Այսպիսով, ինֆորմացիան մեկնաբանվում է որպես արտացոլված բազմազանություն, որպես արտացոլման կողմ, նրա բովանդակություն և այլն, դրանով իսկ ընդունելով նրա օբյեկտիվ բնույթը։

Արդի պայմաններում մատերիալիզմի և իդեալիզմի պայքարում արտացոլման և ինֆորմացիայի կապի ընդունումը, անկախ այդ կապի առանձնահատկություններից, ունի կարևոր մեթոդաբանական նշանակություն։ Դա ինքնին հանգեցնում է այն տեսակետին, որ ինֆորմացիան մատերիայի հատկությունն է, որը գոյություն ունի օբյեկտիվորեն։ Մատերիական աշխարհն իր կապերով, հատկություններով և հարաբերություններով անսպառ է, ուստի անսպառ է նաև ինքը՝ ինֆորմացիան։ Այդ են վկայում ինֆորմացիայի տեսության և մեթոդների անընդհատ զարգացումը, դրանց նորանոր որակական և քանակական ասպեկտների բացահայտումը։

Հետևաբար, կարելի է եզրակացնել, որ ինչպես գիտության ամեն մի հիմնարար հասկացության, այնպես էլ ինֆորմացիայի իմացությունն առնչվում է որոշ օբյեկտիվ և սուբյեկտիվ բարդությունների հետ, որոնք պայմաններ են ստեղծում հակագիտական, իդեալիստական մեկնությունների համար։ Ահա թե ինչու ինֆորմացիա հասկացությունը դարձել է գաղափարական պայքարի օբյեկտ, պայքար, որը գիտության ամեն մի արմատական հայտնագործության հետ մեկտեղ ընդունում է նորանոր ձևեր։

Այսպիսով, բուրժուական աշխարհայեցողությանը դիմագրավելու համար պահանջվում է ո՛չ միայն հետևողական դիալեկտիկամատերիալիստական դիրքավորում, այլև ժամանակակից գիտության հիմնարար գաղափարների ու սկզբունքների խոր գիտական վերլուծություն։

---

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Վ. Բ. ԱՂԱՅԱՆ**
ՀԿԿ Երևանի բաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

*ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության կազմակերպման նպատակով Երևան քաղաքի կուսկազմակերպության ծավալած գործունեությունը գնահատելով ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջների համեմատ՝ կարելի է ասել, որ այդ բնագավառում ձեռք են բերվել զգալի հաջողություններ։ ՍՄԿԿ XXV համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում քանակական և որակական զգալի տեղաշարժեր են կատարվել ինչպես կուսակցական ուսուցման, այնպես էլ տնտեսագիտական կրթության սիստեմում։ Նկատելիորեն ընդլայնվել է ուսուցման ոլորտը։ Քաղկոմը, շրջկոմները և սկզբնական շատ կազմակերպություններ ընթացիկ ուսումնական տարում առավել մեծ ջանքեր գործադրեցին ավելի շատ կոմունիստների և անկուսակցականների կուսակցական ուսուցման մեջ ներգրավելու և պարապմունքների գաղափարական-քաղաքական մակարդակը բարձրացնելու համար։ Քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության ճյուղավորված ցանցում ընդգրկվածների թիվը, նախորդ ուսումնական տարվա համեմատությամբ, աճել է 20 հազար մարդով։ Դա, իհարկե, կարևոր երևույթ է։ Սակայն, ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում, առավել կարևոր է, որ, չհրապուրվելով սեմինարների ունկնդիրների թվի չափազանց շատ ընդլայնումով, գործը վճռականորեն շրջվի դեպի ուսուցման, առաջին հերթին կոմունիստների ուսուցման, որակի բարելավումը, որովհետև «Կուսակցական լուսավորության գլխավոր հարցը նրա արդյունավետությունն է»։*

*Քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգի 1980—81 ուսումնական տարին ունի իր առանձնահատկությունը։ Այն սկսվեց ՍՄԿԿ XXVI համագումարի ակտիվ նախապատրաստության պայմաններում։ Դա, իրոք, որոշիչ ներգործություն ունեցավ ուսման բովանդակության խորացման վրա, նպաստեց կյանքի հետ նրա կապի հետագա ամրապնդմանը, ունկնդիրների գաղափարական համոզվածության խորացմանը։ Ուսման արդյունավետությունը բարձրացնելու նպատակով մայրաքաղաքի կուսկազմակերպությունները պատշաճ կերպով են զբաղվում Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների, ՍՄԿԿ պատմության, կուսակցական փաստաթղթերի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի, կուսակցության մյուս ղեկավարների աշխատությունների խոր և ստեղծագործական ուսումնասիրության կազմակերպման հարցերով։ Գիտական կոմունիզմի գաղափարներին տիրապետելը օգնում է կոմունիստներին, աշխատավորներին՝ խոր համոզ-*



*վածությամբ կենսագործելու կուսակցության քաղաքականությունը, ստացած գիտելիքները ծառայեցնելու տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծմանը, կոմունիստական շինարարության ծրագրի իրականացմանը։*

*Երկու տարի առաջ քաղկոմի բյուրոն քննարկեց կոլեկտիվի անդամների գաղափարաքաղաքական դաստիարակությանը Չերեպովեցի մետալուրգիական գործարանի ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողների մասնակցության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման ասպարեզում «Էլեկտրոն» արտադրամիավորման կուսկոմիտեի կատարած աշխատանքի վերաբերյալ հարցը և բացահայտեց մի շարք լուրջ թերություններ։ Բյուրոն հատկապես նշեց, որ կուսկոմիտեն դեռևս չի ապահովում տնտեսական ղեկավար աշխատողների ակտիվ մասնակցությունը կոլեկտիվի անդամների քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության կազմակերպմանը, որի պատճառով քաղդպրոցների ու սեմինարների պարապմունքները շատ հաճախ անցնում են գաղափարատեսական ցածր մակարդակով, ունկնդիրների պասսիվության և մեծ մասի բացակայության պայմաններում։*

*Բոլորովին վերջերս կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ «Էլեկտրոն» միավորման կուսկոմիտեն, լուրջ հետևություններ անելով քաղկոմի բյուրոյի որոշումից, ոչ միայն վերացրել է տեղ գտած թերությունները, այլև դրական աշխատանքի որոշակի փորձ է կուտակել կոլեկտիվի անդամների մարքս-լենինյան կրթության կազմակերպման գործում։ Կուսկոմիտեն, կատարելով քաղկոմի այն պահանջը, որ քաղդպրոցների ու սեմինարների արդյունավետությունը պայմանավորված է պրոպագանդիստական կադրերի տեսական ու մեթոդական պատրաստվածության բարձր մակարդակով, լուրջ ուշադրություն է նվիրել նրանց ընտրության ու տեղաբաշխման հարցերին։ Այժմ նրանց ավելի քան 80 տոկոսը տնտեսական ղեկավարներ են և ունեն պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ։ Կուսկոմիտեն հետևողականորեն զբաղվում է պրոպագանդիստական կադրերի ուսուցմամբ և որակավորման բարձրացմամբ։ Նրանց համար պարբերաբար կազմակերպում է սեմինար-պարապմունքներ, մեթոդական զեկուցումներ, փորձի փոխանակումներ։ Ձեռնարկության քաղլուսկաբինետում ձևավորվել են տարբեր թեմաներին վերաբերող վահանակներ, անկյուններ, թեմատիկ սեղաններ։ Թեմատիկ սեղանների յուրաքանչյուր դարակ հատկացված է մեկ պրոպագանդիստի, որտեղ նախապես դրվում են ամեն մի պարապմունքին անհրաժեշտ գրականությունն ու նյութերը։ Կուսկոմիտեն կարևոր տեղ է հատկացնում նաև լավագույն պրոպագանդիստների նյութական և բարոյական խրախուսմանը։ Այդ առումով ուշագրավ է գաղափարախոսական աշխատանքի առաջավորների պատվո գիրքը, որտեղ փակցվում են նրանց լուսանկարները, ցուցադրվում ուսանելի փորձի մասին պատմող նյութեր։*

*Քաղաքական կրթության արդյունավետության բարձրացման գործում մեծ դեր է խաղում նաև դրա ճիշտ կազմակերպումը։ Միավորման կուսկոմիտեն անչափ կարևորում է քաղաքական կրթության համակարգի ճիշտ կոմպլեկտավորումը, պահանջում սկզբնական բոլոր կուսկազմակերպություններից՝ հաշվի առնել ունկնդիրների հետաքրքրասիրությունների շրջանակը, հանրակրթական և քաղաքական գիտելիքների մակարդակը։ Դրականն այն է, որ այստեղ կոմպլեկտավորմանը մասնակցում են նաև պրոպագանդիստները։ Դա օգնում է նրանց՝ նախօրոք ճանաչելու ունկնդիրներին, ծանոթանալու վերջիններիս նախասիրություններին ու ցանկություններին, որոշելու իրենց անելիքները։ Կուսկոմիտեի գործադրած ջանքերը տվել են ցանկալի արդյունք։ Այսօր բազմաթիվ են այն պրոպագանդիստները, որոնք պարապմունքներն անցկացնում են տեսական, գաղափարաքաղաքական բարձր մակարդակով, ունկնդիրների ակտիվության պայմաններում։ Այդպիսին է, օրինակ, № 1 արտադրամասի մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Գ. Հովհաննիսյանը։ Նա ամենայն պատասխանատվությամբ է վերաբերվում իրեն հանձնարարված գործին, լսարան է մտնում համակողմանի նախապատրաստված, ուսումնասիրվող նյութը սերտորեն շաղկապում կոլեկտիվի, յուրաքանչյուր ունկնդրի առջև ծառացած կոնկրետ խնդիրների հետ։*

Կուսակցությունը քաղաքական դաստիարակության հաջողության չափանիշ համարում է կոնկրետ գործերը։ Եթե այդ չափանիշով գնահատենք պրոպագանդիստ Գ. Հովհաննիսյանի գործունեությունը, ապա կարելի է ասել, որ նա հասել է լավ արդյունքի։ Նրա ղեկավարած դպրոցի 17 ունկնդիրներից հինգը տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարել են չորս տարում, 12-ը արտադրության մեջ բարձր ցուցանիշների հասնելու համար արժանացել են կառավարական պարգևների։

Քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության կատարելագործման, ուսումնական պրոցեսի գաղափարատեսական մակարդակի բարձրացման գործում շոշափելի հաջողությունների են հասել նաև «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման, կոշիկի «Մասիս», «Գարուն» կարի արտադրամիավորումների, էլեկտրատեխնիկական, «Ալմաստ», ալյումինի գործարանների, հայկական գյուղատնտեսական ինստիտուտի սկզբնական կուսկազմակերպությունները։

Աշխատավորների տնտեսագիտական կրթության արդյունավետությունը բարձրացնելու ասպարեզում ուսանելի փորձ են կուտակել Սովետական շրջանի կուսկազմակերպությունները։ Շրջանի նյութական արտադրության ոլորտի աշխատողների կեսից ավելին ընդգրկված է տնտեսագիտական ու կոմունիստական աշխատանքի դպրոցներում։ Ընդ որում, ունկնդիրների թվում գերակշռողը բանվորներ են։ Նրանց զգալի մասը ուսումնասիրում է «Արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման առաջավոր փորձը» և «Սոցիալիստական մրցություն։ Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք» թեմաները։ Տնտեսագիտական կրթության համակարգում ներգրավված կոմունիստ պրոպագանդիստների 13 տոկոսն առաջավոր բանվորներ են։ Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպություններն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում աշխատավորների տնտեսագիտական կրթության արդյունավետության բարձրացմանը։ Պարապմունքների բարձր մակարդակի ապահովման հարցերը մշտապես գտնվում են տնտեսագիտական կրթության շրջանային և հիմնարկ-ձեռնարկությունների մեթոդխորհուրդների ուշադրության կենտրոնում։ Շրջանային մեթոդխորհուրդը (նախագահ՝ ՀԿԿ շրջկոմի երկրորդ քարտուղար Լ. Բաբայան) ինչպես անցյալ, այնպես էլ ընթացիկ ուսումնական տարում զգալիորեն ակտիվացրել է իր գործունեությունը։ Նա շեշտը դրել է պրոպագանդիստներին ցույց տրվող մեթոդական, գործնական օգնության և պարապմունքների նկատմամբ հսկողությունը ուժեղացնելու վրա։ Վերջին երկու տարում խորհուրդը պատրաստել և սկզբնական կուսկազմակերպություններ է ուղարկել հինգ մեթոդական թերթիկներ։ Մեթոդխորհուրդը պարբերաբար անցկացվող իր նիստերում քննարկում է տնտեսագիտական կրթության դրվածքի և արդյունավետության բարձրացման հարցերը։ Նա լսել է պրոպագանդիստներ Է. Հարությունյանի, Ա. Ավետիսյանի, Հ. Թադևոսյանի, Ա. Կանդայանի, «Արագած» միավորման և № 3 տաքսամոտորային ավտոձեռնարկության մեթոդխորհուրդների նախագահների հաշվետվությունները։ Պարապմունքների ունկնդրում-քննարկումներ են կազմակերպվել «Ալմաստ» գործարանում, կաբելի գիտաարտադրական միավորումում, № 1 ճանշինվարչությունում։ Մեթոդխորհուրդը հրավիրում է պրոպագանդիստների շերտավորված սեմինար-խորհրդակցություններ, որտեղ դասախոսություններով ու զեկուցումներով հանդես են գալիս էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի, հաշվողական կենտրոնի մասնագետները։ Վստահորեն կարելի է ասել, որ շրջանային մեթոդխորհրդի ձեռնարկած միջոցների և շրջանի մի շարք կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների հետևողական աշխատանքի շնորհիվ զգալիորեն բարձրացել են տնտեսագիտական կրթության արդյունավետությունն ու որակը։ Դրա մասին են վկայում հետևյալ փաստերը։ Սովետական շրջանում տասներորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարած շուրջ 7.000 բանվորների 97 տոկոսը տնտեսագիտական ու կոմունիստական աշխատանքի դպրոցների ունկնդիրներ են։ Նրանք վերջին երկու տարում արել են մոտ 520 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնց ներդրումից ստացված պայմանական օգուտը կազմել է շուրջ երկու միլիոն



ռուբլի։ Ավտոմատացվել և կատարելագործվել են մի շարք արտադրական ու տեխնոլոգիական պրոցեսներ, խնայվել են 1,7 միլիոն ռուբլու էլեկտրաէներգիա, հումք և օժանդակ նյութեր։

Աշխատավորների տնտեսագիտական կրթության գաղափարատեսական մակարդակը բարձրացնելու, այն կյանքի և հիմնարկ-ձեռնարկությունների առջև ծառացած խնդիրների լուծման հետ սերտորեն շաղկապելու, դրա դաստիարակչական դերը ուժեղացնելու ասպարեզում դրական աշխատանք են կատարում «Ալմաստ», «Արդկապ» գործարանների, կաշվե գալանտերեայի ֆաբրիկայի, կաբելի գիտաարտադրական միավորման և մի շարք այլ կուսկազմակերպություններ և տնտեսական ղեկավարներ։ «Ալմաստ» գործարանի № 2 արտադրամասի «Սոցիալիստական մրցություն։ Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք» դպրոցն արդեն հինգերորդ տարին է, ինչ ղեկավարում է արտադրամասի պետ Կ. Մարտիրոսյանը։ Նա պրոպագանդիստական աշխատանքը կատարում է բարձր պատասխանատվությամբ, ունկնդիրներին պարզ ու մատչելի մեկնաբանում տեսական ու գործնական հարցերը։

Այդ ամենի շնորհիվ պարապմունքներն անցնում են հետաքրքրական, մտքերի աշխույժ փոխանակման մթնոլորտում։ Ամեն ամսվա վերջին հրավիրվող արտահերթ պարապմունքի ժամանակ յուրաքանչյուր ունկնդիր տեղեկացնում է կատարած աշխատանքի ու գործերի վիճակի մասին։ Այնուհետև ի մի են բերվում ընդհանուր արդյունքները և կոնկրետ միջոցառումներ մշակվում թերությունները վերացնելու համար։ Պատահական չէ, որ դպրոցի 24 ունկնդիրներ արտադրության առաջավորներ են, նրանք ամեն ամիս արտադրական առաջադրանքները կատարում են 105—110 տոկոսով։ Վերջին տարիներին 13 բանվորներ արժանացել են կոմունիստական աշխատանքի հարվածայինի պատվավոր կոչման, 11-ը, հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար, պարգևատրվել են լենինյան պատվոգրով, ունկնդիրների ճնշող մասը 1979—1980 թթ. տարբեր ամիսների մի քանի անգամ հաղթող է ճանաչվել անհատական սոցիալիստական մրցությունում։ Մասնակցելով ՍՄԿԿ XXVI համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությանը՝ 17 ունկնդիրներ ընթացիկ տարվա առաջին եռամսյակի պլանային առաջադրանքները կատարեցին նրա բացման նախօրյակին։ Դպրոցի ունկնդիրներն ակտիվ են մասնակցում արտադրամասի, գործարանի հասարակական աշխատանքներին։

Քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը հաճախակի կազմակերպում է կուսակցական ուսուցման դպրոցների և սեմինարների պարապմունքների ունկնդրումներ, այսպես կոչված՝ «բաց դասի» եղանակով, որին մասնակցում են նաև մայրաքաղաքի տարբեր հիմնարկ-ձեռնարկությունների մեծ թվով պրոպագանդիստներ, կուսկազմակերպությունների քարտուղարներ։ Այդ պրակտիկան ներկայումս արմատավորվել և լայնորեն կիրառվում է նաև կուսշրջկոմներում։

Մասսաների շրջանում տարվող գաղափարաքաղաքական աշխատանքի արդյունավետությունը որոշող վճռական գործոններից մեկը պրոպագանդիստական կադրերն են։ «...Պրոպագանդիստը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— գլխավոր դեմքն է կուսակցական ուսուցման սիստեմում»։ Նրա ակտիվ գործունեությամբ, տեսական ու մեթոդական պատրաստվածության բարձր մակարդակով և մարդկանց հետ աշխատելու կարողությամբ է մեծապես պայմանավորված քաղաքական և տնտեսագիտական ուսուցման հաջողությունը։ Ահա թե ինչու պրոպագանդիստական կադրերի ընտրության և դաստիարակության գործը եղել և մնում է ինչպես շրջկոմների, այնպես էլ սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Մեր քաղաքում տարեցտարի բարելավվում է պրոպագանդիստական կադրերի որակական կազմը, այն համալրվում է տեսականորեն ավելի պատրաստված, հմուտ ու բարեխիղճ կոմունիստներով։ Ահա բազմաթիվ օրինակներից մեկը։ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման գլխամասային գործարանի կոլեկտիվում մեծ հեղինակություն է վայելում գլխավոր տեխնոլոգի տեղակալ Վիկտոր Ներսիսյանը։ Նա ոչ միայն ճանաչված ու հմուտ մասնագետ է, այլև հարգված ու փորձված պրոպագանդիստ։ Արդեն տասնհինգ տարի է, ինչ

բարեխղճորեն կատարում է կուսակցության քաղաքական մարտիկի պատասխանատու պարտականությունը: Պրոպագանդիստ Վ. Ներսիսյանն ունի ունկնդիրներին հրապուրելու հմտություն: Նա լավ գիտի իր ունկնդիրներին, քաջատեղյակ է նրանց նախասիրություններին, աշխատանքային հաջողություններին ու հոգսերին: Այս հանգամանքը հնարավորություն է ընձեռում նրան՝ ակտիվորեն ներգործել լսարանի վրա: Պրոպագանդիստին շատ հաճախ կարելի է տեսնել գործարանի պլանային, առաքման ու պատվերների և այլ բաժիններում՝ ձեռնարկության վերաբերող տվյալներ ուսումնասիրելիս: Պարապմունքների ընթացքում կատարում է փաստերի համադրում, ասածը հիմնավորում ձեռնարկության, քաղաքի տնտեսական ու սոցիալական կյանքի կոնկրետ օրինակներով, լայնորեն օգտագործում դիդակտիկ պարագաներ: Նրա համար հարուստ նյութեր են արտադրական ցուցանիշների վերաբերյալ տեղական փաստերը: Վ. Ներսիսյանն աշխատում է անձնական ստեղծագործական պլանով, ձգտում ուսումնական պրոցեսն ավելի սերտորեն շաղկապել հրատապ քաղաքական ու տնտեսական խնդիրների հետ: Ստեղծագործական պլանը կազմելիս պրոպագանդիստը հաշվի է առնում ունկնդիրների նախասիրությունները և ցանկությունները:

Ճանաչված պրոպագանդիստի առաջավոր փորձը լայն արձագանք է գտել «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում, արժանացել ՀԿԿ Լենինյան շրջկոմի հավանությանը և բյուրոյի որոշմամբ տարածվել շրջանում: Միանգամայն օրինաչափ է, որ Վ. Ներսիսյանի պրոպագանդիստական լավագույն աշխատանքը գնահատվել է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության պատվոգրով:

Վ. Ներսիսյանի օրինակը եզակի չէ. բազմաթիվ են այն պրոպագանդիստները, ովքեր ջանք ու եռանդ չեն խնայում քաղաքական հարուստ գիտելիքներ հաղորդելու կոմունիստներին ու անկուսակցականներին: Նրանք սեր ու հարգանք են վայելում ո՛չ միայն ունկնդիրների, այլև կոլեկտիվների անդամների շրջանում: Եվ ահա մի խումբ առաջավոր պրոպագանդիստներ վերջերս հանդես եկան ուշագրավ նախաձեռնությամբ՝ շարժում ծավալել «Կայուն գիտելիքներ, խոր համոզվածություն, ակտիվ կենսադիրքորոշում՝ յուրաքանչյուր ունկնդրի» նշանաբանով: Նրանք կոչ արեցին քաղաքի բոլոր պրոպագանդիստներին՝ ակտիվորեն ներգրավվել այդ շարժման մեջ և լիովին օգտագործել գիտելիքներն ու հմտությունը, ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերի պրոպագանդումն ու պարզաբանումը կազմակերպել այնպես, որպեսզի նրա գաղափարները, բարձր ստեղծագործական ոգին յուրաքանչյուր ունկնդրի համար դառնան նոր սխրանքների հզոր խթան՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տասնմեկերորդ հնգամյա պլանով նախատեսված խնդիրների անվերապահ լուծման համար:

Այդ նախաձեռնությունն արժանացավ կուսքաղկոմի բյուրոյի հավանությանը և լայնորեն տարածվեց քաղաքի պրոպագանդիստների շրջանում ու վճռական նշանակություն ունեցավ քաղաքական ուսուցման արդյունավետության բարձրացման գործում:

Արդի պայմաններում, երբ անշեղորեն բարձրանում է ունկնդիրների կրթության և սոցիալական ակտիվության մակարդակը, բարդանում է պրոպագանդիստի աշխատանքը: Նրանից պահանջվում են մշտական ջանքեր ու ստեղծագործական որոնումներ մարքս-լենինյան տեսության, կուսակցության քաղաքականության խոր ուսումնասիրման, կուսակցական պրոպագանդայի գիտական հիմունքներին և առաջավոր փորձին տիրապետելու համար: Այս առումով վճռական նշանակություն է ձեռք բերում պրոպագանդիստական կադրերի որակավորման բարձրացման նպատակով տարվող աշխատանքի կատարելագործումը: Կուսշրջկոմները պրոպագանդիստների համար պարբերաբար կազմակերպում են սեմինար-պարապմունքներ, կոնսուլտացիաներ, որտեղ նրանք ստանում են ո՛չ միայն տեսական ու մեթոդական, այլև մանկավարժական գիտելիքներ: Առանձին շրջկոմներում քաղաքական լուսավորության կաբինետները դարձել են կուսակցական պրոպագանդայի մեթոդական կենտրոններ: Միայն վերջին երկու ուսումնական տարիներին կուսքաղկոմի գաղափա-



րական հանձնաժողովը և շրջկոմների քաղլուսկաբինետները պրոպագանդիստների համար մշակել և հրատարակել են մեթոդական ավելի քան երեք տասնյակ թերթիկներ ու երաշխավորություններ:

Ընթացիկ ուսումնական տարին կուսակցական և կոմերիտական ուսուցման, տնտեսագիտական կրթության և մասսայական պրոպագանդայի բոլոր օղակներում սկսվել է «Լենինյան կոմունիստական կուսակցությունը մեր դարաշրջանի միտքը, պատիվը և խիղճն է» թեմայի ուսումնասիրմամբ: Այդ գործի հաջող կազմակերպման, պրոպագանդիստներին մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով քաղկոմի գաղափարական հանձնաժողովը մշակել և սկզբնական կուսկազմակերպություններին է ուղարկել համապատասխան երաշխավորություններ:

Շոշափելի աշխատանք է կատարվել նաև պրոպագանդիստական աշխատանքի առաջավոր փորձի ուսումնասիրման և տարածման ասպարեզում: Այդ նպատակով քաղկոմում և շրջկոմներում ստեղծվել են գաղափարադաստիարակչական աշխատանքի առաջավոր փորձի գրադարաններ: Իր գործունեությունը բավականաչափ աշխուժացրել է քաղկոմի գաղափարական հանձնաժողովի գաղափարադաստիարակչական աշխատանքի առաջավոր փորձի ուսումնասիրման և տարածման սեկտորը: Սեկտորը նախապատրաստել և հրատարակել է առաջավոր փորձի գրադարանի առաջին համարը, որում լուսաբանվել է քաղաքի մի շարք լավագույն պրոպագանդիստների, քաղինֆորմատորների, ագիտատորների, վարպետ-դաստիարակների փորձը: Այժմ սեկտորը նախապատրաստում է առաջավոր փորձի գրադարանի երկրորդ համարը, որը կհրատարակվի ընթացիկ ուսումնական տարվա վերջում:

Ճշմարտությունը պահանջում է ասել, որ աշխատավորության քաղաքական կրթության կազմակերպման գործում դեռևս ունենք նաև չլուծված բազմաթիվ խնդիրներ ու թերություններ: Ոչ բոլոր կուսկազմակերպություններն են հետևողականորեն զբաղվում ուսումնական պրոցեսի կատարելագործման, պարապմունքների գաղափարատեսական մակարդակի բարձրացման, բովանդակության հարստացման հարցերով:

Նշված թերությունների մասին հանգամանորեն խոսվել է նաև կուսակցության Երևանի քաղաքային կազմակերպության XXXVII կոնֆերանսում: Դժբախտաբար առանձին կուսկազմակերպություններում թերությունների մասին ընդհանուր դատողություններից ոչ մի կերպ չեն կարողանում անցնել դրանք վերացնելու, մեր պրակտիկայից իսպառ արմատախիլ անելու կոնկրետ գործողության: Այդ մասին են վկայում քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի անցկացրած ուսումնասիրություններն ու գրավոր ստուգարքները: Այսպես, օրինակ, վերջերս քաղկոմի գաղափարական հանձնաժողովը, մեր բաժնի հետ միասին, գրավոր ստուգարքներ անցկացրեց 22 կազմակերպություններում: Ստուգարքին մասնակցած շուրջ երկու հազար ունկնդիրների ավելի քան 78 տոկոսը չկարողացավ պատասխանել ուսումնասիրվող նյութին վերաբերող հարցերին: Ուսումնասիրված կազմակերպություններից երեքում (հրուշակեղեն-մակարոնի կոմբինատ, գեղարվեստական ժամացույցների գործարան, «Ավանգարդ» արտադրական միավորում) նույն հարցերի շուրջ ստուգարք անցկացվեց նաև պրոպագանդիստների հետ: Տարօրինակ է, որ դրան մասնակցած 46 պրոպագանդիստներից 36-ը անբավարար պատասխաններ տվեցին առաջադրված հարցերին: Այստեղ, ինչպես ընդունված է ասել, մեկնաբանություններն ավելորդ են:

ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց կուսկազմակերպությունների առջև՝ վերակառուցել գաղափարախոսական աշխատանքը, արմատապես բարելավել այն: «Հարկավոր է հասնել այն բանին,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ այդ աշխատանքի բովանդակությունը դառնա ավելի հրատապ, իսկ ձևերը համապատասխանեն սովետական մարդկանց պահանջներին ու հարցումներին»: Այժմ կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ ապահովել ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերի լայն պրոպագանդումը և պարզաբանումը մասսաներին, յուրաքանչյուր աշխատավորի մոբիլիզացնել համագումարի առաջադրած խնդիրների լուծմանը:

# ԱՅՍՕՐՎԱ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

**Զ. Ա. ՉԻԲՈՒԽՉՅԱՆ**
ՀԿԿ Իջևանի շրջկոմի պրոպագանդայի և
ագիտացիայի բաժնի վարիչ

Մեր ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ յուրաքանչյուր նոր փուլում ավելի խորությամբ ու լիովին է դրսևորվում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ստեղծագործական ուժը։ Դրանք հարստացնում են սովետական մարդու հոգևոր աշխարհը, ամրապնդում հավատը կոմունիզմի հաղթանակի նկատմամբ, խանդավառում, բարձրացնում նրա աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը։ Ահա թե ինչու հեղափոխական տեսության խոր ու բազմակողմանի ուսումնասիրումը, գիտելիքները համոզմունք դարձնելը և ակտիվ կենսադիրքորոշումը կուսակցությունը համարում է կոմունիստական շինարարության խնդիրների հաջող իրականացման գրավական։

Քաղաքական ուսուցման ու տնտեսագիտական կրթության և ընդհանրապես գաղափարախոսական աշխատանքի բարելավման այսօրվա պահանջները հանգամանորեն ուղենշված են «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, որտեղ նշված է. «Կուսակցության հեղափոխական տեսության, քաղաքականության իմացությունը սովետական մարդու մտածելակերպում պետք է վերածվի կոմունիզմի համար, խորթ գաղափարախոսության ամեն կարգի դրսևորումների դեմ պայքարող կայուն մարտիկի համոզմունքի, նրա ակտիվ կենսադիրքորոշման, դառնա գործողության ուղեցույց զարգացած սոցիալիզմի հրատապ պրոբլեմների լուծման համար»։

ՀԿԿ Իջևանի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, իրենց գործունեությունը վերակառուցելով ՍՄԿԿ Կենտկոմի այդ որոշման ոգով, վերջին երկու ուսումնական տարիներին զգալապես բարելավել են գաղափարախոսական աշխատանքը, բարձրացրել քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության մակարդակը, ամրապնդել դրանց կապը կյանքի, տնտեսական և քաղաքական խնդիրների լուծման հետ։ Մարքս-լենինյան ուսուցման սիստեմում պարապմունքների արդյունավետ անցկացման և դրանց բովանդակության հարստացման վրա առանձնապես բարերար ազդեցություն գործեց ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան, 1980 թվականի հունիսյան ու հոկտեմբերյան պլենումների որոշումների, «ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում, զեկուցումներում ու ելույթներում բովանդակվող դրույթների ու հետևությունների ուսումնասիրությունը։

Շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հետագա որոշումների պահանջների ոգով իրենց աշխատանքի հիմքում դրել են հատկապես ուսուցման արդյունավետության բարձրացման խնդիրը, որը պատշաճ ուշադրության արժանացավ նաև



ՍՄԿԿ XXVI համագումարում։ Համագումարը կուսկազմակերպությունների պարտքը համարեց ոչ թե տարվել ունկնդիրների թվի ավելացմամբ, այլ բարձրացնել քաղաքական ուսուցման արդյունավետությունը։

Մարքս-լենինյան ուսուցման կատարելագործման, նրա ներգործունության ուժեղացման գործում վճռական դերը պատկանում է պրոպագանդիստին, որը, իրոք, քաղաքական ուսուցման կենտրոնական դեմքն է։ Բարձր գնահատելով պրոպագանդիստի դերը՝ Վ. Ի. Լենինը գրել է. «Յուրաքանչյուր պրոպագանդիստի ու յուրաքանչյուր ագիտատորի հմտությունը հենց այն է, որպեսզի լավագույն կերպով ներգործի տվյալ լսարանի վրա, նրա համար հայտնի ճշմարտությունը դարձնելով ըստ հնարավորին ավելի համոզիչ, ըստ հնարավորին ավելի դյուրին յուրացվող, ըստ հնարավորին ավելի ակնբախ ու հաստատ տպավորվող» (Երկեր, հ. 17, էջ 418)։

Մենք պրոպագանդիստներ ենք առաջադրում իրենց գործը սիրող, գաղափարապես առավել պատրաստված, բարոյական լավագույն հատկանիշներով օժտված, հասարակայնության հարգանքը վայելող, անհրաժեշտ փորձ ու գիտելիքներ ունեցող մարդկանց։

Շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը և քաղլուսկաբինետը պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը կազմակերպում են շերտավորված ձևով։ Ըստ ուսուցման օղակների՝ ստեղծել ենք պրոպագանդիստների մշտական գործող սեմինարներ։ Ամսական մեկ անգամ տեղի ունեցող պարապմունքներում նրանց համար կարդացվում են տեսական ու մեթոդական բնույթի զեկուցումներ, փորձի փոխանակման նպատակով կազմակերպվում են առաջավոր պրոպագանդիստների ելույթներ։ Կարդացվող դասախոսությունները հիմնականում ընտրվում են ուսումնական ծրագրերի պրոբլեմային թեմաներից, դրանք հարստացվում են կուսակցության ու կառավարության կարևորագույն որոշումների նյութերով ու դրույթներով։

ՍՄԿԿ Կենտկոմի «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որոշումից հետո, տնտեսագիտական և կոմունիստական աշխատանքի դպրոցների ավելացման առնչությամբ, լուրջ դժվարությունների առջև էինք կանգնում որակյալ պրոպագանդիստական կադրերի ընտրության գործում։ Ուստի, պրոպագանդիստական ռեզերվի դպրոց ունենալը հույժ անհրաժեշտություն էր։ Այժմ էլ գործում է այդպիսի դպրոց, որը լավ արդյունք է տալիս։ Մեկ-երկու տարի այդ դպրոցում նախապատրաստվելուց հետո, երիտասարդ մասնագետներն ու մտավորականության ներկայացուցիչները, պահանջվող տեսական-մեթոդական հմտություն ձեռք բերելով, համալրում են պրոպագանդիստների շարքերը։ Եվ այսօր վստահությամբ կարելի է ասել, որ այդ պրոբլեմը մեր շրջանում հիմնականում լուծված է։

Այժմ կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողներից 135-ը պրոպագանդիստներ են ուսուցման տարբեր ձևերում և օղակներում։ Ղեկավար աշխատողներին գաղափարախոսական աշխատանքում ներգրավելու ակտիվ ձևերից է նաև միասնական քաղօրերին նրանց մասնակցության ապահովումը։

Ղեկավար աշխատողներին ընդգրկելով պրոպագանդիստական աշխատանքում՝ ՀԿԿ Իջևանի շրջկոմը մշտապես մտահոգված է նրանց ուսուցման կազմակերպմամբ։ Չէ՛ որ ուրիշին սովորեցնելու համար պետք է ինքդ շատ գիտենաս։ Ուստի մենք ձգտում ենք, որ յուրաքանչյուր ղեկավար առաջին հերթին խորապես յուրացնի մարքսիզմ-լենինիզմը։ Այդ նպատակով մենք օգտագործում ենք կուսակցական, սովետական և տնտեսական ակտիվի դպրոցների ընձեռած հնարավորությունները։ Ուժեղացրել ենք նաև կուսակցական վերահսկողությունը ղեկավար կադրերի ինքնակրթության զարգացման նկատմամբ։ Շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը ղեկավար աշխատողների հետ պարբերաբար կազմակերպում է հարցազրույցներ, անհատական կոնսուլտացիաներ քաղաքական պրոբլեմների, արվեստի, գրականության նվաճումների շուրջ։

Ղեկավար կադրերի հետ տարվող աշխատանքն ինքնանպատակ չէ։ Արդեն

մեր շրջանի փորձով համոզվել ենք, որ նրանց պրոպագանդիստական աշխատանքում ընդգրկելով, ավելի է ամրապնդվում միասնությունը տնտեսական և գաղափարադաստիարակչական գործունեության միջև, ընդլայնվում են քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կոմպլեքսային լուծման հնարավորությունները:

Եվ այդ ամենը մեծապես նպաստում է տնտեսական խնդիրների լուծման գաղափարական ապահովման գործին: Այս առումով բնորոշ է Գետահովիտի կոլտնտեսության օրինակը: Չորս-հինգ տարի առաջ տնտեսությունը գտնվում էր ետ մնացողների շարքում, թերակատարում էր պլանային առաջադրանքները: Այստեղ թույլ էր գաղափարական-դաստիարակչական աշխատանքը, մեծ էր հոսունությունը: Կուսշրջկոմը ստիպված էր դիմելու կազմակերպչական միջոցառումների: Շրջկոմի համապատասխան բաժնի օգնությամբ կուսկազմակերպությունը, տնտեսության նոր ղեկավարության հետ միասին, առաջին հերթին ձեռնամուխ եղավ գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բարելավման, աշխատանքային կարգապահության ամրապնդման գործին:

Ընդլայնվեց տնտեսագիտական կրթության ցանցը: Պրոպագանդիստներ առաջադրվեցին կոլտնտեսության նոր նախագահ, կուսակցական աշխատանքի փորձ ունեցող Վազգեն Ամիրաղյանը, գյուղատնտես Ռադիկ Ենգիբարյանը, զոոտեխնիկ Թոռնիկ Վարդապետյանը: Կարճ ժամանակամիջոցում նրանք իրենց աշխատանքով ապացուցեցին, որ կարող են լինել ոչ միայն արտադրության հմուտ կազմակերպիչներ, այլև լավ պրոպագանդիստներ: Նրանք պարապմունքները վարում են աշխույժ զրույցի մեթոդով, ապահովում ունկնդիրների ակտիվ մասնակցությունը ծրագրով նախատեսված թեմաների քննարկմանը:

Պրոպագանդիստները, տեսական նյութի պարզաբանման հետ միասին, մեծ տեղ են հատկացնում գործնական պրապարպմունքներին: Մեր և հարևան հանրապետությունների առաջավոր տնտեսությունների դրական փորձն ուսումնասիրելու և արմատավորելու նպատակով նրանք պարբերաբար կազմակերպում են ունկնդիրների էքսկուրսիաներ: Նման միջոցառումները նպաստում են տնտեսական ու քաղաքական-գաղափարախոսական գործունեության միասնության ապահովմանը: Կոլտնտեսականների շրջանում տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքը դարձել է ներգործուն և արդյունավետ, ամրապնդվել է աշխատանքային կարգապահությունը, ստեղծվել կայուն կոլեկտիվ: Հզորացել է տնտեսության նյութատեխնիկական բազան, ավելացել բուսաբուծական և անասնապահական մթերքների արտադրությունը: Մի շարք ցուցանիշներով տասներորդ հնգամյակի պլանային առաջադրանքները կատարվեցին չորսուկես տարում: Նախկինում տարին զգալի վնասով փակող կոլտնտեսությունը 1980 թ. ունեցավ 108 հազար ռուբլու օգուտ:

Նման օրինակներ կարելի է նշել Վաղաշենի, Աչաջրի սովխոզների և մի շարք այլ կուսկազմակերպություններից: 1980 թ. սկզբներին կուսշրջկոմը, հաշվի առնելով գաղափարադաստիարակչական աշխատանքի կազմակերպման ասպարեզում Գետահովիտի կուսկազմակերպության դրական աշխատանքը, այն համարեց բազային կազմակերպություն, որի փորձը սկսվեց մասսայականացվել գյուղական մյուս կազմակերպություններում:

Շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը վերջին տարիներին անհրաժեշտ ջանքեր են գործադրում առաջավոր փորձի տարածման համար: Կազմակերպվում են պարապմունքներ, որոնց մասնակցում են հատկապես երիտասարդ պրոպագանդիստները:

Մենք որոշակի գործ ենք արել պրոպագանդիստական աշխատանքը խրախուսելու առումով: Շրջկոմի բյուրոյի որոշմամբ յուրաքանչյուր տարի առաջավոր պրոպագանդիստների լուսանկարները փակցնում ենք գաղափարական աշխատանքի առաջավորների պատվո տախտակին, անունները գրանցում պատվո գրքում: Նրանց համար կազմակերպում ենք էքսկուրսիաներ Հայաստանի և հարևան հանրապետությունների տեսարժան վայրերը: Յուրաքանչյուր ուսումնական տարվա նախօրեին շրջկոմի քարտուղարները ընդունում են պրոպագանդիստներին, առաջավորներին հանձնում թանկարժեք նվերներ և պատվոգրեր:



Մեր շրջանում՝ սահմանել ենք պարապմունքների միասնական օրեր: Ուսումնական տարվա սկզբին կազմած գրաֆիկին համապատասխան՝ յուրաքանչյուր միասնական օր կուսակցական սովետական ակտիվի ներկայացուցիչների, մեթոդխորհրդի անդամների հետ 20—25 կազմակերպություններում ունկնդրում ենք պարապմունքները և արդյունքները ամփոփում մեթոդխորհրդի նիստերում կամ պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում, վեր հանում եղած թերությունները և միջոցառումներ մշակում դրանց վերացման համար:

Քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության նկատմամբ հսկողության լավ միջոց են քննարկումները: Կուսակցական ժողովներում և շրջկոմի բյուրոյում պարբերաբար քննարկում ենք քաղաքական և տնտեսագիտական ուսուցմանն առնչվող զանազան հարցեր, պրոպագանդիստների հաշվետվություններ: Ուսուցման բոլոր օղակների նկատմամբ իրականացվող այդ վերահսկողությունը բարձրացնում է սկզբնական կուսկազմակերպությունների, պրոպագանդիստների, ինչպես նաև ունկնդիրների պատասխանատվությունը, էապես նպաստում կուսակցական, կոմերիտական ուսուցման և տնտեսագիտական կրթության բարելավմանը: Ուսումնասիրությունների ժամանակ պարզվեց, որ Վաղաշենի սովխոզում, «Բենտոնիտ» կոմբինատում ձևական մոտեցում է ցուցաբերվում աշխատավորների տնտեսագիտական կրթության նկատմամբ: Պարապմունքներն անցնում են անհետաքրքիր, գաղափարական ցածր մակարդակով, անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում ունկնդիրների առաջարկություններին, լինում են մեծ թվով բացակայություններ: Շուտով հարցը քննարկվեց շրջկոմի բյուրոյում: Հանգամանորեն վերլուծելով գործերի վիճակը՝ շրջկոմի բյուրոն այդ ձեռնարկությունների ղեկավարներից, կուսակցական ու արհմիութենական կազմակերպություններից պահանջեց՝ սեղմ ժամկետում վերացնել աշխատավորների տնտեսագիտական կրթության գործում եղած թերությունները: Կուսշրջկոմը վերանայեց պրոպագանդիստների կազմը, այն համալրեց ղեկավար և մասնագետ բանիմաց կադրերով: Ապարատի պատասխանատու աշխատողներից մի քանիսին հանձնարարվեց տեղերում մշտական օգնություն ցույց տալ տնտեսագիտական կրթության կազմակերպմանը: Հետևողական աշխատանքի շնորհիվ ինչպես սովխոզում, այնպես էլ կոմբինատում էապես բարձրացավ պարապմունքների մակարդակը:

Կուսակցական ուսուցման օղակներում ընդգրկված ունկնդիրներից շատերը սիստեմատիկաբար հանդես են գալիս արտադրության առաջընթացը խթանող արժեքավոր ռացիոնալիզատորական առաջարկություններով: Միայն 1980 թ. կուսակցական և տնտեսագիտական ուսուցման ցանցի ունկնդիրները արել են 105 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնց տնտեսական օգուտը կազմել է շուրջ 600 հազար ռուբլի: Պրոպագանդիստների անմիջական օգնությամբ 1980—81 ուստարում ունկնդիրները մշակել և ընդունել են շուրջ 2.550 անհատական սոցիալիստական պարտավորություններ, ավելի քան 1.100 ունկընդիրներ կոմունիստական աշխատանքի հարվածայիններ են, վարպետ-դաստիարակներ, ժողովրդական վերահսկողության խմբերի անդամներ, ագիտատորներ ու քաղինֆորմատորներ: Հատկանշական է, որ վերջին երկու տարում, պրոպագանդիստների գործունեությունը գնահատելիս, կազմակերպական գործոնների հետ մեկտեղ, հաշվի ենք առնում նաև ունկնդիրների ստանձնած պարտավորությունների կատարման արդյունքները, աշխատանքային կարգապահության դրվածքը, հանրօգուտ-հասարակական աշխատանքներին նրանց մասնակցությունը և այլն:

Մեր աշխատանքում, ինչ խոսք, կան նաև թերություններ, լուծման կարոտ հարցեր, հատկապես, երբ կատարածը գնահատում ենք կուսակցության XXVI համագումարի պահանջների չափանիշներով:

Վարդունի, Լուսաձորի կոլտնտեսություններում, Գանձաքարի սովխոզում, Թունելային № 17 ջոկատում տնտեսագիտական կրթությունը և կոմերիտականների քաղաքական ուսուցումը կրում են ձևական, նեղ լուսավորչական բնույթ, ծրագրային թեմաներն ուսումնասիրվում են տնտեսական խնդիրներից կտրված, չեն շաղկապվում ունկնդիրների կոնկրետ անելիքների հետ, որով էլ բացատրվում է ունկնդիրների պասիվությունը: Բնականաբար, այդպիսի ուսու-

ցումը չի կարող ծառայել իր նպատակին և նպաստել սոցիալ-տնտեսական խնդիրների լուծմանը։

Մասնավորապես ծայրամասային գյուղերում անբավարար են օգտագործվում պրոպագանդայի տեխնիկական միջոցները։ Դա, անշուշտ, բացասաբար է անդրադառնում քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության արդյունավետ կազմակերպման վրա։

Այստեղ անհրաժեշտ է նշել ՍՄԿԿ XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արած այն դիտողությունը, որ՝ «Տեսական պատրաստությունը մինչև օրս էլ կուսակցական լուսավորության շատ դպրոցներում ու սեմինարներում անբավարար չափերով է շաղկապվում մարդկանց հուզող հրատապ հասարակական և արտադրական պրոբլեմների լուծման հետ։ Տակավին արմատախիլ չեն արվել նաև ձևամոլության ու աշակերտայնության դրսևորումները, որոնք նվազեցնում են ունկնդիրների շահագրգռությունը տեսական ուսուցման նկատմամբ»։ Խոստովանեմ, որ այս գնահատականը բնորոշ է նաև մեր առանձին կազմակերպություններում գործող խմբակների ու սեմինարների աշխատանքին։ Իրոք, պրոպագանդիստների մեթոդական վարպետության բարձրացման նպատակով կազմակերպվող սեմինար-պարապմունքներում քիչ են մեթոդական բնույթի զեկուցումները։ Եվս մեկ ուրիշ թերություն, որի վերացման վրա սևեռել ենք մեր ուշադրությունը։ Դեռևս ունենք կուսկազմակերպություններ, գաղափարական ճակատի աշխատողներ, որոնք մարդկանց հետ աշխատում են հնացած ձևերով և մեթոդներով, չեն ընթանում ժամանակի պահանջներին համաքայլ։

ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերում և որոշումներում հանգամանորեն վերլուծված են գաղափարախոսական աշխատանքի բնագավառում ձեռք բերված նվաճումներն ու սահմանված են հետագա անելիքները։ Կուսշրջկոմը, շրջանի սկզբնական կուսկազմակերպություններն այս օրերին գաղափարախոսական ամբողջ աշխատանքը նպատակամղել են կուսակցության համաժողովի նյութերի ու որոշումների պրոպագանդմանը։ Քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության բոլոր օղակներում մարտ ամսից ունկնդիրները մեծ ակտիվությամբ ուսումնասիրում են համագումարի նյութերը։

---

Անցած օրերի արձագանքը

# ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՂՈՂԱՆՋՆԵՐԸ ՍՈՎԵՏԱՀԱՅ ՊՈԵԶԻԱՅՈՒՄ

ՀՐԱՆՈՒՇ ԴԱՐԲԻՆՅԱՆ

ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՎՐԱ ֆաշիստական Գերմանիայի սանձազերծած պատերազմը ցնցեց ամբողջ երկիրը։ Այն սեղմվեց ինչպես հսկայական մի բռունցք ու սկսեց հակահարված տալ։ Սովետական ժողովուրդների խաղաղ կյանքը վերակառուցվեց ամեն ինչ ռազմաճակատի համար նշանաբանով։

Պատերազմական ներթափոխի կանգնեցին նաև մեր գրականության ու արվեստի գործիչները։ Հին խոսքը, թե՝ երբ խոսում են թնդանոթները, մուսաները լռում են, այս դեպքում իրեն չարդարացրեց։ Մուսաները խոր մետամորֆոզի ճանապարհով փոխեցին իրենց սովորական կյանքի ընթացքը և ռազմի շեփորներ հնչեցրին, ամպրոպաձայն երգեր որոտացին՝ «ի մա՜րտ, ի զե՜ն» կոչելով հանուն սիրասուն Հայրենիքի։ Միայն Սովետական Հայաստանից ավելի քան 60 գրողներ մեկնեցին ռազմաճակատ։ Նրանցից շատերն ընկան երգը շուրթերին, ողջակիզվեցին հայրենիքի անմահության ճանապարհին, ձուլվեցին մայր հողին ու հավերժացան նրա հետ։

Սովետահայ գրականությունը հայրենական այդ մեծ առաքելությանը նախապատրաստված էր իր ողջ պատմությամբ ու ավանդույթներով, բազմադարյան հարուստ գրական փորձով, օտարերկրյա զավթիչների դեմ մեր ժողովրդի մղած ներսամարտերի կենդանի հուշով։ Եվ ժամանակ պետք չեղավ վերակառուցվելու, խաղաղ, ստեղծագործ աշխատանքի թեմաներից հայրենիքի պաշտպանության կոչերին անցնելու համար։ Պատերազմի հենց առաջին օրը գրվեց Ն. Զարյանի Դու քաղցր ես, հող իմ հայրենի բանաստեղծությունը.

*Դու քաղցր ես, հող իմ հայրենի,*
*Ջկա քեզնից անուշ անուն,*
*Բայց վտանգի ահեղ ժամին,*
*Երբ սպառնում է թշնամին,*
*Դու ավելի ես քաղցրանում։*

Հայրենի եզերքի այս պաշտամունքը պատերազմական շրջանի մեր գրականության համար դարձավ հիմնադրույթ և գրական-բանաստեղծական քուրայում նորանոր բոնկումներ, նորանոր դրսևորումներ ունեցավ։ Դարձավ անեծք ու նզովք, ատելություն ու ցասում, վրեժի անեղաձայն կոչ մեր հողը ներխուժած ֆաշիստական ճիվաղի հանդեպ, դարձավ հաղթանակի անսասան հավատ ու հզոր մարտակոչ, սիրո ջերմ, մտերմիկ խոսք պատերազմ մեկնող ռազմիկներին։ Միով բանիվ. մարտի հրավերներ կարդացող ամպրոպաձայն ակորդներից մինչև սրտերի հետ քնքշաձայն խոսող լուսավոր կարոտի ու թախծի երգերը հույզերի ու զգացմունքների բանաստեղծական մի ամբողջ աշխարհ է փոթորկվում։

Պատերազմի հենց առաջին օրերից մամուլում տպագրված բանաստեղծություններն ու հրապարակախոսական էսսեները շիկացնում էին հայրենասիրական կրքերը, բոցավառում ատելության կրակը. ...Ատե՛ք՝ հանուն սիրո, սպանեցե՛ք՝ հանուն կյանքի և բարօրության. համաժողովրդական այս պատգամներն էին հնչեցնում մեր գրականության մեծերից սկսած մինչև երիտասարդները։ Պատերազմի հենց առաջին օրերին հրապարակվեց Ավետիք Իսահակյանի Ռազմակոչը։ Հայոց լեռնաշխարհի ջինջ երկնակամարից պայթող ամպրոպի ուժգնությամբ որոտաց մեծ քնարերգակի ձայնը.

*Էյ-հե՜յ, լսեցե՛ք, վեհ Հայրենիքի*
*Կարիճ զավակներ, ժողովուրդներ քաջ,*
*Ելե՜ք, զարթնեցե՛ք, կանգնեցեք արթուն,*
*Գոտեպնդվեցեք ատելությամբ վառ,*
*Գոտեպնդվեցեք անձնազոհ կամքով,*

մատությունները ու բանաստեղծական պատկերները: Ահա մի հատված մարտիկ-բանաստեղծ Արշ. Սարոյանի *Հաղթանակի գիշեր* բանաստեղծությունից.

*Հե՜յ, արևներ, հրավարս, ելե՛ք, ելե՛ք դուրս,*
*Ջահավառեք գիշերն այս*
*Ու շողացեք մինչև լույս։*
*Հաղթանակի այս պահին քիչ են շողերն աստղերի։*
*Հաղթանակի կենացն ենք ուզում խմել այս ժամին...*

Այս տողերը գրված են հաղթանակի օրը, Բեռլինում:

Ռազմաճակատից հազարավոր կիլոմետրեր հեռու ընկած խոր թիկունքում ևս հաղթանակի լուրն այսպիսի հիպերբոլիկ զուգորդումներ է առաջացնում.

*Աշխարհն ասես մի վիթխարի շամպայնի շիշ*
*Տարիներով խուլ խմորվող և ինքնասույզ,*
*Այդ օր խցանը տրտմության շպրտեց դուրս,*
*Եվ խեղճացած խնդությունը սրտի միջից*
*Ժայթքե՜ց հանկարծ հրանոթների շառաչով,*
*Ցայտեց խելառ հրթիռների շատրվանով,*
*Հորդե՜ց, թափվե՜ց իր ափերից։*
*Ո՜չ, չէր տեսել դեռ մարդկային սիրտը փոքրիկ*
*Այդպիսի մեծ ուրախությո՜ւն անանձնական,—*
*Օ՜ր հրճվանքի, օ՜ր խնդության։*

Ս. Կապուտիկյանի *Ներբող հաղթանակի օրվան* բանաստեղծությունը, երիտասարդ հոգու պոռթկացող ցնծություն է: Մարդը տարիներով սպասել է այս բաղձալի օրվան և ըմբոշխնում է այն լիովին ու անմնացորդ: Նույն տրամադրությունները են արտահայտված նաև մարտիկ-բանաստեղծի մոտ, բայց մի էական տարբերությամբ: Կապուտիկյանի լիրիկական հերոսը հոգեբանական ստատիկ վիճակում է, նա ապրում է միայն տվյալ պահի ոգևորությունն ու բերկրանքը: Ամբողջովին կլանված հորիզոնից հորիզոն ծավալված ուրախությամբ, նա դեռ հաշիվ չի տալիս իրեն անցած ու գալիք օրերի մասին: Արշալույս Սարոյանի լիրիկական հերոսն այդ պահին դարձել է անհիշաչար, ամբողջովին լի է հաղթանակի խնդությամբ, բայց այդ խնդության խորքից սրտի թարմ վերքերի կսկիծն է այրում և, ասես, հանկարծ պոռթկում է բանաստեղծի հոգում կուտակված լավան՝ արցունքի ու բերկրանքի խառնուրդով, որ ափ՝ այո՛, հաղթանակը ծանըր զոհերի գնով է ձեռք բերվել և ափ, որ իր հարազատների արյունն իզուր չի թափվել: Եվ կես գիշերին, երբ աշխարհում հաղթության լուրն է թնդում, բանաստեղծին թվում է, թե արյամբ ներկված ժայռերն անգամ արտասվում են բերկրանքից ու գոչում են՝ հաղթությո՜ւն:

Սարոյանի բանաստեղծության մեջ արտահայտվում են հերոսի հոգու ներքին դինամիկան, նպատակասլաց շարժումը, զինվորի կարոտած սրտի զուսպ տվայտանքն ու խաղաղ օրերի երազը և նույնիսկ՝ գյուղական խաղաղ կյանքի կոլորիտային պատկերը: Միայն մի բառի՝ *երդիկ*-ի օգնությամբ նա ո՛չ միայն կոնկրետացնում է իր հայրենի տան բնորոշ պատկերը, որտեղ և՛ լույսը, և՛ արևի շողը, և՛ գարնան ավետաբեր ծիծեռնակները երդիկից են ներս մտնում, այլև ստեղծում է տրամադրություն, նախապատրաստում ասելիքը՝ մեծ հաղթանակի ավետիսը.

*Կուզենայի այս պահին սուրալ շանթից էլ արագ,*
*Մեր երդիկից ներս մտնել՝ խոլ կարոտը կրծքիս տակ,*
*Ասել մորս.*
*— Վե՛ր ել, մա՜յր, հաղթանակ է, խնդություն,*
*Շուտով գնդերը մեր քաջ հաղթանակով կգան տուն։*
*Մարմին կառնեն մեր բոլոր երազանքները շքեղ։*
*— Ողջո՜ւյն քեզ, ո՜վ սրբազան ու բաղձալի հաղթություն։*

Ինչպես նկատեցինք, Սարոյանի մոտ հաղթանակի օրվա բերկրանքն ալիքվում է հերոսական անցյալի և խաղաղ օրերի շքեղ երազանքների միջև և, արտահայտված տրամադրությանը համապատասխան, փոխվում են նաև բանաստեղծության լեզվաոճական առանձնահատկությունները: Խիստ զուսպ, էպիկական շնչով սկսված բանաստեղծությունը (Կես գիշեր է, աշխարհում հաղթության լուրն է թնդում) միջնամասում վերածվում է շքեղ հրավառության, վերջնամասում ձեռք բերում քնքուշ, երազային կարոտի թևերով թռչող խնդության նուրբ երանգներ:

Կապուտիկյանի բանաստեղծությունն սկզբից մինչև վերջ գրված է նույն ոգեշնչությամբ ու նույն ոճով: Այդուհանդերձ, նրանք երկուսն էլ ճշմարտացի են արտահայտում համաժողովրդական ցնծությունը. մեկն արտահայտում է միայն մի պահը, իսկ մյուսը՝ ավելի լայն է տեսնում այն, տեսնում է լինելության ու հեռանկարի մեջ:

Գեղարվեստական այլ սկզբունքով են ստեղծվել Նաիրի Զարյանի *1945 թ. մայիսի 9-ը* և Գ. Բորյանի *Մայիս* բանաստեղծությունները: Զարյանի մոտ փիլիսոփայական խոհը հետին պլան է մղել հաղթանակի ցնծության ու բերկրանքի պատկերումը: Նահանջի մռայլ աշնանն անգամ հաղթանակ երգող տրիբուն բանաստեղծն իր հույզերն արտահայտում է զուսպ, այսպես ասած՝ քնքուշ կիսատոներով.

*Եկա՜ր, հաղթանակի՛ մայիս, եկա՜ր...*
*Ես հավատում էի քո մեծ գալուն։*



Այսպես սիրագորով մայրն է ընդունում հեռվից եկած իր սիրասուն զավակին, երբ ուրախության հուզմունքից կարկամում է լեզուն: Անխառն չէ բանաստեղծի ուրախությունը, քանզի՝

*Դեռ չէր բացվել այսքան այրող գարուն,*
*Այսքան և՛ վերք, և՛ վարդ, և՛ դրոշակ,*
*Այսքան կսկիծ, այսքան ուրախություն...*
*Այս ծեր և միշտ մանուկ արևի տակ*
*Դեռ չէր բացվել այսքան այրող գարուն։*

Հաղթանակի մայիսը եկել է ընկած հերոսների արյան ցոլքով, վերադարձողների հույսով պայծառ, մեր տքնությամբ, կռվով և, այո՛, նաև պայծառ երգով:

Լացի միջից ժպտում է զոհվածների վշտից կսկծացող բանաստեղծի սիրտը, ուրախության միջից արտասվում այրող ցավից: Պատերազմական տարիների նրա բարձրաթռիչ հայրենասիրական պոեզիան, որ դղրդում էր «փուգասային ռումբի ուժով», գնդեր տանում գրոհի, տեղի է տվել ներհուն խոհին: Բանաստեղծը փորձում է հանրագումարի բերել, ամփոփել մեր ժողովրդի կյանքի այդ կարճատև, բայց խիստ հագեցած փուլը, պատերազմի հաղթական ավարտի մեջ տեսնելով ժողովրդի բոլոր՝ և՛ հոգեկան, և՛ ֆիզիկական, և՛ մտավոր ուժերի արդյունքը:

Գուրգեն Բորյանը ևս ձգտում է թափանցել երևույթի էության խորքերը, բացել այն մեծ խորհուրդը, որ ամփոփում է իր մեջ հաղթանակի գարունը.

*Բայց ե՞րբ է եղել գարունն այսքան զմայլելի,*
*Այսքան չնաշխարհիկ և խորախորհուրդ այսքան...*

Հաղթանակի բերկրանքը նրա մոտ շաղախված է մեծ վշտով ու կսկիծով.

*Որքա՜ն արյուն թափեցինք այս մայիսի համար,*
*Որքա՜ն արցունք, որ կարծես ցող լինի լուսաբացի։*

Սակայն այս ծանր վիշտը տիրապետող չի դառնում, այն փարատվում է լավատեսական, հումանիստական տրամադրություններով, և ռազմիկ բանաստեղծը հաղթանակի գարնան մեջ տեսնում է նոր՝ խաղաղ հաղթանակների բողբոջումը.

*Սերմնացաններ գարնան, սերմնացաններ ազատության առավոտի,*
*Թող օրհնված լինի ձեռքը ձեր և գործը պայծառանուն,*
*Ցանեցեք մեր արդար և սուրբ սերմերը արևահատիկ,*
*Որ հավերժական լինի մայիսը աշխարհում։*

Մեծ հաղթանակին նվիրված բանաստեղծությունները անցնում են մի քանի տասնյակից. դրանց բոլորի մասին դժվար է խոսել մեկ առ մեկ, և հազիվ թե դրա անհրաժեշտությունը կա այստեղ: Բայց այդ շարքում կան երկու բանաստեղծություններ, որոնք շրջանցելն անհնար է, որոնք չի կարելի չհիշել Հայրենական մեծ պատերազմի գրականությանն անդրադառնալիս: Դրանցից մեկը հայ գրականության նահապետի գրչի արգասիքն է (*Մեծ հաղթանակի օրը*), մյուսը՝ երգը շուրթերին, կովկասյան նախալեռներից թեժ մարտերով Բեռլին հասած երիտասարդ բանաստեղծի (*Հաղթանակի պարը*): Այս բանաստեղծությունները մյուսներից տարբերվում են ո՛չ միայն արտաքին ժանրային հատկանիշներով (երկուսն էլ էպիկական կտավի փոքրածավալ ստեղծագործություններ են, սյուժետային հենքով), այլ՝ բանաստեղծական խորքով, ժողովրդի հոգու ամենախոր շերտերը բացելու, ազգային համահավաք բնավորություն կերտելու առանձնահատկությամբ: *Հաղթանակի պարը* հասունացել է պատերազմական չորս տարիների մարտական կենսագրությամբ մի ժողովրդի, որն իր ծննդյան օրից մաքառումով ու պայքարով է նվաճել ապրելու, գոյատևելու իրավունքը: Հեղինակը նույնպես այս ստեղծագործությանը նախապատրաստվել էր իր ողջ կյանքում: Արշալույս Սարոյանի մտապատկերներում և ստեղծագործություններում հայրենիքի կերպարն ու հաղթանակի հավատն ապրում էին կողք-կողքի և երբեք չլքեցին նրան: Նրա դեռևս անվարժ գրչով գրված գրական առաջին թոթովանքներից՝ պատերազմ մեկնող զինվորի հրաժեշտից՝ *Մնաք բարով*-ից (1941 թ.) մինչև՝ *Հաղթանակի պարը* (1945 թ.) ամենուր հառնում են ժողովրդի լավատեսությունն ու հումանիստական ոգին, հայրենիքի համար կռվելու և հաղթելու անկոտրում կամքն ու հավատը:

*Հաղթանակի պարը* միանգամից խոսեց ժողովրդի սրտի հետ և ճանաչում բերեց նրա երիտասարդ հեղինակին: Ի՞նչ էր պատահել: Չէ՛ որ պարի միջոցով մեր ժողովրդի հոգեկան կերպարի բացահայտումը գրականության մեջ Սարոյանի ո՛չ հայտնագործությունն էր և ոչ էլ մենաշնորհը: Հայ ժողովրդի կրակոտ, բուռն խառնվածքով առնական պարերը դեռևս իր ժամանակին գրավել էին Մաքսիմ Գորկու ուշադրությունը: Մեծ հայրենականի տարիներին գեղարվեստական այդ հնարանքին դիմեց նաև Նաիրի Զարյանը *Անմահության պարը* պոեմում: Ուրեմն ո՞րն է Սարոյանի այս ստեղծագործության գաղտնիքը: Այն գաղտնիք չունի: Պարզապես շատ է կենդանի միջավայրը, շատ խորն է ապրված զգացումը, շատ է փարատիչ

տրամադրությունը, և ջինջ հույզերի մեջ ժողովրդի հոգու խորքերն են բացվում: Կոնկրետ է այս բանաստեղծության ատաղձը. 89-րդ հայկական Թամանյան դիվիզիայի մարտիկները հաղթանակի օրը Բեռլինում պարում էին քոչարի: Ամենասովորական թվացող այս փաստը բանաստեղծության մեջ ծառայել է ժողովրդի ազգային կերպարի՝ հումանիստական ոգու, հայրենիքն ապրեցնելու անկոտրում հավատի, մաքառման մեծ ուժի բացահայտմանը: Հաղթանակի պարը գրվել է 1945 թ. մայիսին, Բեռլինում, մահեր տեսած ու մահեր հաղթած, մեկ օրվա մեջ բարեկամացած և մեկ օրվա մեջ կորցրած հարազատների մահվան կսկիծն անթեղած զինվոր բանաստեղծի ձեռքով: Երիտասարդ հեղինակը զարմանալի դյուրությամբ է անում սովորականի և արտասովորի, առօրեականի և հերոսականի, ներկայի և դարավոր-ավանդականի իմաստային, գեղարվեստական հաշվեկշիռը, և ստեղծվում է պատկերամտածողական մի կուռ շղթա՝ հարափոփոխ շեշտերով ու ներթափանցումներով: Հայ ժողովրդի համար ավանդական, մեր լեռնաշխարհում ամենուր պարվող քոչարի և հանկարծ՝ Բեռլինի սալահատակը թնդացնող քոչարի: Հայկական տոնախմբությունների, հարսանիքների ու խրախճանքների ժամանակ պարվող ավանդական քոչարի և մեծ հաղթանակի սալյուտ քոչարի: Արտասովո՞ր է այդ, այո՛, բայց և սովորական: Այդ հաղթանա՛կն էլ, հաղթանակի պա՛րն էլ օրինաչափ են մեր ժողովրդի համար. «Այդ պարն էին պարում մի օր, երբ հաղթել էր Հայկը Բելին»:

Այո՛, սովորական հրաշք է սա, ժողովրդի ազատատենչ ոգու օրինաչափ բոցավառում: Սովորականի մեջ արտասովորը շեշտելու համար գրողը պատկերային ռեալիստական համակարգի մեջ հանկարծ մի ռոմանտիկ շունչ է փչում՝ աստղային, արևային համեմատություններով, մարդեղենացնում երկնային լուսատուներին: Մի կողմից հաղթանակած հողածինների հրեղեն պարը, մյուս կողմից՝ այդ պարը հողեղենի ինքնամոռաց զմայլանքով դիտող հրեղեն, հուրհեր արևը: Արևի կերպարը մուծելով բանաստեղծության ռեալիստական հենքի մեջ, մի կողմից շեշտում է երևույթի արտասովորությունը, մյուս կողմից՝ պատերազմական արհավիրքների հետևանքով կիսաքանդված պատի միջոցով (նա հենված է այդ պատին) կապվում է կոնկրետ միջավայրին ու իրադրությանը, ինքն էլ ձեռք բերում սովորական հողեղենի հատկանիշներ, համեմատությունների դուռ բացելով հայ մարտիկների քաջագործությունների և մեծ հաղթանակի բնորոշման համար:

Մեծ վարպետը Սարոյանի մասին ասել է (1945 թ.). «Սա ուրիշ բանաստեղծ է, պատերազմ տեսած բանաստեղծ, մահվան հետ կողք-կողքի ապրած և մահից խուսափած բանաստեղծ»: Եվ այս մահեր տեսած բանաստեղծն այնպես է երգում կյանքի հիմնը, կարծես մահվան գաղափարին անգամ ծանոթ չէ.

*Ճակատների կնճիռներում*
*Փոշին՝ կալի դրոշմը սև,*
*Հենց բեռլինյան մի փողոցում*
*Հավաքվեցին մի խումբ հայեր:*
*. . . . . . . . . . . .*
*Ուստա Կարոն փչեց զուռնեն...*
*Ու դհոլի ձայնը թնդաց,*
*Մեղմ ժպտալով շրջան մտան*
*Կարինները հաղթանակած...*
*Պարում էին այնպես ուժգին,*
*Այնպես թափո՛վ, շնդալից,*
*Որ թվում էր ոտքով էլ են*
*Հաղթանակի սալյուտ տալիս:*

Բանաստեղծ Սարոյանի կյանքի և մահվան ընկալումները սերում են հարազատ ժողովրդի կյանքի խոր ակունքներից, նույնանում նրա հումանիստական, լավատեսական ընկալումներին: Նա մահվան միջից տեսնում է կյանքի հաղթանակը: Վարպետի «Ինչպիսի՞ն էր մահը այնտեղ, պատերազմի դաշտում» հարցին երիտասարդ բանաստեղծը պատասխանել է. «Ես տեսել եմ, թե ինչպես տանկի թրթուրների տակ ճզմվել է խոտը ու հետո նորից է բարձրացել, ուղղվել, նորից կանգնել է քամու դեմ, ինչպես վիրավոր զինվորն է գրոհի ժամանակ ոտքի ելնում: Ես տեսել եմ, թե ինչպես է կաղնին իր ճյուղերին երգող թռչուններով, կեղևի տակ ապրող մրջյուններով տապալվել արկի հարվածից: Երբ տապալվել, ընկել է, թռչունները մի պահ լռել, ապա նորից են եկել ու սկսել են երգել ընկած ծառի սաղարթների մեջ: Այդ կաղնին մեր խրամատի եզրին էր: Դեռ այն ժամանակ որոշել էի այս մասին բանաստեղծություն գրել, երևի կգրեմ»: Առանձին բանաստեղծություն... Նրա ողջ ստեղծագործությունը, այդ թվում և Հաղթանակի պարը բանաստեղծությունը այն հավերժող կաղնու, սովետական հզոր հայրենիքի մասին է, մահվան դեմ կյանքի տարած հաղթանակի մասին:

Պատերազմի և խաղաղության, կյանքի և մահվան այս ընկալումները ավելի մեծ խորքով երևացին Ավետիք Իսահակյանի Մեծ հաղթանակի օրը բանաստեղծության մեջ: Այն գրվել է պատերազմի ավարտից ամիսներ անց, երբ հաղթանակի բերկրա՛նքն էլ, կորուստների ցա՛վն էլ խոր նստվածք էին տվել բանաստեղծի հոգում, զուլալվել հախուռն զգացմունքները: Կյանքի փորձով իմաստնացած բանաստեղծը, վաստակած աշխատավորի նման, կարծես սրբում է ճակատի քրտինքը, խաղաղ հպարտությամբ նայելով իր և իր ժողովրդի արդար վաստակին.

*Մեր սուրը փառքով դրեցինք պատյան,—*
*Մեծ հաղթանակի օրն է ցնծալից,*
*Պարտվեց մահաշունչ ոսոխը դաժան,*
*Երգեր են հորդում զվարթ սրտերից:*

Հենց այս առաջին քառատողում աֆորիզմի խտությամբ ու հակիրճությամբ տրված է ամբողջ մի էպոխայի գեղարվեստական ճշմարտացի պատկերը: Սակայն բանաստեղծին հետաքրքրում է ո՛չ միայն երևույթի ընդհանուր պատմափիլիսոփայական կողմը: Նա վեր է հանում ժողովրդի հոգեկան խառնվածքի, ազգային բնավորության բնորոշ գծերը՝ ուրախանալու և աշխարհի հետ իր բերկրանքը կիսելու ավանդական սովորություններով: Ուրախությունն էլ, կորուստների ցավն էլ այստեղ յուրովի են դրսևորվում.

*Եվ անցորդներին կանչում է, խնդրում,—*
*Եղբայրնե՛ր, որդուս կենացը խմեք,*
*Հերոս է որդիս, հաղթեց թշնամուն,*
*Ձեր որդիների կենացն էլ խմեք:*

Այնքա՜ն կենդանի է ստեղծված պատկերը, այնքան կոնկրետ են բնավորությունները, որ ընթերցողին թվում է, թե ինքը տեսել է այս ամենը, նույնիսկ հիշում է: Երբ ժողովրդական ցնծությունն իր տարերքի մեջ է, «խմում են խինդով, ցնծում երջանիկ և զարկում նորից գավաթներն իրար», բանաստեղծը գրեթե աննկատելիորեն, գեղարվեստական նուրբ անցումով փոխում է տրամադրությունների հունը.

*Նրանց մեջ մի հայր ասում է մեղմիկ,—*
*Ես էլ իմ որդու հանգստյան համար:*

Անմիջապես լռում են ցնծության ձայները, մարդիկ դառնում են լրջախոհ ու մտահոգ, իսկույն հանում են գլխարկները, խոր ակնածանքով մի պահ լռում և ապա՝

*Խմում են անձայն զոհվածի համար*
*Եվ հեղում գինին սուրբ հացի վրա:*

Առաջին պահի կարող է թվալ, թե բանաստեղծությունն ավարտվում է տխուր շեշտերով և նույնիսկ ինչ-որ տեղ անավարտ է մնում. չէ՛ որ կյանքը չէր կարող կանգ առնել այդտեղ, այդ կետում: Ուշադիր ընթերցողը բանաստեղծության եզրափակիչ տողում, կենցաղային, ազգագրական մանրամասնի հետևում տեսնում է հաղթանակած ժողովրդի կյանքի խորհուրդը՝ սուրբ հացի պաշտամունքը. ասել է թե՝ կյանքի, խաղաղ աշխատանքի պաշտամունքը: Եվ ահա այստեղից, բանաստեղծության այս վերջնակետից թափ է առնում մտքի մի նոր շարժում, որը մոգական ուժով տանում է դեպի վարպետի արծարծած նոր խնդիրների ոլորտը. դա ո՛չ միայն հաղթանակի համար զոհվածների հիշատակի հարգանքն է, այլև՝ հավերժացումը ապրողների խաղաղ, ստեղծագործ աշխատանքով, այլև՝ այնքան թանկ զոհերի գնով ձեռք բերված խաղաղության պաշտպանությունն ու կյանքի վայելքը, մարդու և մարդկայնության հաղթանակի, մարդու ապրելու իրավունքի հաստատումը:

Հաղթանակին նվիրված ստեղծագործություններում փաստորեն ուրվագծվում են նաև հետպատերազմյան շրջանի գրականության հիմնական խնդիրները: Այդ երգերն իրենց արտահայտած գաղափարներով, տրամադրություններով ու հույզերով կամրջում են մեր գրականության զարգացման պատերազմական և հետպատերազմյան շրջանները, դառնալով խաղաղ օրերի գրականության առաջին ծիծեռնակները:

Մեր սուրը փառքով դրեցինք պատյան, բայց ոչ դափնե պսակների վրա ննջելու համար: Երեկվա մարտիկին սպասում էին նորանոր սխրագործություններ՝ խաղաղ աշխատանքային ճակատներում: Նրա հերոսական ջանքերով երկիրը բուժեց իր խոր վերքերը, խամ ու խոպանները ծաղկած այգեստանների ու բերքառատ դաշտերի փոխարկվեցին: Սովետական ժողովրդի հանճարով նա թռավ աստղային հեռուները, Հայրենիքի ուժի ու հզորության նորանոր երակներ հայտնագործեց: Ավագների կողքին իր աշխատանքային կենսագրությունն սկսեց խաղաղության սերունդը, որ պատերազմի մասին գիտե միայն գրքերից, կինոֆիլմերից ու մեծահասակների պատմածներից: Հետպատերազմյան տարիների գրականությունն էլ այժմ հիմնականում աշխատանքային սխրանքների երգեր է հնչեցնում:

Մեծ հայրենականի էպոպեան մեր գրողների ու արվեստագետների նվիրական թեմաներից է: Եվ այսօր էլ տասնամյակների բարձրունքից ստեղծվում են գեղարվեստական նորանոր գործեր, որտեղ մեծ շնչով ու հոգեբանական խորությամբ պատկերվում են սովետական ժողովրդի այդ ահեղ փորձության դրվագները, մարդկանց ճակատագրերը:

Մեծ հայրենականի գեղարվեստական տարեգրությունը սովետական մարդկանց ռազմահայրենասիրական դաստիարակության կարևոր միջոց է, նրանց համակում է հայրենասիրության վսեմ հույզերով, տոգորում հարազատ հողը՝ մեր հինավուրց մոլորակը անամպ պահպանելու վճռականությամբ:

# ԷՋԵՐ ՎԵՐԱՊՐԱԾԻՑ*

**Գ. Հ. ՍԱՀԱԿՅԱՆ**
409-րդ դիվիզիայի 964-րդ հրետանային գնդի նախկին կուսկազմակերպիչ

1943 թվականի մարտ ամիսն էր:

Հայկական 409-րդ դիվիզիան, թեժ մարտեր մղելով, կարմիր բանակի այլ զորամիավորումների հետ մեկտեղ մասնակցելով Մոզդոկ, Գեորգիևսկ, Միներալնիե Վոդի, Արմավիր, Կրասնոդար քաղաքների ազատագրմանը, ազատագրելով Կուբանի Ուստ-Լաբինսկ, Կորենովսկ, Մեդվեդևո, Կրասնոարմեյսկ շրջանային կենտրոնները, բազմաթիվ ստանիցաներ և բնակավայրեր, իր առաջին մարտական մկրտությունը ստացավ: Սակայն բազմաթիվ հաղթանակներից բացի մեր դիվիզիան այդ մարտերում նաև մարդկային խոշոր կորուստներ ունեցավ:

Հարկավոր էր կարճատև հանգիստ, մարդկային ուժերի և մարտական տեխնիկայի համալրում, նախապատրաստություն նոր, առավել դժվարին մարտեր մղելու համար: Երբ դիվիզիան դուրս եկավ մարտերից, կենտրոնացավ Ռոստովի մարզի Միլերովո քաղաքի շրջակայքի անտառներում:

Հանգիստը, մարդկային ուժերի, մարտական տեխնիկայի համալրումն ու մարտական-քաղաքական ուսուցումը տևեցին շուրջ երեք ամիս: Այդ ժամանակը դիվիզիայի հրամանատարությունն ու նրա քաղաքական ապարատը օգտագործեցին խելացի ձևով. նրանք մարտիկների և սպայակազմի ամենօրյա ռազմական-քաղաքական ուսուցմանը մարտական բնույթ հաղորդեցին:

Դիվիզիան Մոզդոկից—Կուբան անցած իր մարտական ճանապարհին արդեն ստեղծել էր իր պատմությունը ստորաբաժանումների և անվեհեր մարտիկների մասին:

Զորամիավորման սպայական կազմի, հատկապես նրա քաղաքական ապարատի գլխավոր խնդիրը դիվիզիան համալրողների գաղափարաքաղաքական կոփումն էր, որը հաջողությամբ էր իրականացվում արդեն ձեռք բերված մարտական փորձով: Եվ մեր դիվիզիայի ղեկավար կազմը պատվով կատարեց իր սրբազան դերը: Դիվիզիայի հրամանատարի քաղգծով տեղակալ, ավագ գումարտակային կոմիսար Արշալույս Հայրապետյանը, քաղբաժնի պետ Գևորգ Բաբլումյանը, գնդերի և ստորաբաժանումների քաղաքական և կուսակցական ապարատը խոշոր դեր խաղացին դիվիզիայի համալրման ու մարտականացման գործում:

Հանգստի և ուսուցման այդ երեք ամիսներին դիվիզիան ամբողջությամբ կերպարանափոխվեց, դարձավ առավել մարտունակ, կազմակերպված և ռազմունակ զորամիավորում: Եվ, վերջապես, դիվիզիան ստացավ նորագույն ռազմական տեխնիկա՝ հրացանները փոխվեցին ավտոմատներով, հին հրանոթները փոխարինվեցին ժամանակակից հրանոթներով, ստացվեցին կապի, ռադիոկապի, ականանետների նորագույն նմուշներ: Դիվիզիան դարձավ մանևրելու մեծ կարողություն ունեցող զորամիավորում:

Եվ ահա, 1943 թ. հուլիսին, իր ուժերի ու հաղթանակի նկատմամբ հավատով լի, մեր դիվիզիան շարժվեց դեպի արևմուտք: Առանց հանգիստ առնելու՝ մեր ստորաբաժանումները սրընթաց երթով անցան Հյուսիսային Դոնեց գետը և, կենտրոնանալով Զմեև քաղաքի անտառներում, պատրաստվեցին մարտական գործողությունների մեջ մտնելու Ռոստով—Լոզովայա—Խարկով երկաթգծի ուղղությամբ:

Թշնամու 355 հետևակային և «Ս» հեծյալ դիվիզիայի զորամասերն ամեն կերպ ցանկանում էին իրենց ձեռքում պահել Ռոստով—Լոզովայա—Խարկով երկաթգիծը, որպեսզի ապահովեին իրենց նահանջը: Դիվիզիան մարտական խնդիր էր ստացել երկաթգծի այդ հատվածում՝ փոխարինել 353 և 393 հետևակային դիվիզիաներին և նախապատրաստվել մարտական գործողությունների:

Դիվիզիայի զորամասերը, մարտական առաջադրանքի համաձայն, կենտրոնանում էին իրենց համար նախատեսված մարտագծերի շրջանում, ծանոթանում էին տեղանքին, ուսումնասիրում հակառակորդի պաշտպանական գծից այն կողմ եղած իրադրությունը, երկարատև սրընթաց երթից հետո համալրվում ռազմական հանդերձանքով, հնարավորին չափ քողարկվում՝ թշնամուց աննկատ մնալու համար:

Զմեև քաղաքի անտառների կանաչ ծածկի տակ էին տեղավորված նաև դիվիզիայի և գնդերի շտաբները, թիկունքային ստորաբաժանումները, բժշկասանիտարական գումարտակը: Այնտեղ էր գտնվում և մեր հրետանային գնդի շտաբը:

Օգոստոսի 25-ին մեր հրետանային գնդի շտաբ եկավ դիվիզիայի կուսակցական հանձնաժողովի պատասխանատու քարտուղար Մկրտիչ Թադևոսի Գույլյանը՝ բնավորությամբ հանգիստ, մշտապես հմայիչ ժպիտը դեմքին, զինվորական գեղեցիկ կեցվածքով մի մարդ: Նրա հետ գնացինք հրետանային մարտկոցներում կուսակցության մեջ ընդունվողների հետ զրույց ունենալու և նախապատրաստելու նրանց ընդունելության հարցերը՝ դիվիզիայի կուսակցական հանձնաժողովի հերթական նիստում քննելու համար: Փորձված կուսակցական-քաղաքական աշխատողը, առանձնահատուկ սիրով և կրքոտությամբ էր կատարում իր պարտականությունները: Նա արհամարհելով մահը՝ համարյա ամեն օր իր ժամանակն անց էր կացնում գնդերում և ստորաբաժանումներում, գումարտակների, դիվիզիոնների, վաշտերի և մարտկոցների կուսակցական կազմակերպություններում: Առաջավոր գծերում, խրամատներում և մարտի դաշտի ժամերին ծանոթանում էր կուսակցության շարքերն ընդունվել ցանկացող ամեն մի զինվորի և սպայի հետ, ստուգում նրանց պատրաստականությունը, մարտերի ընթացքում անձամբ համոզվում նրանցից յուրաքանչյուրի մարտական արժանիքներում:

Մոտ ժամը 11-ին մենք գնդի շտաբից դուրս եկանք և անտառի կեռմաններով ճանապարհ ընկանք դեպի երկաթուղային Բեսպալովկա կայարան, որտեղ մարտական կարգ պետք է գրավեին հրետանային գնդի առաջին դիվիզիոնի մարտկոցները: Անտառն արդեն վերջացել էր, մենք քայլում էինք հնձած ցորենի հարթ արտերի միջով: Գերմանացիներից մեզ բաժանում էր երկաթգծի բարձր հողաթումբը: Մենք շարժվում էինք առաջ՝ դեպի մարտկոցները: Օգոստոսյան պայծառ առավոտ էր: Ուկրաինական արևն իր ջերմ ճառագայթներն էր սփռել դաշտ ու անտառի վրա: Ամեն ինչ խաղաղ էր: Օրվա անդորրը միայն ճախրող թռչուններն էին խախտում իրենց դայլայլով:

Այն պահին ահա, երբ ես ու իմ զրուցակից Մկրտիչ Գույլյանը մտքով սավառնում էինք հայկական բնաշխարհով, օդը լցվեց սարսափելի աղմուկով: Մեր գլխի վրայով դեպի թշնամու կրակակետերը թռչող կրակե լավան ջերմացրեց օգոստոսյան առանց այն էլ տաք երկինքը, անտառից բարձրացող փոշու թանձր շերտը ծածկեց արևի ջինջ ճառագայթները: Մենք գամվեցինք հողին: Մեզ թվաց, թե քիչ հեռու գետինն է պատռվել և այնտեղից դուրս թափվող կրակի շերտերն են ահավոր աղմուկով տարածվում մեր գլխավերևում: Սակայն դա ոչ թե հակառակորդի ռմբակոծության աղմուկն էր, այլ փառաբանված մեր «Կատյուշայի» կրակը, որը ո՛չ միայն բնաջնջում էր թշնամու կրակակետերն ու ամրությունները, այլև խորապես բարոյալքում ֆաշիստներին: Որպես պատասխան այդ ահավոր ռմբակոծության, նրանք օդ բարձրացրին իրենց ավիացիան և խոր թիկունքից գործի դրեցին հեռահար հրետանին:

Այդ օրը, մինչև առաջին գիծ հասնելը, մենք ընկնում էինք մեկ մեր, մեկ թշնամու կրակի տակ: Վերջապես հասանք մեր մարտկոցների դասավորությանը: Փոխգնդապետ Գույլյանի տրամադրությունը բարձր էր: Նա գոհ մնաց մեր կուսկազմակերպության գործունեությունից: Քաջարի և ազնիվ մարտիկներ էինք ընդունել կուսակցության շարքերը, մարդիկ, որոնք ուկրաինական հողը ֆաշիստական հորդաներից ազատագրելու կռիվներում բարձր էին պահում հայ ժողովրդի պատիվը:

Մայրամուտ էր, երբ հասանք անտառի եզրը: Պետք է բաժանվեինք: Գնդի շտաբում ես հանդիպեցի լարված իրադրության: Բանակի հետախուզության տվյալների համաձայն, գիշերվա ընթացքում հակառակորդի մեծաթիվ ինքնաթիռներ պետք է ռմբակոծեին Զմեևի անտառը, այդ պատճառով կարգադրված էր թիկունքային և շտաբային բոլոր ստորաբաժանումներին խոր կերպով արագորեն խրամատավորվել, նախապատրաստել պահեստային խրամատներ և անցումներ մեկ խրամատից մյուսը, հողի մեջ թաղել ռազմական տեխնիկայի, զինվորական հանդերձանքի և տրանսպորտի բոլոր միջոցները, ինչպես նաև քաշող ուժը:

Բարձրագույն հրամանատարության ցուցումով ինչպես մարտակարգերում, այնպես էլ անտառում շարունակվում էր խոր խրամատավորման աշխատանքը: Մարդիկ բահում էին և կատակում, աշխատում և սպասում ուր որ է լսվող տագնապի ազդանշանին: Երկրորդ գիշերը մինչև լուսաբաց անտառում ամեն ինչ

* *Սկիզբը տես* Լենինյան ուղիով *ամսագիր, 1980 թ., № 5: ԽՄԲ.:*

դարձյալ խաղաղ էր: Քնած էին մարդիկ, քնած էին և անտառի մշտական բնակիչները՝ այնտեղ ապրող կենդանիներն ու թռչունները: Արթուն էին միայն ծառայություն կատարող շտաբային սպաներն ու ժամապահ զինվորները: Շուտով արթուն զինվորների ականջին է հասնում արևմուտքից մոտեցող անսովոր աղմուկը, հետզհետե օդը լցվում է շարժիչների ձայնով, որին խառնվում է ստորաբաժանումների և զորամիավորումների տագնապի ազդանշանների ձայնը: Ամեն մեկն իր մարտատեղն է շտապում, աշխատում հարմարավետ տեղավորվել արդեն պատրաստի խրամատներում:

Գերմանական ռմբակոծիչները տասնյակների բաժանված, միմյանցից հավասար հեռավորության վրա ալիք-ալիք մոտենալով, մեծ արագությամբ իջնում են անտառի վրա: Անտառի տարբեր ծայրերից սկսում են գործել մեր զենիթային հրանոթներն ու գնդացիրները: Սկսվում է ռմբակոծությունը: Երկնակամարը ծածկվում է փոշու ամպերով: Ընկնում են մարդիկ, այրվում է հողը, այրվում է անտառը, բայց հաստատ, շատ հաստատ է մնում սովետական զինվորի հավատը: Շուրջ 2 ժամյա օդային մարտից հետո անվնաս մնացած գերմանական ինքնաթիռները անհետացան դեպի արևմուտք:

Դա 1943 թվականի օգոստոսի 27-ի լուսաբացն էր:

Ռմբակոծությունից հետո հանձնարարվեց հավաքել, հողին հանձնել զոհվածներին, տեղափոխել վիրավորներին, հաշվել մարդկային և նյութական կորուստները:

Առավոտյան ժամը 10—11-ի սահմաններում մի մեծ ծառի բնին հենված՝ սպասում էի գնդի շտաբի հաղորդմանը, որպեսզի այդ օրվա քաղաքական զեկույցը կազմեի դիվիզիայի քաղբաժին ուղարկելու համար: Իմ կողքով անցան գնդի հրամանատար, մայոր Սարգիս Ղազարյանը, նրա համհարզ Գևորգյանը, հետախույզ Ծպնեցյանը: Զերբազերծվելով մտքերից, հարցրի հրամանատարին, թե ո՞ւր են գնում և արդյոք ես չե՞մ կարող ուղեկից լինել իրենց ու առանց պատասխանի սպասելու՝ տեղիցս վեր կացա և միացա նրանց:

— Մեզ օգնության եկած հարևան ադրբեջանական դիվիզիայի հրետանային դիվիզիոնի մարտակարգերը լուսաբացի ռմբակոծության ժամանակ մեծ կորուստներ են կրել, ուզում եմ այնտեղ լինել,— ասաց Ղազարյանը:

— Առանց քաղաքական աշխատողի՝ այդպիսի այց չեն կատարում, ընկեր մայոր,— կատակեցի ես:

— Քաղաքական գծով տեղակալիս համաձայնությունը ունեմ,— լրացրեց հրամանատարը:

— Նա բացակայում է, իսկ նրան փոխարինողը ես եմ, ընկեր մայոր, խնդրում եմ ձեր համաձայնությունը:

— Դե լավ,— ասաց գնդի հրամանատարը:

Եվ մենք միասին շարունակեցինք ճանապարհը:

Անտառը նոր էր մեր առաջ տարածում իր կանաչավուն եզրերը, որից հետո ճանապարհը պետք է շարունակեինք բաց տեղանքով: Գնդի հրամանատարն առաջարկեց մի փոքր հանգիստ առնել, ապա շարունակել ճանապարհը:

Նստեցինք թփերի տակ: Հազիվ էինք դադար առել, երբ օդում լսվեց ինքնաթիռների շարժիչների ձայնը:

Իսկ երբ ձայնն ավելի մոտեցավ, մենք կողմնորոշվեցինք, որ թշնամունն է:

Կատարվեց անսպասելին. մենք կրկին մնացինք դժոխային ռմբակոծության տակ: Գերմանական ինքնաթիռները մեր մարտակարգերը և անտառի շրջանը մուտք գործեցին մեր թիկունքի օդային տարածություններից. հասնելով մեր հետևակային գնդերի գրաված մարտակարգերի վրա՝ նրանք արագ շրջադարձ կատարեցին դեպի անտառը, սկսեցին բարձրությունից սլընթաց վայրէջք և անտառի եզրերից ռումբերը թափելով գնացին դեպի խորքը:

Երբ մենք հասկացանք՝ ի՞նչ տեղի ունեցավ, արդեն ուշ էր, թաքստոց փնտրելու ոչ մի հնարավորություն չկար: Այստեղ լսվեց գնդի հրամանատարի ձայնը,— պառկել հողի վրա: Մեզանից ամեն մեկը փռվեց հողին, ով որտեղ հասցրեց. միայն հետախույզ Ծպնեցյանը, չգիտես ինչու, որոշել էր բարձրանալ ծառը: Մենք առաջին անգամն էինք ընկնում ուղղակի ռմբակոծության տակ: Երբ գլուխներս հողից վեր բարձրացրինք, նկատեցինք արտասովոր իրողություն: Մենք գտնվում էինք եռանկյունու ձևով դասավորված երեք ահռելի ճեղքափոսերի միջև ընկած մի փոքր հողակտորի վրա, որոնցից յուրաքանչյուրի խորությունը կհավասարվեր առնվազն միհարկանի տան բարձրության:

Գնդի հրամանատարը, նրա համհարզը ու ես անվնաս էինք մնացել, հետախույզ Ծպնեցյանը, որ հողի վրա պառկելու փոխարեն ծառն էր բարձրացել, աջ ոտքի ազդրից թեթև վիրավորվել էր:

Մենք անհապաղ գործի անցանք: Գնդի հրամանատարն իր մոտ ունեցած սանիտարական ծրարը բացեց, մենք Գևորգյանի հետ Ծպնեցյանի ազդրից դուրս հանեցինք արկի փոքրիկ բեկորի կտորը, և նա իր ձեռքով կապեց մարտիկի վերքը:



Շուտով անտառի խորքը երկրորդ շրջադարձը կատարեցին թշնամու ինքնաթիռները: Այս անգամ էլ մեզ օգնեց գնդի հրամանատարի փորձը: Նա հրամայեց անմիջապես իջնել առաջին ռմբակոծությունից առաջացած ճեղքափոսերը: Մենք հազիվ էինք հասցրել այդտեղ տեղավորվել, երբ իրենց մահաբեր բեռից սկսեցին ձերբազատվել «Մեսսերշմիդտները»: Դրան անմիջապես հաջորդեց հակառակորդի ինքնաթիռների երրորդ, չորրորդ և, վերջապես, հինգերորդ շրջադարձը:

Այս անգամ օդային հարձակմանը մասնակցում էին թշնամու 50 ինքնաթիռ, որոնք տասնյակներով ալիքային հաջորդականությամբ կատարեցին հինգ շրջադարձ:

Անտառում և ռազմական գործողությունների այդ հատվածում տեղակայված մեր զորամասերը ինչպես մարդկային ուժերի, այնպես էլ ռազմական հանդերձանքի կորուստներ ունեցան: Աննկարագրելի այդ ռմբակոծություններից հետո ֆաշիստական ՍՍ զորամիավորումների մեր դեմ ելած ուժերը տանկերի և զրահապատ մեքենաների օգնությամբ օրական մի քանի անգամ անցնելով հակագրոհի՝ միշտ ետ էին շպրտվում մեծ կորուստներով: Մեր և հարևան դիվիզիաների ստորաբաժանումները, ամուր պաշտպանելով իրենց դիրքերը, թշնամուն չզիջեցին ոչ մի թիզ հող: Ռոստով—Լոզովայա—Խարկով երկաթգծի այդ հատվածում խափանվեցին թշնամու կոմունիկացիաները: Դիվիզիայի գնդերը, հարևան զորամիավորումների հետ միասին, ճեղքեցին հակառակորդի պաշտպանական գիծը և, լայն ճակատով շարունակելով հարձակումը, 1943 թվականի սեպտեմբերի վերջերին ազատագրելով Պետրովկա, Կուրիլովկա և մի շարք այլ գյուղեր՝ մարտերով դուրս եկան Դնեպրի հեռավոր մատույցները՝ Դնեպրոպետրովսկ, Դնեպրոձերժինսկ քաղաքների դիմաց:

Հատկապես կատաղի մարտեր տեղի ունեցան Տարանովկա խոշորագույն բնակավայրերի համար, որը մի քանի անգամ ձեռքից ձեռք անցավ: Տարանովկայի և նրա մոտակա բնակավայրերի ազատագրման համար մղված կռիվներում մասսայական հերոսություն և անօրինակ քաջություն դրսևորեցին դիվիզիայի հետևակային գնդերը, հրետանավորներն ու ականաձիգները, կապավորներն ու հետախույզները:

**ԵՐԿՐՈՐԴ ԱՆԳԱՄ** դիվիզիայի ռազմական գործողությունների մեջ մտնելուց անցել էր համարյա մեկ և կես ամիս: Արյան և կրակի ճամփաներով դիվիզիան մոտեցել էր Դնեպր գետի մատույցներին և պատրաստվում էր անցնել այն: Անհրաժեշտ էր հանրագումարի բերել մեկ և կես ամսվա հարձակողական կռիվների ընթացքում կուտակված գնդի կոմունիստների մարտական փորձը և նախապատրաստել կուսակցական կազմակերպությանը՝ նոր հետագա հարձակողական մարտերի համար:

Այդ նպատակով 1943 թ. սեպտեմբերի 30-ին գումարված կուսակցական ակտիվի ժողովում գնդի հրամանատար մայոր Սարգիս Ղազարյանի զեկուցման մեջ ասվեց, որ «անցած հարձակողական մարտերում հրամանատարության առաջադրած մարտական խնդիրները գունդը կատարել է պատվով, որի ընթացքում հատուկ դեր են խաղացել գնդի կոմունիստները: Թշնամուն հետապնդելու մարտերում դիվիզիոնների և մարտկոցների կուսկազմակերպությունները ու համարյա բոլոր կոմունիստները դրսևորեցին տոկունություն, քաջություն և հերոսություն»:

Այդ մարտերի ընթացքում կառավարական բարձր պարգևներ ստացան 134 մարդ, որից 44-ը՝ կոմունիստներ, 39-ը՝ կոմերիտականներ, այդ թվում կոմունիստներ, դիվիզիոնների հրամանատարներ Կոլիկը, Վեսելովոդսկին, Դավթյանը, մարտկոցների հրամանատարներ Մարտիկյանը, Մանասյանը, Խաչատրյանը, Մարութովը, շտաբային սպաներ Քարամյանը, Սողոմոնովը, հրանոթի հրամանատարներ Պողոսյանը, Հակոբյանը, Անանյանը, հատուկ ծառայության կապիտան Փիլոսյանը, կապավորներ Պողոսյանը, Խարիտոնովը և շատ ուրիշներ:

Կուսակցական ակտիվի ժողովը գոհունակությամբ արձանագրեց, որ այդ մարտերի ընթացքում գնդի կուսկազմակերպությունն աճեց 48 մարդով՝ ի հաշիվ լավագույն հրետանավորների, հրամանատարների ու քաղաշխատողների: Կուսակցական կազմակերպությունների ծավալած նպատակասլաց քաղաքական-դաստիարակչական աշխատանքի շնորհիվ գնդում չարձանագրվեց արտակարգ որևէ դեպք:

Դիվիզիայի կոմունիստները, կոմերիտականները, ողջ կուսակցական-քաղաքական ապարատը, մարտերի ընթացքում սոցիալիստական հայրենիքի նկատմամբ ազնիվ ծառայության անձնական օրինակով, մոբիլիզացնում էին ողջ անձնակազմին՝ հրամանատարության առաջադրանքները գերազանցորեն կատարելու համար:

Հետևակային 684-րդ գնդի 45 միլիմետրանոց հրանոթի հաշվարկը մարտկոցի կուսկազմակերպիչ Եվստաֆևի ղեկավարությամբ Տարանովկայի համար մղվող մարտերից մեկում ընկավ շատ վտանգավոր իրադրության մեջ: Թշնամու զինվորները, բոլոր կողմերից շրջանցելով հրանոթի հաշվարկը, փորձում էին

գերել նրան։ Հաշվարկն իրեն շրջապատող թշնամու վրա արձակեց 463 արկ։ Զինամթերքը վերջացավ։ Ֆաշիստական հինգ զինվորներ հարձակվեցին հրանոթի վրա, բայց մեր վեց հրետանավորներն իրենց չկորցնելով՝ կոմունիստ Եվստաֆևի կոչով բռնվեցին մարտի և ձեռքի նռնակներով ու ավտոմատային կրակով ոչնչացրին հակառակորդի խումբը։

Հետևակային 675-րդ գնդի երկրորդ գումարտակի վաշտերից մեկը այդ նույն Տարանովկայի համար մի ծանր մարտում պատրաստվում էր գրոհելու թշնամու դիրքերի վրա, սակայն նրանց խրամատների դիմաց գտնվող շենքի երկրորդ հարկի լուսամուտից տեղացող գնդացրային կրակը հնարավորություն չէր տալիս վաշտի մարտիկներին գլուխ բարձրացնելու։ Մարտիկները չէին կարողանում խրամատներից դուրս գալ, փողոցն անցնել և նետվել գրոհի։ Այդ պահին կոմերիտական գնդացրորդ Պոպովը բարձր ձայնով ասաց. «ի՞նչ եք նստել, այնտեղ բոլորը հարձակվում են, իսկ մենք չենք շարժվում, եկեք շարժվենք, ես կհարվածեմ լուսամուտին, որտեղից կրակում է գերմանական գնդացիրը...»։ Երբ Պոպովի գնդացիրն սկսեց գործել, թշնամական գնդացրի կրակը մի քանի վայրկյան դադարեց գործելուց։ Մեր մարտիկները, օգտվելով կրակի վայրկենական դադարից, խրամատներից դուրս թռան և անցան ճանապարհը։ Թշնամական գնդացրի կրակը այլևս չէր կարող արգելակել վաշտի առաջխաղացումը. այն տունը, որտեղից գնդացրային կրակ էր տեղում վաշտի մարտիկների վրա, առաջինը ներխուժեց կոմունիստ զինվոր Ալեքսանդր Պետրովիչ Ֆիլչինը։ Ձեռքի նռնակը նետելով՝ նա միանգամից ոչնչացրեց գերմանական չորս և գերեց երեք զինվոր։ Ֆիլչինի այս հերոսության լուրն անմիջապես տարածվեց շենքի երկրորդ հարկում կռվող մարտիկների շրջանում, որոնք արագորեն ոչնչացրին գերմանական գնդացրի հաշվարկը։ Այդ վաշտի խիզախների՝ Պոպովի և Ֆիլչինի, օրինակով գնդի երկրորդ գումարտակը փողոցային մարտերով գյուղից դուրս քշեց թշնամուն։

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ահեղ օրերն էին, երբ ֆաշիստական հորդաները Դնեպր գետը դարձրել էին պաշտպանության անառիկ ամրոց, այն կոչելով «Արևելյան պատնեշ»։ Ռազմաճակատի այդ հատվածում ցույց տալով կատաղի դիմադրություն, նրանք ամեն ինչ անում էին՝ կասեցնելու մեր զորքերի սրընթաց հարձակումը։

Լայնածավալ գետի մատույցները վերցված էին ամուր պաշտպանության տակ։ Թշնամին առաջ շարժվող մեր զորամասերի վրա կործանիչ կրակ էր թափում գետի աջ և ձախ ափերում կառուցած իր ամրություններից։ Ինչքան մեր զորքերը մոտենում էին գետափին, այնքան առաջխաղացումը դժվարանում էր։ Ամեն մի թիզ հողի ազատագրումը պահանջում էր մարդկային նոր զոհեր։ Ստեղծված իրադրության պայմաններում վճռող էր հրետանու դերը։ Պետք էր ոչնչացնել թշնամու ամրացված գծում գործող կրակակետերը, որոնք հնարավորություն չէին տալիս մեր զորամասերին առաջ ընթանալու։ Ահա այստեղ ամբողջ ուժով գործի դրվեց մայոր Ս. Ղազարյանի հրետանային գունդը։ Հրետանային պատրաստությունը տևեց համարյա մեկ ժամ։ Երբ տրվեցին վերջին համազարկերը, ֆաշիստական հորդաների ձախափնյա ամրոցները ոչնչացված էին, և մեր հետևակը, բնաջնջելով նահանջող թշնամու առանձին կրակակետեր, հուժկու թափով ընթացավ դեպի Դնեպր գետը։

Ղազարյանի հրետանավորները ոչ մի քայլ ետ չմնացին հետևակից։ Հայրենական պատերազմի բովով անցած փորձառու հրետանավորը շատ լավ գիտեր, որ հարձակվող հետևակին չի կարելի թողնել առանց հրետանու, առանց այն հզոր ուժի, որից այդչափ սարսափում էին հիտլերականները։ Իրիկնապահին մերոնք հասան փրփրաբաշ Դնեպրին և ամրացան նրա ձախ ափին։ Մեր զորքերի առջև հրամայական խնդիր էր դրված՝ կոտրել թշնամու կատաղի դիմադրությունը, անցնել գետը։ Ծանր և դժվարին խնդիր։ Թշնամին օգտվելով գետի աջ ափի առավել նպաստավոր բնական դիրքից, ուժեղ կրակի տակ էր պահում մեր մարտակարգերը։ Մեր ամենափոքր շարժումն անգամ նա նկատում էր։

Հարկավոր էր դրսևորել ռազմական հնարամտություն, տեղանքից վարպետորեն օգտվելու կարողություն, մարդկային ուժի և ռազմական տեխնիկայի քիչ կորուստներ տալով անցնել լայնածավալ գետը և կառչել աջափնյա ուկրաինական մի հողակտորից, ապա կյանքի և արյան գնով պահպանել ու լայնացնել գրաված հողակտորը, պայմաններ ստեղծել մեր զորքերի մասսայական գետանցի համար։ Մեր դիմաց կանգնած էին արդյունաբերական խոշորագույն կենտրոններ Դնեպրոպետրովսկն ու Դնեպրոձերժինսկը՝ ազատագրման սպասող մեր հայրենակիցներով։ Հարկավոր էր քաղաքների ազատագրումը կատարել անհետաձգելի արագությամբ, կանխել թշնամուն, թույլ չտալ, որպեսզի ոչնչացվեն դեռևս գործող ձեռնարկությունները, դպրոցները, հիվանդանոցները, բնակելի և այլ շենքերն ու օբյեկտները։

Ռազմական այդպիսի բարդ իրադրության պայմաններում, այդչափ ծանր, բայց սրբազան պարտականությունը բաժին ընկավ մեր՝ 409-րդ



հայկական հրաձգային դիվիզիային։ Դա 1943 թ. հոկտեմբերի վերջին օրերն էին։ Դիվիզիայի, առանց բացառության, ողջ անձնակազմը համակված էր մեկ վեհ նպատակով՝ ժամ առաջ կատարել մարտական առաջադրանքը։

Սակայն թշնամին իր դիրքային առավելությունների շնորհիվ դեռ դիմադրում էր։

Հարկավոր էր գործադրել ռազմական գործողություններ վարելու մեծ արվեստ, ավելի քիչ մարդկային ուժերի և ռազմական տեխնիկայի կորստով կոտրել թշնամու դիմադրությունը, ոչնչացնել կրակակետերը, անցնել գետը, սկիզբ դնել Աջափնյա Ուկրաինայի ազատագրմանը։

Դիվիզիայի հրամանատարությունը խելամտորեն մոլորեցրեց թշնամուն, խափանեց նրա պլանի գործադրումը։ Օգտագործելով տեղանքը, գետի ձախ ափին մեզ շրջապատող ծառերն ու թփուտները, հրետանին մոտեցվեց գետին, խրամատավորվեցին գետանցին մասնակցող բոլոր ստորաբաժանումները, ստեղծվեցին ականանետային և գնդացրային հատուկ կրակակետեր։ Դիվիզիայի սակրավորները նախապատրաստեցին գետանցին անհրաժեշտ բոլոր պարագաները։ Կազմակերպվեց թշնամու կրակակետերի դասավորության հայտնաբերումն ու ուսումնասիրությունը։ Բանակի հետախուզության տվյալների հիման վրա, դիվիզիայի անձնակազմին լրիվ չափով տեղեկացվեց թշնամու պաշտպանական գծի խորության, նրա գլխավոր և երկրորդային ուժերի առկայության մասին։ Դիվիզիայի քաղաքական ապարատը առավել ջանաց մարտական խնդրի բարդության և պատասխանատվության մասին իրազեկ դարձնել բոլորին, տոգորեց նրանց անձնուրաց խիզախությամբ։

Ամեն ինչ արվում էր, որպեսզի գիշերվա ընթացքում իրականացվեր մարտական հրամանի կատարումը։ Գիշերը մոտենում էր իր երկրորդ կեսին։ Գետափի հրամանատարական կետերում էին հավաքվել դիվիզիայի, գնդերի, ստորաբաժանումների հրամանատարները։

Գետափին էր նաև մայոր Ղազարյանը։ Նա իր մոտ կանչեց դիվիզիոնների հրամանատարներին, ասելով. «Հրամայված է այս գիշեր անցնել Դնեպրը և ամրանալ աջ ափին։ Մեր խնդիրն է՝ ոչնչացնել հակառակորդի կրակակետերը Ա գյուղի ծայրում, կրակի տակ պահել №№ բարձունքները»։ Ամեն մեկին իր խնդիրը բացատրելուց հետո, մայորը հրամայեց պատրաստ լինել նշանակված ժամին կրակ տեղալու թշնամու դիրքերի վրա։

Խնդիրը լուրջ էր, ժամանակը կարճ, հարկավոր էր լարել ուժերը։

Մայորը աչքը չէր հեռացնում Դնեպրից։ Նա հիշում էր այն հեռու, փոքրիկ գետը, որի ափերին անցել էին նրա մանկությունն ու պատանեկությունը, հիշում էր նրա ձախ ափին ընկած իր հայրենի գյուղը, Շիրակի դաշտերը, Արագածն ու նրա շուրջը խոյացող լեռները, որոնք այսօր իրենց հեռավոր բարձունքներից ողջունում էին պեհեր Դնեպրին՝ նրա ազատագրման նախօրեին։

Ձնայած գիշերվա խավարը ծածկում էր մեր հետևակի գործողությունը, բայց թշնամին քնած չէր։ Նավակները դեռ նոր էին անցել մի քանի մետր, երբ նա ուժեղ կրակ բացեց նավակների վրա և փակեց ճանապարհը։ Բայց թշնամին չգիտեր մեր հրամանատարության մշակած պլանը։ Մի քանի հարյուր մետր այն կողմ իրար հաջորդում էին նավակները, և գիշերվա լռությունը ոչնչով չխախտող մեր զորքերի անսպասելի անցումը գետի աջ ափը գերմանացիների համար մնաց աննկատ։

Զինվորները լայնածավալ գետն անցնելու համար օգտագործում էին գերաններ, արմատից հանված ծառեր, դատարկ տակառներ, ձգված պարաններ, այն ամենը, ինչ նրանց կարող էր պահել ջրի երեսը։

Բոլոր մարտկոցները շարունակում էին իրենց համաչափ «երաժշտությունը»։ Հանկարծ լռություն տիրեց, մայորի դեմքը դարձավ ահարկու և զուսպ, նա անհամբեր սպասում էր իր հրանոթների նոր դղրդյունին։ Մի քանի վայրկյան ևս, և թիկունքից կրկին լսվեց հրետանային ահեղ դղրդոցը։ Եվ գետի աջ ափին նշանակետը կորավ ծխի, փոշու և բարձրացող բոցի լեզվակների մեջ։

— Ճիշտ է, կրա՜կ,— նորից հնչեց մայորի հաստատ ու վճռական ձայնը։— Հաղորդեցեք դիվիզիոններին՝ թող այդ նշանակետերով շարունակեն կրակը։

Արդեն կես ժամ էր, ինչ կործանիչ ու մահաբեր արկերը թափվում էին թշնամու գլխին։ Դնեպրը արձագանքում էր Ղազարյանի հրետանային արկերի դղրդոցին։ Լարված րոպեներ, որոնք պետք է որոշեին գիշերային մարտի ելքը։

Կրկին հնչեց Ղազարյանի ձայնը,— կրակը տեղափոխել թշնամու թիկունքը։

Մի քանի վայրկյան, և կարմիր արկերի պատնեշային կրակը տեղափոխվեց թշնամու թիկունքը։

Գետի աջ ափին թնդաց մեր հետևակային զորամասերի հաղթական ուռան։ Նրանք Դնեպրն անցնելով, ողջ ճակատով սկսեցին գրոհել։ Գլուխը կորցրած, հանկարծակի եկած թշնամին հրետանային ու ականանետային կատաղի կրակ բացեց գրոհի ելած մեր հետևակի դեմ, բայց ապարդյուն։ Ղազարյանը հեռադիտակը սեղմած աչքերին՝ իր դիտակետից նայում էր գրոհող հետևակին։ Ահա նրանք հա-

սան հորիզոնին, սարալանջը գրավված է, բայց այստեղ թշնամու հրետանին պատնեշող կրակով փակեց մերոնց առաջխաղացման ճանապարհը: Անհրաժեշտ էր ճնշել թշնամու հրետանին, որոշեց նա: Ղազարյանը նորից հեռախոսի մոտ էր, նորից հնչեցին համառոտ ու ազդու հրամանները: Քիչ հետո լսվեցին հրետանային համազարկերը, և օդը ճեղքելով դեպի թշնամու կրակակետերը թռան մեր արկերը: Թշնամու այդ փորձը ևս ճնշվեց, բայց նա չէր ուզում այն իրողության հետ հաշտվել, որ սովետական զորքերն անցել են Դնեպրը:

Մարտը բորբոքվեց նոր ուժով: Սուլում էին արկերը, գետը ալեկոծվում էր պայթյունից: Գործում էին զենքի բոլոր տեսակները: Մայոր Ղազարյանը նորից գործադրեց իր հզոր հրետանին, և դարձյալ ծխի ու փոշու մեջ կորավ ամեն ինչ: Քիչ ժամանակ անց հորիզոնը պարզվեց, թշնամու առաջին հակագրոհը ճնշված էր: Ետ մղվեցին նրա չորս հակագրոհները: Մեր հետևակը վերջնականապես ամրացավ գրաված բնագծում: Կռիվը շարունակվեց ամբողջ օրը:

Հոկտեմբերի 20—24-ին դիվիզիայի հետևակային գնդերի առաջատար գումարտակները, մեր հրետանու ակտիվ աջակցությամբ, բայց թշնամու կրակի տակ, Դնեպրոձերժինսկ քաղաքից մի փոքր հյուսիս սկսեցին մասսայական գետանցը: Այնուհետև զարգացնելով հարձակումը, մասնակցեցին Դնեպրոպետրովսկ և Դնեպրոձերժինսկ քաղաքների ազատագրմանը: Այս ճակատամարտը շատ զոհեր ու ջանքեր խլեց մեր զորամասերից:

ԴԻՎԻԶԻԱՆ, ԱՆՑՆԵԼՈՎ ԴՆԵՊՐ գետը, մարտական առաջադրանք ստացավ՝ շարունակել հարձակումը դեպի արևմուտք:

1943 թ. նոյեմբերի կեսերին ծանր պայմաններում դիվիզիան մարտերով շարունակում էր ճանապարհը դեպի արդյունաբերական կենտրոն Կրիվոյ-Ռոգ քաղաքը:

Ուկրաինական Աննովկա և Միշուլովկա բնակավայրերի սահմաններում գերմանացիներն անցան հակահարձակման, և մեր դիվիզիայի զորամասերը, ըստ ստացված հրամանի, պաշտպանական գիծ գրավեցին:

Նոյեմբերի 14—20-ը մեր դիվիզիայի մարտակարգերի վրա գերմանացիների տանկային գրոհները նրանց ոչ մի հաջողություն չբերեցին: Մեր հետևակային գնդի զինվորները, դիվիզիայի կապավորները, հետախույզներն ու հրետանավորները այդ կռիվներում դրսևորեցին տոկունություն, քաջություն, ռազմական նախաձեռնություն:

Այդ մարտերում իրեն առանձնապես լավ դրսևորեց դիվիզիայի 684-րդ հետևակային գունդը, որի մարտակարգերն ամենից շատ էին ենթարկվում հակառակորդի գրոհներին: Այդ ժամանակ արդեն միայն հայերից չէր բաղկացած գունդը. այն համալրվել էր սովետական ժողովուրդների զավակներով, հատկապես մեծ թիվ էին կազմում ուզբեկները: Այս, ինչպես և մյուս հետևակային գնդերի հրամանատարական և քաղաքական կազմը մեծ ջանքերով դաստիարակել և կոփել էր միասնական, համերաշխ, մարտունակ զինվորական ստորաբաժանումներ, անձնուրաց զինվորներ, որոնք իրենց կյանքի գնով պաշտպանեցին հայրենիքի պատիվը:

Մղվող թեժ կռիվներում հրետանավորներից առանձնապես աչքի ընկավ 964-րդ հրետանային գնդի 2-րդ դիվիզիոնն ու նրա քաջ հրամանատար կապիտան Աշոտ Դավթյանը: Նրա ղեկավարած դիվիզիոնը շատ փառավոր էջեր գրեց գնդի և դիվիզիայի մարտական պատմության մեջ: Միշուլովկայի տակ նա իր դիվիզիոնի պաշտպանական դիրքերից պակաս թակարդներ չսարքեց թշնամու գլխին: Վարպետորեն, գիշերները հետախուզության միջոցով նա գտնում էր հակառակորդի կրակակետերը, ցերեկը հրետանային հետախուզությամբ ճշտում և դիպուկ կրակով ոչնչացնում այն կրակակետերը, որոնք ամենից շատ էին անհանգստացնում դիվիզիային: Նա անձամբ խրամատից դուրս գալով հեռադիտակով հետևում էր հակառակորդի դիրքերում կատարվող անցուդարձին: 1943 թ. նոյեմբերի 21-ի օրվա երկրորդ կեսին գիշերային հետախուզության հաղորդումները անձնական դիտումներով ճշտելու ժամանակ ֆաշիստական նշանառուի գնդակով ընկավ Աշոտ Դավթյանը:

Այսպես քաջաբար մարտնչեցին մեր ժողովրդի խիզախ զավակները ուկրաինական հողը ֆաշիզմի լծից ազատագրելու համար: Նրանց անունները ոսկե տառերով գրվեցին դիվիզիայի պատմության, Մեծ հայրենականի հերոսական տարեգրության էջերում:

---

# ԳՐՉՈՎ ԵՎ ՍՎԻՆՈՎ

ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻ տարիներին ռազմաճակատային թերթերը ոգեշնչում, առաջ էին մղում մարտիկներին, ամբողջ զորամասեր: Այդ լրագրերն իրենց շուրջն էին համախմբել բազմաթիվ թղթակիցների— շարքային կարմիրբանակայինների, հրամանատարների: Ինչպես բոլորի, զինթղթակիցների համար ևս պատերազմը լի էր դաժան փորձություններով: Սակայն, գտնվելով համապատասխան զորամիավորումներում, մասնակցելով ռազմական գործողություններին, նրանք կոփվում էին, գրոհող ռազմիկների հետ միասին ուրախանում հաղթանակներով, ապրում նահանջի դառնությունը: Ռազմաճակատում ստեղծվում էր լրագրողի նոր կերպարը: Կարմիրբանակայինների հետ կողք-կողքի, զենքը ձեռքին, նա կռվում էր քաջաբար, դադարի պահին, խրամատներում, հաճախ բաց երկնքի տակ, աստղերի լույսով գրում ակնարկներ, բանաստեղծություններ, հաղորդագրություններ, գրում շատ հակիրճ, 200—400-ի փոխարեն՝ 20—10 տող, «հեռագրական ոճով...»:

Շտապողականությունը յուրահատուկ կնիք է դրել ճակատային լրագրերի և թիկունքում ստացված զինթղթակիցների նյութերի վրա: Այնուհանդերձ, այդ նյութերով ճակատային ու թիկունքային լրագրերն ստեղծել են այնպիսի էջեր, որոնցում վառ կերպով արտացոլվել են ռազմական կյանքի շունչը, սովետական զինվորների ու հրամանատարների հայրենասիրության ուժը, հաղթանակի հասնելու նրանց անհողդողդ կամքը:

Բազմամարդ է ճակատային թղթակիցների բանակը: Նրանց հերոսագործությունները ևս արտացոլել է զինվորական ու թիկունքային մամուլը: Ահա նրանցից մեկը՝ հայկական Թամանյան 89-րդ հրաձգային դիվիզիայի «Կարմիր զինվոր» թերթի թղթակից, սակրավոր Ջահան Կարախանյանը. մարտական-քաղաքական ուսուցման առաջամարտիկ զինթղթակիցը գրչով ու զենքով անձնվիրաբար կռվել է թշնամու դեմ: «Կարմիր զինվորի» առաջին համարներից մեկում (մարտի 17, 1942 թ.) Ինչպես դարձա գերազանցիկ վերնագրով հոդվածում Կարախանյանը գրել է, որ մինչև Հայրենական մեծ պատերազմը ինքը ծառայել է կարմիր բանակում, ուսումնասիրել սովետական ռազմական տեխնիկան: Պատերազմի պայմաններում նա օգնում է նորակոչիկ կարմիրբանակայիններին՝ պատրաստ լինելու մարտերին, զինվելու ֆաշիզմի նկատմամբ բուռն ատելությամբ, հաղթելու կամքով:

Կարախանյանը ներկայացրել է մարտական ուսուցման իր առաջավոր ընկերներին, նրանց անսասան հավատը հաղթանակի նկատմամբ: Այսպես՝ Օրինակելի ավագը թղթակցությունը նվիրել է իրենց ստորաբաժանման ավագ Ն. Փոթեյանին, որին ջերմորեն սիրում էին զինվորները: Բարձրացել է մարտիկների պատասխանատվությունը թղթակցության մեջ գրում է, որ Ավագյանի հրամանատարությամբ գործող ստորաբաժանման մարտիկները բարեխղճորեն են կատարում իրենց սրբազան երդումը:

Ջահան Կարախանյանի հիշյալ թղթակցությունները գրվել են այն ժամանակ, երբ զինվորական միավորումը տակավին չէր մասնակցում կատաղի մարտերին: «Կարմիր զինվորի» խմբագրությունը լավ գիտեր, թե ինչպիսի վճռական նշանակություն ունի մարտիկների ռազմաքաղաքական ուսուցումը, նախապատրաստությունը առաջիկա հարձակումներին: Ուստի և լայն տեղ էր հատկացնում այդ բնույթի նյութերին: 89-րդ դիվիզիան հարձակման անցնելու հրաման ստացավ: Զինթղթակից Կարախանյանը ևս արիաբար մարտնչում էր, անձնական օրինակով ոգեշնչում մարտընկերներին: Թամանի ազատագրման համար մղվող թեժ կռիվների օրերին «Կարմիր զինվորը» Համարձակություն և խիզախություն առաջնորդողում (30 սեպտեմբերի, 1943 թ.) նշում է և Կարախանյանի սխրագործությունները:

Լրագրի խմբագիր Սիմոն Նալբանդյանի բազում ակնարկներից մեկը կրում է Սակրավոր Կարախանյանը վերնագիրը, ուր նկարագրել է խիզախ մարտիկին՝ Նովոռոսիյսկ քաղաքի ազատագրման համար մղվող մարտերում: Թշնամու տեղատարափ կրակի տակ Ջահանը ականազերծում էր տարածքը, ուղի բացում հետևակայինների համար: Նույն գիշեր Կարախանյանն առաջադրանք ստացավ հետազոտելու մեր զորքերի առաջխաղացման ուղին, ականազերծելու ականապատված տարածքը: Թշնամու դիրքերից կրակ բացեցին նրա վրա, սպառվեցին Ջահանի փամփուշտները, և նա

ջանցի Օյուք Հաքիք Օղլի Համիդովի, վրացի Սերգեյ Խոպերիայի և հայ Արգամ Հակոբյանի մարտական բարեկամությանն է նվիրված Ընկերները ակնարկը: Ռուս, հայ, ուկրաինացի, ուզբեկ 14 զինվորների ինտերնացիոնալ բարեկամությունն է գովերգվում Անանուն բարձունքի վրա, ինչպես և «ԲԳԿԲ մարտիկ»-ում 1943 թ. ապրիլի 21-ին հրապարակված Կովկասի ոգին ակնարկներում:

Երկրորդ հանդիպում ակնարկում, ներկայացնելով ռուս Վասիլի Բորտնի և հայ Զարմիկ Դանիելյանի մտերմությունը, Քոչարը նկատում է, որ Արարատյան հովտի որդին նույնպիսի ամուր սիրով է կապված իր ռուս բարեկամին, ինչպես հայ ժողովուրդն իր ավագ եղբոր՝ ռուս ժողովրդի հետ: Այսա հեղինակը ցույց է տալիս թշնամու դեմ մահու և կենաց գոտեմարտում սովետական ռազմիկների դրսևորված լենինյան բարեկամության արմատները, դրա անհաղթահարելի ուժը:

Երկու տարի անց ակնարկում Քոչարը նկարագրել է ռուս ժողովրդի անվեհեր զավակ Իվան Անդրեևիչ Ցապոշնիկովի հերոսագործությունը:

Գրող հրապարակախոս Հրաչյա Քոչարը նաև հիանալի ագիտատոր էր: 1942 թվականի սեպտեմբերից մինչև նոյեմբերի 20-ը նա գործուղվում է թիկունք: Հայաստանի քաղաքներում, շրջաններում, կոլտնտեսություններում անկեղծ ոգևորությամբ պատմում է իրենց միավորման զորամասերի հերոսների ու մարտական գործողությունների մասին: Նրա խոսքը տպավորիչ էր, համակում էր ռազմաճակատին ավելի համակողմանի օգնելու բուռն ձգտումով:

Փորձառու ժուռնալիստ, գրող Վախթանգ Անանյանը մեծ ու արժանի համբավ էր վայելում ո՛չ միայն Հայկական հրաձգային 409-րդ դիվիզիայում, ուր նա աշխատում էր «Մարտական դրոշ» թերթում, այլև թիկունքում: Ռազմաճակատից նա շատ նյութեր է ուղարկել հանրապետական լրագրերին: Ուշագրավ է նրա Հսկա ականաձիգը՝ նվիրված ղարաբաղցի ռազմիկ Սաատուր Հայրապետյանին, Սնայպերը՝ նվիրված Սուրեն Սահամյանին, Կոշկակար Կարոյի ռեկորդային կրակը, Ոսկան Բախշին իր գնդակի ճամփան գիտի ակնարկները («Մարտական դրոշ», մարտի 22, հունիսի 27, օգոստոսի 18, 26, նոյեմբերի 8, դեկտեմբերի 22, 1942 թ.): Այդ ակնարկները լի են Վ. Անանյանի ստեղծագործությանը հատուկ մեղմ հումորով: Նա գրել է ո՛չ միայն անհատների սխրագործությունների մասին, այլև ակնարկի, թղթակցության հերոս է դարձել մարտական կոլեկտիվը: Դրա լավագույն օրինակներից են Մեր հրետանավորները, Նրանք արժանի են, Հարվածում է սովետական հրետանին և այլն:

Պատերազմի շրջանում Վ. Անանյանը գրում էր լրագրային մի նոր ժանրով. գործող բանակից նա նամակ-ակնարկներ էր հղում Հայրենական պատերազմի հերոսների հարազատներին: Այդ նամակ-ակնարկների վերնագրերի տակ փակագծում նշվում էր, թե ում են հասցեագրված դրանք: Կյանքը հաղթում է մահին նամակ-ակնարկի տակ, որ հրապարակվել է «Սովետական Հայաստան» լրագրի 1943 թ. նոյեմբերի 13-ի համարում, փակագծում նշված է. «Նամակ Ազովի ափերից Նոյեմբերյանի Կողբ գյուղացի Ծամամ Ղուլիջանյանին»: Ջերմ ու անմիջական է նաև Վ. Անանյանի Անվեհերը ակնարկը՝ հասցեագրված Բանանց գյուղի բնակչուհի Մարիամ Օհանյանին:

Ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, ինտերնացիոնալ միասնությունը բոլոր զինթղթակիցների, առհասարակ մամուլի հիմնական թեման էր: Արյունով կոփված բարեկամություն վերնագիրը կրող ակնարկում Վ. Անանյանը գրել է. հրանոթները լցնող մարտիկները տարբեր սովորություններ ունեին ու տարբեր լեզուներ, բայց թշնամու հետ խոսում էին մեկ ընդհանուր լեզվով՝ սովետական երկրի հզոր լեզվով...

Գրչով ու սվինով միշտ առաջավոր մարտակարգերում են պայքարել զինվորական թղթակիցները Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Հետմահու Սովետական Միության հերոսի կոչման արժանացած շարքային կարմիրբանակային Ջահան Կարախանյանն իր խիզախությամբ ո հերոսությամբ անմահացրեց սովետական զինվորի ու զինթղթակցի անունը: Գվարդիայի կապիտան Հրաչյա Քոչարը ճակատային թերթերի խմբագրություններում, խրամատներում, բլինդաժներում կերտեց պատերազմի ժամանակվա հերոսների պայծառ կերպարներ: Հանուն հայրենիքի, հանուն սերունդների երջանկության զոհվեցին զինթղթակիցներ Զավեն Մարգարյանը, Մկրտիչ Մանուկյանը, Թաթուլ Հուրյանը, Ավետիս Դերենցը, Նապոլեոն Ծատուրյանը և շատ ուրիշներ:

Մարդկային պատմության մեջ նմանը չունեցող այս ահեղ պատերազմում հաղթանակած մեր հայրենիքը վեր խոյացավ որպես ողջ աշխարհում խաղաղության հզոր պատվար, որպես մարտերում ընկածների փառքի հուշարձան:

Վ. Մ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

---

# ԻՆՉՊԵՍ ԾՆՎԵՑ «ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԴՐՈՇՈՎ» ԼՐԱԳԻՐԸ

(ՊԱՏԱՌԻԿ ՀՈՒՇԵՐԻՑ)

«Ավանգարդ» թերթում պատասխանատու քարտուղար էի, երբ մի օր ինձ զանգահարեց Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի կուլտպրոպ բաժնի վարիչը և ասաց, որ շտապ անցնեմ Կենտկոմի քարտուղար ընկեր Խանջյանի մոտ:

— Ի՞նչ կա,— հարցրի ես:

— Կգնաս՝ կիմանաս:

Դրանից մի օր առաջ «Ավանգարդում» իմ ստորագրությամբ տպագրվել էր մի հոդված և ծաղրանկար, որտեղ խիստ քննադատվում էր Պետհրատի դիրեկտորը՝ կոմերիտմիության նվիրված գրքերի ու բրոշյուրների տպագրությունը ձգձգելու համար: Մտածեցի՝ Կենտկոմ, և այն էլ ընկ. Խանջյանի մոտ ինձ հրավիրելու պատճառն այդ էր: Սակայն մեծ եղավ զարմանքս, երբ մտա ընկ. Խանջյանի աշխատասենյակը, և նա, առանց նախաբանի, ժպտալով ասաց.

— Բավական է կոմսոմոլ մնաս, վաղվանից պետք է անցնես կուսակցական աշխատանքի:

Ուզում էի հարցնել՝ ի՞նչ աշխատանք, բայց նա շարունակեց.

— Պետք է գնաս Թալին, որպես շրջանային լրագրի պատասխանատու խմբագիր,— և անառարկելի տոնով ավելացրեց.— Այսօրվանից զբաղվիր շրջանային տպարանը կահավորելու, լրագրի տպագրության համար թուղթ և անհրաժեշտ այլ նյութեր ստանալու, տեղափոխելու գործով: Քեզ այնտեղ ուղարկելու որոշումը կստանաս:

Այնուհետև նա սկսեց ցուցումներ տալ, թե ինչ հարցերի վրա պետք է ուշադրություն դարձնել: Դեռ խոսքը չէր ավարտել, երբ ներս մտավ քարտուղարը և հայտնեց ընկեր Խանջյանին, որ Ախտայից (Հրազդանից) մի խումբ պիոներներ են եկել. ասելիք ունեին: Նա ընդհատեց խոսակցությունը, ոտքի կանգնեց և խնդրեց երեխաներին ներս կանչել: Առանձնասենյակի դուռը բացվեց, ներս մտան արևավառ, երկար մազերով 10—15 երեխաներ, տարբեր գույնի ու չափի վերնաշապիկներով, տրեխներով, հնամաշ կոշիկներով, կարկատած շալվարներով, բայց բոլորն էլ կարմիր վզկապներով:

— Ի՞նչ է պատահել, երեխանե՛ր, ինչո՞ւ եք եկել,— հարցրեց ընկեր Խանջյանը:

Նրանցից ամենահամարձակը, երևի ղեկավարը, առաջ եկավ և զեկույցի տոնով ասաց.

— Ընկեր Խանջյան, եկել ենք խնդրելու, որ մի հատ թմբուկ տաք մեր ջոկատին, թմբուկ չունենք:

Խանջյանը ժպտաց, քթի տակ ինչ-որ բան ասաց շրջանի ղեկավարների հասցեին և՝

— Երեխանե՛ր,— ասաց նա,— կվերադառնաք շրջան և լավ կսովորեք: Մի՛ք անհանգստանա, դուք կունենաք և՛ թմբուկ, և՛ նվագելու այլ գործիքներ:

Երեխաներն իրար նայեցին, և բոլորն էլ ուրախ-ուրախ դուրս եկան: Խանջյանը կանչեց քարտուղարին.

— Զանգահարեք լուսժողկոմ, ասեք թող կերակրեն երեխաներին և ավտոյով ուղարկեն Ախտա: Վաղը ժամը 11-ին թող ինձ մոտ գա պիոներ կենտբյուրոյի նախագահը, իսկ այժմ միացրեք Ախտա, գործկոմի նախագահին:

Ես վեր կացա, իսկ նա ժպտալով դիմեց ինձ.

— Թեև մեր խոսակցությունն ընդհատվեց, բայց այս երեխաները քեզ շատ բան սովորեցրին: Լրագիրը, կուսակցական, կոմերիտական, պիոներական կազմակերպությունները, բոլորը, բոլորը պետք է հատո՛ւկ,— նա շեշտեց,— հատո՛ւկ ուշադրություն նվիրեն մատաղ սերնդի դաստիարակության գործին: Նրանք են մեր ապագան:

Մի պահ մտախոհ լռելուց հետո՝

— Դե գնա,— ավելացրեց նա,— առանց ժամանակ կորցնելու զբաղվիր քո գործով, հիշիր, որ մայիսի 5-ին, մամուլի օրը, պետք է լույս տեսնի լրագրի առաջին համարը:

Ապա սեղմելով ձեռքս՝ հաջողություն մաղթեց ու ասաց.

— Առաջին համարը կուղարկես ինձ:

## ԴԵՊԻ ԹԱԼԻՆ

Առավոտից մինչև իրիկուն հիմնարկից հիմնարկ եմ շրջում՝ տպարանի համար կահավորում ձեռք բերելու: Հանրապետության տպագրական բազան այնքան աղքատիկ էր, որ եթե մի մեքենա մի տեղից վերցնեինք, ապա գործը տվյալ օբյեկտում կտուժեր: Չնայած կարգադրված էր, որ օգնեն ինձ, բայց երբ գործը հասնում էր այս կամ այն մեքենան տալուն, ասում էին. «Բա մե՞նք ինչ անենք»: Ես, որ տպագրական գործին ծանոթ էի, մտածում էի՝ նրանք իրավացի են: Կարգադրվեց տպագրական մեքենա վերցնել Լենինականից: Կանգնեցինք նոր դժվարությունների առաջ. այդ ծանրաշարժ մեքենան ինչպե՞ս, ինչո՞վ տեղափոխել: Սարափեթի վատ ճանապարհներ են, բեռնատար մեքենաներ համարյա չկան... Ելքը գտանք. մեքենան քանդեցինք և մաս-մաս տեղափոխեցինք:

Թալինի հին դպրոցի շենքից մեզ հատկացրին երկու սենյակ, որոնցից մեծը՝ որպես տպարան, իսկ փոքրը՝ խմբագրություն և... խմբագրի ննջարան: Տպագրական տառերի մի մասը ձեռք բերինք Երևանից, մի մասը՝ Լենինականից: Տառատեսակները շատ քիչ էին, և լրագիրը գեղեցիկ, ձևավորված հրատարակել անհնար էր: Տպագրական բազան կար, մնում էր ամենադժվարը՝ կադրերի հարցը: Երևանից տպագրական գործը հասկացողներից ոչ մեկին չկարողացանք համոզել, որ Թալին գա. տեղի տպարաններն էլ չէին կարող թողնել նրանց: Այն ժամանակ մատների վրա կարելի էր հաշվել այն մասնագետներին, որոնք ինքնուրույն կարող էին աշխատել:

Այս անգամ էլ մեզ օգնեց Լենինականը: Այնտեղից մեզ մոտ եկավ հիանալի մասնագետ Գարեգին Մալխասյանը. նա և՛ շարում էր, և՛ էջ կապում, և՛ տպագրում: Պատրաստվում էինք տպագրության հանձնել լրագրի առաջին համարը, որը, ինչպես Խանջյանն էր ասել, պետք է լույս տեսներ մայիսի 5-ին՝ մամուլի օրը:

Ակտիվը, հատկապես կոմերիտականները, տպարանից չէին հեռանում: Նրանք շրջապատել էին շարող վարպետին և ուշադրությամբ նայում էին, թե ինչպես տառերը հատ-հատ արկղից վերցնելով, բառեր էր կազմում: Երբ առաջին էջը պատրաստ էր, պարզվեց, որ մյուս էջը շարելու համար տառ չկա: Ի՞նչ անել: Պետք էր մի էջը տպագրել, տառերն ազատել մյուս էջը շարելու համար: Այդպես էլ արինք:

Պատրաստի էջը վարպետ Գարեգինն ամրացրեց տպագրող մեքենային, որը շրջապատված էր հետաքրքրասեր ջահելներով... Էլեկտրականություն չկար, մեքենան պետք է բաներ ձեռքով: Հերթագրվեցին բռնակը պտտելու համար: Կոմերիտմիության շրջկոմի քարտուղարը կազմեց ցուցակը: Առաջին հիսուն օրինակը տպագրելու պատիվն ինձ բաժին ընկավ, այնուհետև՝ ըստ ցուցակի: Երբ պատահեր, որ մեկն ու մեկը 50-ի փոխարեն տպագրեր 51 օրինակ՝

— Էդ ի՞նչ ես անում,— աղմկում էին այս ու այն կողմից,— ուզում ես մեր բաժի՞նն էլ տպել:

Ու հերթով բոլորն էլ իրենց 50 օրինակը տպագրեցին և, երբ 1500 օրինակը (տպաքանակն այդքան էր) պատրաստ էր, ամենքը միասին հրճվագին գոչեցին.

— Ուռա՜, կեցցե՜ մեր «Բոլշևիկյան դրոշով»-ը:

Այդպես ծնվեց «Բոլշևիկյան դրոշով»-ի առաջին համարը, որը կուսշրջկոմի քարտուղար Համո Իսրայելյանը անձամբ տարավ ընկեր Խանջյանին:

## ԴԵՊԻ ԳՈՐԾ

Լրագրի լույսընծայման հանդիսավոր արարողությունն ավարտվեց. այժմ հարկավոր էր ծրագրված համառ աշխատանք: Թալինն այն ժամանակ Հայաստանի հետամնաց շրջաններից մեկն էր. ճանապարհազուրկ, աշխատավորության մեծ մասն անգրագետ, չկար էլեկտրականություն, ռադիո (միայն 3 գյուղում ռադիո կար):

Լրագիրը կոչված էր այդ հարցերը պահելու իր ուշադրության կենտրոնում: Հարկավոր էր ոգևորել, խրախուսել առաջավորներին, խարազանել թերությունները: Այդ աշխատանքները հաջող կատարելու համար պետք էին մարդիկ, իսկ խմբագրությունում միայն ես էի: Գիշերները քնել չէի կարողանում: Շարունակ ծրագրեր էի կազմում, մտածում դրանց իրագործման մասին... Կուսշրջկոմի քարտուղար Համո Իսրայելյանի հետ որոշեցինք նախ ծանոթանալ գյուղերին, ժողովրդին, նրանց հուզող հարցերին ու պահանջներին (շրջկոմի քարտուղարը նույնպես նոր էր): Նստեցինք ձիերը և շրջեցինք գյուղերը: Կուլտմասսայական աշխատանքներ համարյա չէին տարվում, բոլոր գյուղերում չէ, որ կային կուսբջիջներ, եղածներն էլ լավ չէին գործում, սանիտարական վիճակն անմխիթար էր:

Մինչ մենք շրջում էինք գյուղերում, Երևանից, որպես լրագրի պատասխանատու քարտուղար, մեզ մոտ էին ուղարկել Ս. Սարգսյանին: Մի որոշ ժամանակ անց, Երևանից ուղարկեցին նաև մի գրական աշխատող: Այսպիսով, խմբագրության կազմը լրիվ էր: Լրագիրը լույս էր տեսնում 1500, հետագայում 3 հազար տպաքանակով: Թեև ավելի շատ պահանջ կար, բայց թղթի պակասը թույլ չէր տալիս ավելին տպագրել: Կազմված պլանի համաձայն՝ ընդհանուր հարցերից բացի, մշտական բաժիններ ունեինք, լրագրի ամեն համարում պարտադիր կերպով տեղ էր տրվում մթերումների, հատկապես հացամթերման, բերքահավաքի կազմակերպման, անգրագիտության վերացման, դպրոցական շինարարության հարցերին...

Պլանում մեծ ուշադրություն էր հատկացվում ճանապարհաշինության խնդիրներին: Այդ ուներ իր պատճառը: Շրջկոմի քարտուղարը խնդրել էր Խանջյանին մի մարդատար ավտոմեքենա տրամադրել Թալինի շրջանային կոմիտեին: Խանջյանը պատասխանել էր. «Ավտոն ի՞նչ պիտի անեք, երբ ճանապարհներ չունեք, ավտոն իր «ոտքով» նույնիսկ Թալին չի կարող գալ: Երբ լավ, բարեկարգ ճանապարհներ ունենաք, ավտոն կստանաք»: Այդ օրերին «Իզվեստիա» լրագիրը հայտարարեց մրցույթ և սահմանեց մրցանակ այն լրագրերի համար, որոնք կլուսաբանեն և կօգնեն ճանապարհաշինության գործին: Շրջանային գործադիր կոմիտեն մրցանակներ սահմանեց գյուղերի հարվածային կոլեկտիվների և լավագույն աշխատողների համար:

Համո Իսրայելյանը, ինչպես ասում են, գիշեր-ցերեկ քուն չուներ: Նա ոտքի հանեց կոլտնտեսականներին, շրջանի բանվոր-ծառայողներին, կոմերիտմիությանը: Շրջանի ամբողջ աշխատավորությունը լծվեց աշխատանքի: Լրագրի էջերում լայնորեն լուսաբանվում էին ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը, առօրյա խնդիրները: Այդ օրերի համարներում կարդում ենք. «Թալինից—Աշնակ տանող ճանապարհը պատրաստ է», կամ՝ «Մինչև վերջերս Եշիլից Բայսրզ տանող ճանապարհ չկար: Բոլոր տեղափոխումներն այդ գյուղերի միջև կատարվում էին շալակով, բայց գյուղխորհուրդը 114 աշխատավոր ձեռք դուրս բերեց ճանապարհ կառուցելու համար, և այսօր սայլուղին արդեն պատրաստ է»:

«Ն. Փիրթիքանի աշխատավորությունը մեծ ոգևորությամբ լծվել է ճանապարհաշինարարության աշխատանքներին: Մաստարա—Փիրթիքան ճանապարհն արդեն պատրաստ է: Շուտով կսկսվեն հանդամիջյան ճանապարհների պատրաստման աշխատանքները»:

«Թալինից—Այնալու տանող ճանապարհը պատրաստ է»:

«Մազարջուղի աշխատավորները ավարտեցին ճանապարհների պատրաստման պլանը»:

Այդպիսի հաղորդագրություններ ստացվում էին բոլոր գյուղերից: Ոգևորված աշխատանքը տվեց իր արդյունքը:

Վեց ամսվա համար պլանավորված 10 կիլոմետր նոր ճանապարհների փոխարեն կառուցվեց 91 կիլոմետր: Հիմնական վերանորոգման համար նախատեսված 15 կիլոմետրի փոխարեն վերանորոգվեց 30 կիլոմետր: Նույն թափով ճանապարհաշինությունը շարունակվեց նաև հետագա ամիսներին: Երբեմնի ճանապարհազուրկ Թալինի շրջանի գյուղերն իրար հետ կապվեցին բարեկարգ ուղիներով: Եվ երբ «Իզվեստիա» լրագրին առընթեր ճանապարհազրկությունը վերացնող շտաբը հրապարակեց մրցության արդյունքները, այնտեղ ասված էր. «Հայաստանում բոլշևիկորեն վերացվում է ճանապարհազրկությունը: Հատկապես Գորիսի, Թալինի և մի քանի այլ շրջաններ սովորել են իրենց ուժերով ճանապարհներ կառուցել»:

Ճանապարհների պահպանությունն ու հսկողությունը հանձնարարվեց գյուղխորհուրդներին: Թալինի շրջանը,

# ՀԱՅ ԵՐԱԺՇՏՈՒԹՅԱՆ ՊԱՐԾԱՆՔԸ

(Արմեն Տիգրանյանի ծննդյան 100-ամյակի առթիվ)



ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ սիրով և խորին երախտագիտությամբ է նշում իր տաղանդավոր զավակներից մեկի՝ կոմպոզիտոր Արմեն Տիգրանյանի 100-ամյակը. նրա թողած երաժշտական ժառանգությունը, մասնավորապես Անուշ և Դավիթ Բեկ օպերաները, արժանացել են համաժողովրդական ճանաչման ու սիրո։ Ստեղծագործական ասպարեզ մտնելով դարասկզբին՝ Տիգրանյանը հանդիսացավ իր նախորդների՝ հայ պրոֆեսիոնալ երաժշտության առաջին ստեղծողների սկսած գործի արժանավոր շարունակողը։ Նա խորապես ըմբռնեց ժամանակի պահանջները, հայրենի երաժշտարվեստի նոր խնդիրների լուծման կենսական անհրաժեշտությունը։

Օգտագործելով հայ պրոֆեսիոնալ առաջին կոմպոզիտորների՝ Ք. Կարա-Մուրզայի, Մ. Եկմալյանի, Ն. Տիգրանյանի ստեղծագործական փորձը, խորամուխ ըմբռնումով հետևելով իր ավագ ժամանակակցի՝ մեծ Կոմիտասի ստեղծագործական ավանդներին, որոնք նոր ու արգասավոր ուղի էին նշում հայրենի երաժշտության հետագա զարգացման ու հարստացման համար, Տիգրանյանն իր երաժշտական գործունեության վաղ տարիներից դարձավ հայրենի պրոֆեսիոնալ երաժշտության դեմոկրատական ուղղության ակտիվ գործիչներից մեկը։ Նա ձգտում էր երաժշտական խոսքի ինքնուրույնության, համառորեն փնտրելով արտահայտչական այնպիսի միջոցներ, որոնք ինքնատիպորեն մարմնավորեին իր ստեղծագործական հղացումները։ Եվ դրա առհավատչյան երիտասարդ կոմպոզիտորի առաջին լիրիկական երգերն էին՝ գրված Ավ. Իսահակյանի բանաստեղծությունների տեքստերով (Լաց, մերիկ ջան, Սև աչերեն, Ա՜խ, իմ ճամփեն, Հովերն առան), որոնք ցույց տվին, որ Տիգրանյանն ասպարեզ է իջնում հստակ ասելիքով, ստեղծագործական հետաքրքրությունների խորությամբ և, մասնավորապես, հայ ազգային-ժողովրդական մելոսի ոճային հատկանիշները յուրովի ներկայացնելու անուրանալի տվյալներով։

Մանուկ հասակից Տիգրանյանի աշխարհը երգն ու երաժշտությունն է եղել։ Շիրակի երաժշտական հարուստ ու բազմերանգ մթնոլորտը նպաստել է Տիգրանյանի երաժշտական ընդունակությունների զարգացմանը, նրա բնածին ձիրքի դրսևորմանը։ Հայ ժողովրդական ու գուսանական երգերի լավագույն նմուշները՝ արտահայտիչ մեղեդայնությամբ, վառ են տպավորվել շիրակցի ժամագործի ընտանիքում մեծացած պատանու սրտում, նրա հոգում ծնելով



երաժիշտ դառնալու փափագ։ 1898 թվականին Տիգրանյանին հաջողվում է ընդունվել Թիֆլիսի երաժշտական ուսումնարանը, որն ավարտում է քառամյա ուսումնառությունից հետո։ Այստեղ Տիգրանյանն աշակերտում է հմուտ մանկավարժ, ազգագրագետ ու կոմպոզիտոր Ն. Ս. Կլենովսկուն. վերջինիս ղեկավարությամբ անցնելով երաժշտական-տեսական առարկաների դասընթացը՝ դրա հետ մեկտեղ սովորում է նաև նվագել ֆլեյտայի վրա։ Այնուհետև նա մեկ տարի հարմոնիայի դասեր է առնում Մ. Եկմալյանի մոտ, ավելի հարստացնելով ու խորացնելով գիտելիքների պաշարը։ Թիֆլիսի ուսումնարանում սովորելու տարիներին արագ զարգացան Տիգրանյանի երաժշտական ունակությունները, որոնք պրոֆեսիոնալ երաժշտի հուսալի հեռանկար էին երաշխավորում երիտասարդի համար։

Ուսմանը զուգընթաց Տիգրանյանը հաճախում էր Թիֆլիսի օպերային թատրոնի ներկայացումներին, որոնք կարևոր նշանակություն ունեցան ապագա կոմպոզիտորի գեղարվեստական ընկալումների ընդլայնման, էսթետիկական ըմբռնումների ձևավորման համար։ Այստեղ Տիգրանյանը լսել է բազմաթիվ օպերաներ, սքանչացել օպերային երաժշտության գլուխգործոցներով, մասնավորապես Վերդիի, Բիզեի, Չայկովսկու և Ռիմսկի-Կորսակովի օպերաներով։ Օպերային բեմում նա տեսել, ունկնդրել է ժամանակի խոշորագույն երգիչների, այդ թվում՝ Ֆ. Շալյապինի և Ն. Պապայանի փայլուն ելույթները։ Այս բոլորը երիտասարդի հոգում սեր են արթնացրել օպերային արվեստի նկատմամբ, ստեղծագործական լիցք հաղորդելով նրան հետագա մտահղացումների համար։

Այսպիսով, դեռևս Թիֆլիսում ուսանելիս, երիտասարդ երաժիշտն սկսում է ըմբռնել և ուսումնասիրել օպերային արվեստի առանձնահատկությունները՝ թե՛ բուն երաժշտական և թե բեմական-դրամատուրգիական առումով։

Վերադառնալով ծննդավայրը՝ Ալեքսանդրապոլ, Տիգրանյանը 1902 թվականից ժողովրդանվեր դեր է կատարում հայրենի քաղաքի երաժշտական կյանքում, կազմակերպում է երգչախմբեր, որոնք պարբերաբար հանդես են գալիս համերգներով, հարստացնում է դրանց երգացանկը ժողովրդական երգերի սեփական մշակումներով, մշտապես զբաղվում նաև երաժշտական-մանկավարժական գործունեությամբ։ Միաժամանակ Տիգրանյանը շարունակում է ինքնուրույնաբար կատարելագործել իր արվեստը, բարձրացնել ստեղծագործական վարպետությունը։

Սակայն ամենագլխավորը, որ այդ տարիներին զբաղեցնում էր Տիգրանյանին, հայկական օպերայի ստեղծման գաղափարն էր։ Հովհաննես Թումանյանի Անուշ պոեմը Տիգրանյանին այնպես է հափշտակում, որ նա մտադրվում է պոեմի հիման վրա օպերա գրել, այնպիսի օպերա, որ Տիգրանյանի պատկերացմամբ, իր ոճով պետք է լիներ Թումանյանի պոեմի նման պարզ ու վճիտ, ունկնդրին գրավեր ու հուզեր իր մեղեդայնությամբ, ազգային-ժողովրդական կոլորիտով։ Հայկական ազգային-ժողովրդական ոճը մարմնացնող օպերայի ստեղծումը որքան դժվարին, նույնքան և պատասխանատու գործ էր, որ խիզախել էր իր ուսերին առնել Տիգրանյանը՝ չունենալով նմանօրինակ օպերայի որևէ նախատիպ հայ իրականության մեջ։

Ճիշտ է, դեռևս անցյալ դարի 60-ական թվականներին Տ. Չուխաջյանն արդեն ստեղծել էր իր Արշակ երկրորդ օպերան, ապա նաև երաժշտաթատերական այլ գործեր, ինչպես Լեբլեբիջի օպերետը, որոնցում կոմպոզիտորն օգտվել էր հայ քաղաքային ժողովրդական երգի ոճային որոշ հատկանիշներից, սակայն Չուխաջյանն իր օպերային երկերում այդպես էլ չհասավ բուն ժողովրդական երաժշտական ոճի լայն ու խոր դրսևորման։ Հիշենք, որ Չուխաջյանի գործունեության տարիներին հայ ժողովրդական երաժշտության հանգամանալի ու բազմակողմանի ուսումնասիրման հարցը դեռևս չէր արժանացել պրոֆեսիոնալ երաժիշտների ուշադրությանը։ Այսպիսով, հայ ժողովրդական մելոսի տիպական հատկանիշներից բխող բուն ժողովրդական օպերայի ստեղծման նախադրյալները գոյացան ավելի ուշ՝ այս դարասկզբին։ Դա հասունացած անհրաժեշտություն էր։ Եվ այդ գործի նախաձեռնողը եղավ Արմեն Տիգրանյանը։

«1908 թվականին,— գրում է Տիգրանյանը,— ես առաջին անգամ Ալեք-

սանդրապոլում ծանոթացա հայ մեծագույն պոետ Հովհաննես Թումանյանի «Անուշ» պոեմի հետ և հենց նույն թվականին սկսեցի աշխատել համանուն օպերայի վրա։ Առաջին ընթերցումից հետո հանպատրաստից հորինեցի օպերայի առաջին մեղեդին՝ «Համբարձում յայլա», որ հնչում է որպես օպերայի լեյտմոտիվներից մեկը։ Թումանյանի «Անուշի» թեման ինձ ամբողջապես հափշտակեց։ Չխոսելով պոեմի բարձր գեղարվեստականության մասին, նրա կառուցվածքը, նրա հիանալի նախերգանքը, փերիների վիճը՝ սիրահարների դժբախտ սիրո վերաբերյալ, Սարոյի սերենադան (լուսաբացին) և այլն,— այս բոլորը պահանջում էին համապատասխան երաժշտական ձևեր՝ հիասքանչ այդ պոեմն օպերայի վերածելու համար»։

Օպերայի վրա Տիգրանյանն աշխատել է չորս տարի։ Աշխատել է մեծ ներշնչանքով, խորապես զգացել իր հերոսների՝ անմուրազ մեռած սիրահարների ողբերգությունը և ելնելով ժողովրդական երաժշտության ավանդույթներից, ձգտել է գեղարվեստորեն, տիպական միջոցներով ներկայացնել նրանց դիմանկարները, մշտապես հետևելով օպերային իրադարձությունների համոզիչ ու դինամիկ զարգացմանը, ստեղծագործական հնարամտությամբ օգտագործելով օպերային բազմաբնույթ ձևեր՝ սկսած պարզ քառյակերգային կառուցվածքներից մինչև ծավալուն խմբերգերը, արիաներն ու մելոդիկ ռեչիտատիվները։

Անուշ օպերան առաջին անգամ բեմադրվեց Ալեքսանդրապոլում, 1912 թվականի օգոստոսի 17-ին։ Դա մի համեստ բեմադրություն էր։ Ահա թե ինչպես է հիշում այդ իրադարձությունը ականավոր երաժշտագետ Ալ. Շահվերդյանը. «Արդարև, հայ դասական օպերան ծնվեց ցնցոտիների մեջ։ Բավական է ասել, որ նվագախումբը բաղկացած էր միայն 12 երաժիշտներից։ Կատարողների մեջ՝ թե՛ երգչախմբում և թե մեներգիչների կազմում, գերակշռում էր դպրոցական հասակի երիտասարդությունը, որ երգում էր անկեղծ ոգևորությամբ ու ջանասիրաբար, բայց չուներ անհրաժեշտ փորձ ու պրոֆեսիոնալ հմտություն։ Շենքի անհարմարություն, բեմադրությանը հատկացված ծայրահեղ սահմանափակ միջոցներ, հանդերձանքի և դեկորների աղքատություն,— ահա այս պայմաններում իրականացվեց «Անուշի» առաջին բեմադրությունը։ Բայց և այնպես ներկայացումն անօրինակ հաջողություն ունեցավ»։

Անուշի գեղեցիկ ու ինքնատիպ մեղեդիներն անմիջապես սիրվեցին ու արագ տարածվեցին ժողովրդի ամենալայն խավերում։

Նախասովետական շրջանում Անուշը բազմիցս ներկայացվել է Անդրկովկասի տարբեր քաղաքների բեմերում, բայց հավաքովի ուժերով և աղքատիկ բեմադրությամբ։ Համեմատաբար մշակված էր կոմպոզիտորի անմիջական ղեկավարությամբ պատրաստված թիֆլիսյան բեմադրությունը 1919 թվականին, որ նվիրված էր Հ. Թումանյանի 50-ամյակին։ Այստեղ ներկա է եղել մեծ բանաստեղծը, գոհունակությամբ դիտել է ներկայացումը, հիացել օպերայի հարուստ, սրտահույզ երգայնությամբ, գեղեցիկ մեներգերով ու խմբերգերով։

«1919-ին տոնվեց Թումանյանի 50-ամյա հոբելյանը,— գրում է իր հուշերում կոմպոզիտոր Անտոն Մայիլյանը։— Հոբելյանի կարծեմ մյուս օրը բեմադրվեց Արմեն Տիգրանյանի «Անուշ» օպերան՝ Արտիստական թատրոնում։ Թումանյանի հետ նստած էինք մի օթյակում։ Պետք էր տեսնել, թե որպիսի՛ հաճույք էր պատճառում նրան այդ օպերան։

— Ա՛յ տղա, պոեմը գրելիս,— ասում էր նա,— կարծես սիրտս իմանում էր, որ իմ «Անուշը» գրվում է օպերայի համար։

Օպերան նրան մեծ հաճույք պատճառեց։ Ամբողջ ներկայացմանը նա հուզված էր։ Լսվա՞ծ բան էր, որ հայ բանաստեղծն իր պոեմը տեսներ օպերայի վերածված»։

Մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը՝ Անուշը պրոֆեսիոնալ օպերային բեմից հնչելու, լիարժեք բեմադրվելու բախտին չարժանացավ։ Ինքը՝ կոմպոզիտորը, որ առիթներ էր ունենում երբեմն-երբեմն անդրադառնալու օպերայի առանձին դրվագների, գիտակցում էր, որ ինքը դեռևս պիտի շարունակի կատարելացնել Անուշը, հարստացնել նրա գործիքավորումը։

Եվ երբ 30-ական թվականներին հայկական պետական օպերային թատրոնի հիմնադրման նախապատրաստական աշխատանքներ էին տարվում, Ար-



մեն Տիգրանյանն սկսեց վերանայել ու վերախմբագրել օպերան՝ հաշվի առնելով պրոֆեսիոնալ օպերային բեմի պահանջները, ընդլայնելով որոշ պատկերներ և նորից անդրադառնալով օպերայի պարտիտուրային։

1935 թվականի մարտի 27-ին Անուշը բեմադրվեց Երևանի օպերայի և բալետի պետական նորաստեղծ թատրոնի բեմում։ Դա մի նշանակալից իրադարձություն էր սովետահայ արվեստի պատմության մեջ։ Անուշի բեմադրությունը հայկական պետական օպերային թատրոնի ստեղծագործական կոլեկտիվի նոր հաղթանակն էր։ Հիացած էր Հայաստանի երաժշտասեր ողջ հասարակայնությունը։ Առաջին երկու թատերաշրջաններում օպերան ներկայացվել է 100 անգամ։ Երևանյան բեմադրության մեջ Սարոյի դերակատարն էր Շարա Տալյանը (1912 թվականի առաջին բեմադրության Սարոն), Անուշի դերակատարուհին՝ Հայկանուշ Դանիելյանը, դիրիժորն էր Սերգեյ Շաթիրյանը, ռեժիսորը՝ Արմեն Գուլակյանը։

Այնուհետև, 1939-ին, հայ արվեստի՝ Մոսկվայում կայանալիք տասնօրյակի կապակցությամբ Տիգրանյանի օպերան բեմադրվեց ավելի շքեղ, կատարողական բարձր արվեստով։ Տաղանդավոր դիրիժոր Միքայել Թավրիզյանը կատարյալ վարպետությամբ հնչեցրեց Անուշը, ըստ ամենայնի վեր հանելով նրա բազմերանգ պարտիտուրայի հմայքն ու հրաշալիքները։ Տասնօրյակի օրերին Անուշը ներկայացվեց Մեծ թատրոնի բեմում, արժանանալով մայրաքաղաքի հասարակայնության արտակարգ ջերմ ընդունելությանը։ Մոսկվայի մամուլը հիացմունքով նշեց Արմեն Տիգրանյանի օպերայի գեղարվեստական արժանիքները, հարուստ մեղեդայնությունը, հուզական ներգործության մեծ ուժը։

«Տիգրանյանի «Անուշը»,— այդ օրերին գրել է նշանավոր երգչուհի Վ. Բարսովան,— բռնել է արվեստի ստեղծագործության համար ամենալուրջ քննությունը՝ ժամանակի քննությունը։ Առաջվա նման մեզ հուզում են նրա խորապես ժողովրդային, անկեղծ, գերող ու հմայող մեղեդիները։ «Անուշը»՝ կոմպոզիտորի կողմից վերամշակված ու լրացված, ձեռք է բերել նոր գույներ, նոր հրապույր։ Այս օպերան ՍՍՀՄ մայրաքաղաքում կայացած հայկական արվեստի տասնօրյակի զարդն էր»։

Նույնպիսի հիացմունքով են խոսել Անուշի մասին Վ. Նեմիրովիչ-Դանչենկոն, Յու. Շապորինը, Ու. Հաջիբեկովը, Լ. Լեոնովը և շատ ուրիշներ։ Տասնօրյակի ավարտին Արմեն Տիգրանյանն արժանացավ կառավարական բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի։

Անուշը մեր ժողովրդի ամենասիրած ու փայփայած ստեղծագործություններից է։ Իր օպերայում Տիգրանյանը հասել է բանաստեղծական խոսքի և նրա երաժշտական մարմնավորման իսկական միաձուլության, գեղարվեստական այնպիսի բնութագրման, որ բխելով ժողովրդականի ակունքներից, միաժամանակ բացառում է ժողովրդական մեղեդիների պասսիվ ու մեխանիկական ընդօրինակումը։ «Իմ ստեղծագործությունները,— այդ առնչությամբ գրել է Արմեն Տիգրանյանը,— կառուցված են ժողովրդական երգերի խիստ ազդեցության տակ և վերջիններիս համահնչուն են իրենց թեմատիկայով։ Այս հանգամանքը առանձին ուսումնասիրողների առիթ է տվել ենթադրելու, որ իբր «Անուշի» մեղոդիաները իմ կողմից փոխ են առնված։ Սակայն այդ կարծիքը ճիշտ չէ»։

Տիգրանյանի Անուշը մարմնացնում է բուն ժողովրդայնության սկզբունքները, որոնց վրա հիմնվելով, կոմպոզիտորը կարողանում է անպաճույճ պարզությամբ և երաժշտական խոր արտահայտչականությամբ հյուսել նախասովետական գյուղական կյանքից առնված ողբերգական պատումը։

«Տիգրանյանի «Անուշ» օպերայի ներգործող անդիմադրելի ուժը հենց նրանում է,— գրել է Ալ. Շահվերդյանը,— որ այն ընկալվում է որպես մեղեդիների անվերջանալի ու շռայլ հոսանք, մեղեդիներ, որ ժողովրդական են իրենց բնույթով, գեղեցիկ, սրտալի ու ջերմ, ունկնդրին շատ բան ասող։ «Անուշի» ժանրը կարելի է բնութագրել որպես օպերա-երգ, քանի որ կոմպոզիտորի առաջ դրված կարևորագույն խնդիրները՝ բովանդակության բացահայտում, դրամատիկական սյուժեի զարգացում, հերոսների բնութագրում, իրագործված են երգի,

երգային մեղեդու արտահայտչության միջոցներով։ Դա, իհարկե, չի նշանակում, որ «Անուշի» դրամատուրգիան պարզունակ ու աղքատ է»։

Անուշի առաջին բեմադրությունից հետո, Արմեն Տիգրանյանը հաստատվում է Թիֆլիսում, աշխատելով օրիորդաց Հովնանյան դպրոցում որպես երաժշտության դասատու, միաժամանակ ակտիվ մասնակցում է Թիֆլիսի հայոց երաժշտական ընկերության գործունեությանը։ Այդ տարիներին նա բեմադրել է իր օպերան տարբեր վայրերում, հանդես եկել նաև որպես խմբավար ու երգիչ։

1915-ին Տիգրանյանը երաժշտություն է գրում Լեյլի և Մեջնուն պիեսի համար, որը հանդիսատեսների տևական հետաքրքրությանն է արժանանում կոմպոզիտորի ստեղծած սրտահույզ երաժշտության շնորհիվ։

Ա. Տիգրանյանն արվեստագետի մեծ պատասխանատվությամբ է մոտեցել իր ստեղծագործական յուրաքանչյուր մտահղացման իրականացմանը։ Սովետական տարիներին նա ստեղծել է բազմաթիվ մասսայական երգեր, խմբերգեր, գործիքային պիեսներ, կանտատներ (Արյունոտ գիշեր և կանտատ՝ նվիրված Սովետական Հայաստանի 15-ամյակին), երաժշտություն է գրել դրամատիկական մի շարք ներկայացումների համար (Գիքոր, Մի կաթիլ մեղրը, Անահիտ, Սամվել, Դավիթ Բեկ, Նամուս, Քաջ Նազար և այլն)։

Տիգրանյանը եղել է Թիֆլիսի Հայարտան եռանդուն գործիչներից մեկը։ 1928 թվականից նա ղեկավարել է Հայարտան երաժշտական սեկցիան, որն իր շուրջն էր համախմբել հայ պրոֆեսիոնալ երաժիշտներին և երաժշտական-լուսավորչական արդյունավետ աշխատանք էր ծավալում։ Իր արտասովոր համեստությամբ, մեղմ ու բարի բնավորությամբ, իր ընդհանուր կուլտուրայով ու նուրբ ճաշակով, բացառիկ աշխատասիրությամբ Տիգրանյանը վայելում էր մեծ հեղինակություն արվեստակիցների լայն հասարակայնության շրջանում։

Հայրենական պատերազմի տարիներին Տիգրանյանն սկսեց աշխատել իր երկրորդ օպերայի՝ Դավիթ Բեկի վրա, ըստ Րաֆֆու համանուն վեպի։ Դիմելով պատմահերոսական սյուժեի, կոմպոզիտորը նոր ուժով դրսևորեց իր ստեղծագործական հուժկու տաղանդը, ստեղծելով հիանալի մշակված օպերային կերպարների մի ամբողջ շարք՝ իրենց երաժշտական հստակ, հմայիչ բնութագրերով. ահա նրանք— զորավար Դավիթ Բեկը, չքնաղ Թամարը՝ վրաց Վախթանգ թագավորի ազգականուհին, գեղջուկ երիտասարդ Սանթուրը, իշխան Ստեփանոս Շահումյանը, նրա սիրած աղջիկը՝ Շուշանը։ Այս օպերան ևս, ինչպես Անուշը, առինքնում է հարուստ ու վառ մեղեդային նյութի արտակարգ առատությամբ։ Բազմազան են կոմպոզիտորի օգտագործած օպերային ձևերը՝ արիաներ, անսամբլային համարներ, երգեր, խմբերգեր, ծավալուն ֆինալներ, պարեր, ռեչիտատիվներ։ Դրանցում նորովի են դրսևորվում կոմպոզիտորի ստեղծագործական հնարավորությունն ու հմտությունը։ Նրա օգտագործած լեյտմոտիվները նպաստում են օպերայի դրամատուրգիական գծի ամբողջացմանը, ծառայելով գեղարվեստական ընդհանրացման նպատակին։

Դավիթ Բեկի արտահայտչական ցայտուն կողմերից մեկը խմբերգերն են՝ հյուսված ներդաշնակ ու գեղեցիկ ձայնատարությամբ։

Օպերան հարուստ է մասսայական տեսարաններով։ Եվ դա միանգամայն բնական է։ Այս օպերայում իրադարձությունների ընթացքի մեջ մեծ դեր է խաղում ժողովուրդը։ Այդ ֆոնի վրա կոմպոզիտորը հիանալի զուգակցում է հերոսականն ու քնարականը, հայրենասիրական սիրանքի հետ միասին արտացոլելով իր հերոսների լիրիկական ապրումները։

Անդրադառնալով իր երկրորդ օպերային՝ Տիգրանյանը գրել է. ««Դավիթ Բեկ» օպերան հերոսական է, էպիկական։ Հայ ժողովուրդը իր զորավարի ղեկավարությամբ դուրս է եկել ազատամարտի՝ ընդդեմ պարսիկ խաների։ Այդ պատճառով օպերայի գրական տեքստը և երաժշտությունը հաճախ երերուն են, անհանգիստ և հետզհետե բորբոքվող, կուլմինացիայի հասնող,— բարդ ֆինալային պոլիֆոնիկ երաժշտությամբ։

Իբրև պատմական աղբյուրներ նկատի եմ ունեցել Րաֆֆու «Դավիթ Բեկը» և Լեոյի «Հայոց պատմությունը»։ Օգտվել եմ Րաֆֆու վեպի սյուժետային զարգացման հաջորդականությունից, տիպերի, տեղերի նկարագրությունից և գործող անձերի անուններից (ոչ ամբողջովին)։ Սակայն վեպն ամբողջությամբ չէր կարող մի օպերայի նյութ լինել իր ընդարձակ ծավալով։ Ես վերցրի այն, ինչ որ պետք է ինձ և ինքս լրացրի, դասավորեցի ըստ օպերայի բեմական պահանջների»։



Դյուրին չի եղել կոմպոզիտորի խնդիրը։ Բայց նա կարողացել է իր ընտրած սյուժեն զարգացնել ըստ օպերային դրամատուրգիայի առանձնահատուկ օրենքների, ձգտելով չծանրաբեռնել օպերան ավելորդ մանրամասներով։

Ազատագրական պայքարի, հայրենասիրության ու սիրո գովերգում է Դավիթ Բեկը, որ տոգորում է ունկնդրին իր քաղաքացիական շնչով, հայրենիքի քաջարի զավակների ճշմարիտ, մարդկայնորեն ջերմ կերպարներով։

Սովետահայ ականավոր գրող Հրաչյա Քոչարը, հաղորդելով իր անմիջական տպավորությունները Դավիթ Բեկի մասին, նշել է այն մեծ ներգործությունը, որ Տիգրանյանի օպերան ունենում է ունկնդիրների վրա։ ««Դավիթ Բեկը», — գրել է նա,— հարուցում է հայրենասիրական զգացումներ, ներշնչում բարձր, փոթորկուն տրամադրություն, ջերմացնում է լսողի սիրտը, ծնում մտքեր ու խոհեր, լցնում հոգիդ հմայիչ հնչյուններով։ «Դավիթ-Բեկը» ընկալելի կլինի բոլորի համար։ Մեծատաղանդ Արմեն Տիգրանյանի այս օպերան բարդ է՝ առանց խճողումների և պարզ՝ առանց պարզունակության»։

Տիգրանյանն այս օպերան ավարտեց 1949-ի վերջերին՝ իր մահից մի քանի ամիս առաջ։ Նա հնարավորություն չունեցավ ավարտի հասցնելու օպերայի գործիքավորումը։ Դավիթ Բեկը բեմադրվեց 1950-ի դեկտեմբերին, Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնի բեմում։ Օպերան մի քանի բեմադրություններ է ունեցել։ Նրա գլխավոր դերակատարներից են եղել հանրապետության օպերային արվեստի ճանաչված ուժերը՝ Շարա Տալյանը և Նար Հովհաննիսյանը (Դավիթ Բեկ), Տաթևիկ Սազանդարյանը (Թամար), Գոհար Գասպարյանը (Շուշան), Ավագ Պետրոսյանը (Սանթուր)։

Դավիթ Բեկը 1956-ին ներկայացվեց Մոսկվայում, հայ արվեստի երկրորդ տասնօրյակի օրերին, դիրիժոր Մ. Թավրիզյանի հմուտ նվագավարությամբ և ըստ արժանվույն գնահատվեց մայրաքաղաքի արվեստասերների և մամուլի կողմից։

«Պրավդան», տասնօրյակի օրերին, անդրադառնալով Դավիթ Բեկին, գրել է. «Հայկական տասնօրյակի առաջին ներկայացումը `«Դավիթ Բեկը», մեծ, իսկական հաջողություն բերեց կատարողների կոլեկտիվին։ Ներկայացումն առինքնում է իր ներդաշնակությամբ, գեղարվեստական մտահղացմամբ։ Արմեն Տիգրանյանի երաժշտության ներգործության գաղտնիքը նրա ցայտուն և ուժեղ արտահայտված ազգային կոլորիտն է, նրա սերտ կապը հայ ժողովրդական երգի հետ։ Թերևս օպերայի լավագույն, ամենազուեղ դրվագները հենց նրանք են, որոնց մեջ այդ կապն առավել պարզորոշ է դրսևորվում»։

Դավիթ Բեկը ևս դարձավ մեր օպերային թատրոնի ազգային խաղացանկի մնայուն երկերից մեկը։

Արմեն Տիգրանյանը հայ երաժշտական արվեստի իրոք մեծատաղանդ վարպետներից է։ Նրա սքանչելի օպերաները ժողովրդական խոր արվեստի բարձրարժույթ նմուշներ են՝ օժտված գեղարվեստական արտահայտչության բացառիկ ուժով։ Իր բեղմնավոր ու երկարամյա գործունեության ընթացքում Տիգրանյանը բոլորանվեր ծառայել է հայ երաժշտական մշակույթի նոր խնդիրների լուծմանը, նրա ռեալիստական ավանդույթների զարգացմանը։

Նրա ստեղծագործական ավանդույթները կենսունակ են, ուսանելի։ Իր ստեղծած երաժշտական կոթողներով Արմեն Տիգրանյանն արժանացել է համաժողովրդական սիրո։ Նրա հոգեպարար, խորապես ժողովրդական ստեղծագործությունները մեր երաժշտական արվեստի լավագույն, մնայուն գանձերից են։

Ա. Գ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

# ՀԱՐԳԵՆՔ ԼԵԶՈՒՆ, ՆՐԱ ԿԱՆՈՆՆԵՐՆ ՈՒ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Բանասիրական գիտությունների թեկնածու, դոցենտ

1978 թվականի նոյեմբերին Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն ընդունեց հայոց լեզվի համար խիստ կարևոր որոշում՝ «Հանրապետության հանրակրթական դպրոցներում հայոց լեզվի դասավանդումը բարելավելու միջոցառումների մասին»: Այնուհետև հարցը դարձավ ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի, շրջանային կոմիտեների, առանձին կազմակերպությունների քննարկման առարկա, մշակվեցին որոշակի միջոցառումներ, որոնք ունեն մի ազնիվ նպատակ՝ բարելավել մայրենի լեզվի ուսուցումը, այն հասցնել ժամանակակից պահանջների մակարդակին: Այնպես անել, որ միջնակարգ կրթություն ունեցող յուրաքանչյուր մարդ հայերենով կարողանա գրագետ խոսել, գրել: Սա կյանքի հրամայական պահանջն է, քանի որ ընդհանուր միջնակարգ պարտադիր կրթության պայմաններում և քիչ չէ այն մարդկանց թիվը, որոնք խոսելիս ու գրելիս բազմաթիվ լեզվական, ոճական սխալներ են կատարում:

Իհարկե, այս շատ պատասխանատու և ծանր գործը միայն դպրոցի, այն էլ հայոց լեզվի ուսուցչի վրա թողնելը քիչ օգտակար բան կարող է տալ: Հիշյալ որոշման պահանջների կենսագործումը հնարավոր է միայն այն դեպքում, եթե իրենց ուժերը մոբիլիզացնեն բոլոր այն օղակները, կազմակերպությունները, անհատները, որոնք գործ ունեն հայոց լեզվի հետ և կարող են որոշակի աշխատանք կատարել (մամուլ, հեռուստատեսություն, ռադիո, հրատարակչություններ և այլն):

Հայտնի է, որ հասարակության զարգացմանը զուգընթաց մեծանում է լեզվի դերը: Բնականաբար, զարգացած սոցիալիստական հասարակարգում այն ավելի է մեծանում, քանի որ աճում է հաղորդակցման պահանջը, ընդարձակվում են լեզվի գործածության ոլորտները: Այս կարևոր հանգամանքից է բխում հույժ պատասխանատու վերաբերմունքը, երկյուղածությունը լեզվի, դրա կանոնների ու օրինաչափությունների նկատմամբ: Կրկնում ենք, համատարած գրագիտության, պարտադիր միջնակարգ կրթության պայմաններում (որը մեր խոշոր նվաճումներից է) յուրաքանչյուր քաղաքացի պետք է կարողանա գրագետ խոսել ու գրել: Դա նրա բարեկրթության, խոր ինքնագիտակցության, կազմակերպվածության առաջին նախապայմանն ու արտահայտությունն է:

Զարգացման երկար ճանապարհ անցած հայոց լեզուն դարձել է կուսակցական-պետական հոգածության առարկա: Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր տերմինաբանական կոմիտեն լեզվաշինության հարցերով զբաղվող մարմին է, որ շատ բան է արել մեր լեզվի մշակման, կատարելագործման, կանոնավորման գործում: Հանրապետության սահմանադրությամբ հայերենը հռչակվել է պետական լեզու: Այլ խոսքով, ստեղծված են անհրաժեշտ պայմաններ հայոց լեզվի զարգացման համար, և բոլորս պարտավոր ենք հոգալ այդ մասին:

Լեզվի զարգացման, բառապաշարի հարստացման, արտահայտչամիջոցների մշակման հարցերում աներևակայելիորեն աճել է նաև մամուլի դերը: Այն դարձել է միլիոնների սեփականությունը: Ընդ որում, ընթերցողները տարբեր հետաքրքրությունների, կրթական տարբեր մակարդակի, տարբեր մասնագիտության մարդիկ են, որոնցից շատերի համար մամուլում հանդիպող յուրաքանչյուր բառ, կառույց անվերապահորեն ճիշտ է և ընդունելի, ընդօրինակելի: Ահա ինչու մամուլի յուրաքանչյուր աշխատող պետք է պատասխանատվություն զգա նաև լեզվագործածության հարցում,



լինի առավել ուշադիր ամեն մի բառի, արտահայտության, ինչպես և կետադրական նշանների գործածության նկատմամբ: Ցավով պետք է խոստովանել, որ երբ ընթերցում ենք հանրապետական մամուլը, նկատում ենք, որ ոչ բոլորն են զգում այդ պատասխանատվությունը: Դժվար է գտնել լրագրի մի համար, որտեղ այս կամ այն կարգի մեղանչումներ չլինեն: Ուշադիր ընթերցողը լրագրերի էջերում կգտնի լեզվաոճական տարբեր բնույթի սխալներ, անհարթություններ, վրիպումներ, ազգային լեզվամտածողությանը խորթ ձևեր, կապակցություններ:

Հնարավորություն չունենալով խոսելու բոլոր տեսակի լեզվական սխալների, լեզվաոճական թերությունների ու վրիպումների մասին, ցանկանում ենք մամուլի (նաև հեռուստատեսության ու ռադիոյի, հրատարակչությունների) և համապատասխան անձանց, օղակների ուշադրությունը հրավիրել մի քանի կարևոր հարցերի վրա, ցույց տալ առավել տարածված ու տիպական մի շարք սխալներ: Քանի որ դրանք ընդհանուր են ու այս կամ այն չափով բնորոշ գրեթե բոլոր լրագրերին, ուստի նպատակահարմար չէ ամեն անգամ դրանց անունը նշել: Ասենք, որ նյութերը քաղել ենք «Ավանգարդ», «Գրական թերթ», «Երեկոյան Երևան», «Սովետական դպրոց», «Պիոներ կանչ», «Հայաստանի ֆիզկուլտուրնիկ» լրագրերի 1980—1981 թթ. տարբեր համարներից, լրագրեր, որոնք լույս են տեսնում տասնյակ հազարավոր տպաքանակով, ունեն բազմահազար ընթերցողներ:

Լեզվաոճական նկատելի թերությունները, սխալները պայմանականորեն բաժանենք խմբերի և ըստ այդմ վերլուծենք, ցույց տանք դրանք՝ հնարավորության սահմաններում տալով անհրաժեշտ բացատրություններ:

Նախ բառընտրության, բառերի սխալ գործածությունների մասին: Սկսում ենք այս խիստ տարածված սխալից, քանզի, հայտնի է, որ հասկացությունները՝ առարկա, գործողություն, զանազան հատկանիշներ արտահայտվում են բառերի միջոցով, և ինչպես դիպուկ նկատել է բառի արժեքը լավագույնս զգացող մեծ բանաստեղծը՝ բառը մի աշխարհ է: Զգույշ պետք է վարվել այդ բառ-աշխարհների հետ: Իհարկե, բառերի իմաստները քարացած չեն, իմաստափոխությունը սովորական երևույթ է լեզուների մեջ, հետևաբար խոսքը բառի՝ մեր օրերում ունեցած իմաստով (կամ իմաստներով) ոչ ճիշտ գործածության մասին է: Թվարկենք մի քանի օրինակներ, տեղ շահելու նպատակով բաց թողնելով այն բառերն ու կապակցությունները, որոնք նշանակություն չունեն մեզ հետաքրքրող բառի գործածության կամ կապակցության ճշտությունը ցույց տալու համար:

Որքան էլ զարմանալի է, մամուլում հաճախակի ենք հանդիպում հասարակական-քաղաքական տերմինների, բառերի սխալ, ոչ ճիշտ գործածությունների: Այսպես. աշխատանքը ոչ թե իրականացնում են, այլ կատարում, և այս իմաստով ճիշտ չէ «սեփական ուժերով իրականացրել են ավելի քան 170 հազար ռուբլու աշխատանք»: Պարապուրդը կարող է լինել շատ և ոչ թե մեծ, ինչպես՝ «Դեռևս մեծ են կադրերի հոսունությունը, պարապուրդները»: Շատ հաճախ միջոցառում բառի փոխարեն գործածում են միջոց բառը: Այսպես. «Իրանի կառավարությունը մտադիր չէ սահմանափակվել մասնակի միջոցներով» (փոխանակ՝ միջոցառումներով): Ի՞նչ է նշանակում «սոսինձը արմատավորվում է», կամ. ի՞նչ է նշանակում «աշխատանքի անվտանգ ապահովում» (գուցե անվտանգությա՞ն ապահովում): Մի այլ տեղ կարդում ենք. «Հանգստի սենյակ. այստեղ ստեղծված են հանգստանալու բոլոր հարմարությունները՝ գունավոր հեռուստացույց, շախմատ, նարդի, ամսագրեր, օրվա թարմ լրագրեր»: Մի՞թե սրանք հանգստանալու հարմարություններ են:

Լրագրերից իմանում ենք, որ «էներգոռեսուրսների խնայողության բարձր ռիթմ» ևս կա, որը «կաբելագործները ստանձնել են դեռևս հնգամյակի սկզբից» և «հաստատուն կերպով շարունակվում է»: Գալիք բառին մոտիկ լրացումն անհարիր է մանավանդ նման կապակցությունում՝ «մոտիկ գալիքում է կուսակցության XXVI համագումարը»: Տարածված է կիսել բառի սխալ գործածությունը՝ «կիսում եմ հպարտությունը», «կիսում էին մտահոգությունը», «կիսում է այդ կարծիքը», «կիսում է ըստացած տպավորությունը» և այլն: Կիսել նշանակում է կես անել, մասերի բաժանել, կըտրել, նվազեցնել և այլն, հետևաբար, կարծիքը, մտահոգությունը, տպավորությունը կիսվել չեն կարող:

Թվարկենք մի քանի այլ բառերի սխալ գործածության օրինակներ. «արտադրվեց... ազգային եկամուտ», «երիտասարդների սերունդները լենինյան պատգամների բարձր իմաստով էին ստուգում և ստուգում են իրենց մեծագործությունները», «երկարօրյա... խմբերի աշխատանքում կան թերություններ, որոնք կարիք ունեն շտկման կամ նորոգման», «հղկված են բարոյապես ու էթիկապես», «զարգացած անասնապահական ուղղություն ունեցող տնտեսություն», «կուլտուրական անասնապահություն», «հոգատարության և ուշադրության կենտրոնում», «պատասխանատու պարտք» և այլն:

քիչ բառերով հաղորդել ինֆորմացիան: Հետևաբար, պետք է խուսափել ինֆորմացիա հաղորդող ավելորդ բառերից, արտահայտություններից: Նման օրինակներ բերել ենք արդեն: Ավելացնենք մի քանիսը ևս. «Եթե մինչև վերջին տարիները 100 կովից ստացվում էր ընդամենը 80 հորթ, ապա այժմ նույնքան կովից ստացվում է 100 հորթ», այստեղ երկրորդ նախադասության փոխարեն կարող էր լինել «ապա այժմ՝ 100»: «Մրցության մասսայականությունը պայմանավորված է առանձին վերցրած նրա յուրաքանչյուր մասնակցի նախաձեռնողականությունից», որտեղ «առանձին վերցրած նրա» արտահայտությունը միանգամայն ավելորդ է, քանի որ այդ իմաստն արտահայտվում է «յուրաքանչյուր մասնակցի» կապակցությամբ, բացի այդ, «նախաձեռնողականությունից» պայմանավորված լինել չի կարող, պետք է լինի նախաձեռնողականությամբ: Կամ ինչո՞ւ «պարտնյորները կատարում են ինֆորմացիայի փոխանակում» և ոչ «փոխանակում են ինֆորմացիա», որով և՛ ճիշտ կգրվեր, և՛ կշահեինք մեկ բառ:

Տարածված է նաև պատճառական (և ձևով դրան նման) բայերի անցյալ կատարյալի սխալ կազմությունը— լրացրեցին, անցկացրեցին, մոտեցրեցին, հասկացրեցին, որոնց ճիշտ ձևերն են լրացրին, անցկացրին, մոտեցրին, հասկացրին, քանի որ դրանց անցյալ կատարյալը կազմվում է անցյալի հիմքից (լրացր, անցկացր, մոտեցր, հասկացր)՝ համապատասխան դիմային վերջավորությունների ավելացմամբ: Այս հարցում անհետևողականությունն ու անտարբերությունը այն աստիճանի են հասել, որ միևնույն հոդվածում նույն նախադասության մեջ գործածվում են հավասարացրեցին և միացրին սխալ ու ճիշտ ձևերը:

Պետք է խուսափել հարակատար դերբայի հետ օժանդակ բայի ժխտական ձևի նախադաս գործածությունից, որը թեև տարածված է, բայց հանձնարարելի չէ. չի ավարտված, չի տրամադրված, չի հասունացած և այլ ձևերի փոխարեն նախընտրելի են ավարտված չէ, տրամադրված չէ, հասունացած չէ ձևերը:

Մամուլում հատկապես շատ են կետադրական սխալները: Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ չկա լրագրի մի այնպիսի էջ, որտեղ կետադրական բազմաթիվ սխալներ չլինեն. կետադրական կանոնները ուղղակի ոտնահարված են, հաճախ կրում են սուբյեկտիվ բնույթ, ամեն մեկը կետադրում է իր իմացած ձևով, աչքի է զարնում անմիօրինակությունը: Կետադրական նշանները հիմնականում ստեղծված են գրավոր խոսքի որոշ թերություններ (արտասանական ելևէջավորում, դադարներ) պակասեցնելու անհրաժեշտությամբ, և դարերի ընթացքում դրանց գործածությունը որոշակիորեն ճշգրտվել է, յուրաքանչյուր լեզու մշակել է կետադրման իր համակարգն ու կանոնները... Հասկանալի է, կարող է լինել նաև անհատական, հեղինակային կետադրություն, բայց այն չպետք է հակասի ընդունված սկզբունքներին:

Յուրաքանչյուր դպրոցական գիտե, որ առաջադաս և ետադաս տրոհվող դերբայական դարձվածներն անջատվում են բութով: Սակայն մամուլի որոշ աշխատողներ մոռացել են այս կանոնը և ավելի հաճախ գործածում են ստորակետ: Իհարկե, նման վիճակի հետ կարելի էր հաշտվել, այն համարելով տեղաշարժ, որ պետք է օրինականացվի: Սակայն հարցն այն է, որ բացակայում է միօրինակությունը. նույն լրագրի նույն հոդվածում պատահում են և՛ բութով, և՛ ստորակետով անջատման օրինակներ, որոնք այնքան շատ են, որ վկայակոչելու հարկ չկա:

Սրա հետ կապված մի այլ հարց: Բոլոր դերբայական դարձվածները չէ, որ կետադրական նշանով պետք է տրոհել: Շատերը մոռացել են նաև այս և որտեղ տեսնում են քիչ ծավալուն դերբայական դարձված, տրոհում են ստորակետով, երբեմն նաև բութով: Խոսքը վերաբերում է հատկապես կապային դարձվածներին, որոնք, իբրև կանոն, չեն տրոհվում: Բերենք սխալ տրոհման ու կետադրման օրինակներ. «Աշխատելիս, դա էլ պետք է նրան սովորեցնել», «Շատ դրույթներ, էկոնոմիկայի կառավարման գործիք դառնալուց առաջ համակողմանի ստուգման ենթարկել պրակտիկայում», «...գան հանրախանութ՝ իրենց ուզածը գնելու համար», «...որոնք առաքվում են Սովետական Միության հաստոցաշինական գործարաններ՝ մամլող հաստոցների մեջ տեղադրելու համար» և այլն: Ավելին, նույնիսկ ենթական ու ստորոգյալն են անջատում բութով. «Դրա պատճառներն են միջոցների մշտական պակասը, կենտրոնացված ղեկավարության բացակայությունը»:

Երբեմն էլ հանդիպում է կետադրական նշանների այնպիսի գործածություն, որը ոչ մի կերպ հնարավոր չէ պատճառաբանել. «Իսկ դրա հետ միասին՝ նա շատ թույլ մտավոր կարողություն ունի», «Մատակարարի տարիների փորձով ստուգված հուսալիությունը, գնորդին ազատում է գերնորմատիվային պաշարների պահպանման հոգսից» և այլն: Եթե սրանք լինեին պատահական օրինակներ, կարելի էր մտածել, թե վրիպակներ են, դժբախտաբար այդպես չէ:

Խախտվում է ստորակետի գործածության մի սովորական կանոն. և շաղկապից առաջ ստորակետ չի դրվում ենթակայի փոխվելու դեպքում: «...Շուտով ամեն ինչ կկարգավորվի և մետրոպոլիտենի շինարարությունը կընթանա համաչափ», «Աշխատանքների ծավալը մեծացել է 5,2 տոկոսով և հաջողությամբ են կատարվել կապալառուական աշխատանքների պլանները», «Առջևում դեռ երեք ամիս ժամանակ կա և չթուլացող թափով աշխատում են հոսքային գծերը», «Հպարտ այն ամենով, ինչ տվել եմ ես հարազատ ձեռնարկությանը և ինչը նա տվել է ինձ» և այլն:

Բութի շռայլում, չարաշահում նկատվում է հատկապես վերնագրերում՝ աչքի ընկնող տեղում, աչքի ընկնող չափով: Բերենք մի քանի վերնագրեր. Խառնաշփոթություն՝ կարևոր գործում, Խնայողությունը՝ ուշադրության կենտրոնում, Թերացումներ՝ ընդհանուր շրջանակներում, Մաքառում՝ ազատության ճանապարհին, Կարևոր գործին՝ լուրջ մոտեցում, Մեծ հոկտեմբերին՝ արժանի դիմավորում, Հարվածային ավարտ՝ հնգամյակին, Արժանավայել դիմավորում՝ լենինյան հոբելյանին և այլն: Այս բոլոր վերնագրերում բութն ավելորդ է: Ոմանք բութի այս գործածությունը փորձում են արդարացնել զեղչումով: Բայց սա պարզապես շփոթություն է, այնտեղյակություն լեզվի իրական փաստերին:

Ինչպես նշված է Ժամանակակից հայոց լեզու ակադեմիական քերականության երրորդ հատորում, վերջին շրջանում նկատելի է գոյականների տրական հոլովով (ոչ միայն տրական) լրացում ընդունելու երևույթի ակտիվացում: Առաջին հերթին խոսքը վերաբերում է բայանուն գոյականներին, որոնք խնդրառական ընդհանրություններ ունեն նույնարմատ բայերի հետ: Նշանակում է բայի զեղչման մասին խոսք լինել չի կարող, տվյալ հոլովով լրացում առնելը այդ բառի իմաստային պահանջն է: Վերոհիշյալ օրինակներում այդպիսի բայեր են խառնաշփոթություն, խնայողություն, թերացում, մաքառում, մոտեցում, դիմավորում, ավարտ բայանուն գոյականները: Դրանց նմանությամբ խնդրառական երևույթը տարածվել է նաև այլ գոյականների վրա, հետևաբար ներքոհիշյալ վերնագրերում նույնպես զեղչում չկա, և բութն ավելորդ է. Իրավական գիտելիքներ՝ սովորողներին, Լավագույնը՝ երեխաներին, Նամակ՝ մանկավարժ ծնողներին, Հանրապետությունը՝ տասներորդ հնգամյակում, Միասնական օր՝ դպրոցներում, Դասագրքերին՝ երկար կյանք, Հուշադրոշը՝ բանվորական կըրթօջախին և այլն: Սույն վերնագրերի մի մասը հիշեցնում է կոչեր, որոնք վաղուց գործածվում են հայերենում, ինչպես՝ Մա՜հ գերմանական ֆաշիստներին, որում երբեք բութ չի դրվել: Երբ մեր մեծ գրողները գրում էին «Խաղաղությո՜ւն ձեզ, մեր անբախտ պապեր», «Ողջո՜ւյն արխադաշ Ալուն, Հաղթանա՜կ գործին Իլյիչի», «Նամակ ռուսաց թագավորին» և այլն, նրանց մտքով իսկ չէր անցնում խաղաղություն, ողջույն, հաղթանակ, նամակ բառերի վրա բութ դնել և լրացումներից անջատել:

Առհասարակ վերնագրերում պետք է խուսափել հատկապես տրոհության նշաններ գործածելուց, վերնագիրն այնպես ձևակերպել, որ դրա կարիքը չզգացվի: Բայց հաճախ անհաջող ձևակերպումն աշխատում են քողարկել բութով: Օրինակ. Օրակարգը՝ սոցիալիստական օրինականության պահպանման հարցը: Բութը ոչ մի կերպ չի փրկում այս վերնագիրը: Այլ օրինակներ. Անհատական մրցությունը՝ ավելի գործնական, Աշխատանքը՝ մեծագույն պատիվ, Համամիութենականը՝ Երևանում, Հայրը՝ դաստիարակ և այլն:

Այս վերնագիր-կառույցների մի մասը բառացի պատճենում է ռուսերենից: Ամեն լրագրող գիտե, որ բառացի պատճենում-թարգմանություններն աղավաղում են լեզուն. յուրաքանչյուր լեզու ունի կապակցման իր օրինաչափությունները: Այս առումով հայերենը զարմանալի ճկուն է (որը երբեմն չենք զգում ու չենք օգտվում այդ ճկունությունից), և դա մասամբ պայմանավորվում է մեր «ամենակարող» օժանդակ բայով: Այն ի վիճակի է փոխարինելու այլ լեզուների երկար բառերին և պահպանելու վերնագրի ամենակարևոր հատկանիշներից մեկը՝ սեղմությունը: Օրինակ՝ Ստորգետնյա հոսքը՝ օվկիանոսի ռեզերվ, Էլեկտրոնային հաշվիչ մեքենան՝ բուհի օգնական, Արարատցիները՝ հավաքականի թեկնածուներ և նման այլ տարօրինակ ձևակերպված վերնագրերը մի՞թե ավելի լավ չէին հնչի հետևյալ տեսքով. Աշխատանքը մեծագույն պատիվ է, Էլեկտրոնային հաշվիչ մեքենան բուհի օգնականն է, Արարատցիները հավաքականի թեկնածուներ են և այլն: Ոմանք կարող են առարկել, թե վերնագրերը հիմնականում պետք է լինեն անվանողական բնույթի: Համաձայն ենք, ուրեմն այս դեպքում այնպես պետք է դասավորել բառերը, որ նախադասության տեսք չստանան (թեև երբեմն դրանք ավելի արտահայտիչ են): Կասեն նաև, թե է-ով և առանց է-ի ձևերն ունեն ոճական-արտահայտչական տարբերություններ, բութը տրոհում է, և տրոհվող մասն առանձնացվում, դրանով իսկ շեշտվում, ընդգծվում է: Ճիշտ է, բայց նկատի պիտի ունենանք, որ հանուն այդ ոչ էական հանգամանքի չի կարելի ստեղծել արհեստական կառույցներ, լեզուն աղավաղել: Դրա համար կան այլ միջոցներ, մասնավորապես շարադասության փոփոխություն, այլ բառերի, այլ կառույցների ընտրություն և այլն: Չենք կարող չնշել, որ նկատվում է մի վատ սովորություն.

ներով ու լճակներով: Թամանյանի նման ըստեղծագործական վիթխարի կարողության ու վառ երևակայության տեր մարդ պետք էր լինել կարողանալու համար, հին Երևանի իրականությունից ելնելով, մտովի տեսնել այն, ինչ մենք տեսնում ենք այսօր: Իրոք «նա տեսել էր երնի արևային մի քաղաք, որպես մաքուր մարմարի կապույտ կողին նկարված»...

...Մայրաքաղաքի գլխավոր հատակագիծը կազմվեց այն ժամանակ, երբ սովետական քաղաքաշինական արվեստը նոր էր սկզբնավորվում, չկային անհրաժեշտ փորձ, նորմատիվներ, մշակված սկզբունքներ: Չնայած դրան, նախագծում ճիշտ են որոշված մայրաքաղաքի ֆունկցիոնալ և գեղագիտական-սոցիալական խնդիրները, սոցիալիստական բովանդակությունը: Հատակագծում աչքի են զարնում ճարտարապետական գեղեցիկ, խորամիտ, տեղանքի հետ սերտորեն կապված մտահղացումներ՝ ազգային ավանդական յուրահատկություններով:

Այն ժամանակ, երբ ամբողջ նախասովետական Անդրկովկասում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, նախագծում առանձնացված էր մի ամբողջ թաղամաս այդ նպատակի համար, որը և իրականացվեց հետագայում՝ համալսարանի և բազմաթիվ այլ ինստիտուտների կառուցմանը: Երևանում չըկար թատրոնի ոչ մի հատուկ շենք. նախատեսված էր հոյակապ «Ժողտան» շենքը, որը նույնպես իրականացվեց: Հին Երևանի շուկայական միակ հրապարակի փոխարեն նախագծված էր հրապարակների մի ամբողջ հաջորդաշար՝ քաղաքի կոմպոզիցիոն գլխավոր առանցքի վրա— Մյասնիկյանի, Շահումյանի, Լենինի, օպերայի: Եվ այդպես, ամեն ինչ հեռանկարային կռահումներով, ապագայի հնարավորությունների մեծ հավատով:

Վերականգնվեց Հայաստանի բազմերանգ քարերի օգտագործումը: Պայծառացան Երևան, Լենինական քաղաքները և այլ բնակավայրեր (որոնք նախկինում հիմնականում տեղական սև տուֆով էին կառուցվում և միօրինակ տխուր տեսք ունեին): Սովետահայ ճարտարապետության մեջ լայնորեն օգտագործվեց բնական քարը՝ հատկապես Արթիկի տուֆը:

Թամանյանի ամենամեծ ստեղծագործական սխրանքը եղավ այն, որ նա Լենինի անվան հրապարակի, Կառավարական տան և Ժողտան (օպերայի) շենքերով հաստատեց Երևանի նոր՝ մայրաքաղաքային մասշտաբը, հանդիսավոր, կենսուրախ ճարտարապետական կերպարը՝ ազգային բնութագրով, որի շնորհիվ գորշ, գավառական քաղաքը դարձավ հազարամյա ճարտարապետական բարձր մշակույթ ունեցող ժողովրդի արժանավայել մայրաքաղաք:

Հայկական ճարտարապետության զարգացման բնորոշ հատկանիշներից մեկն այն է, որ միշտ, ամեն մի նոր ժամանակաշրջանում, կառուցողական արվեստը չի կտրվել իր հիմքից, շարունակել ու զարգացրել է նախորդ սերնդի նվաճումները՝ օգտագործելով նրա առաջատար ավանդույթները:

Նախնադարյան կիկլոպյան կառուցվածքների, բերդշենների պատերի շարվածքը փոխանցվել է, կատարելագործվել ուրարտականում, դարձել պալատ ու տաճար Էրեբունիում, հեթանոսական Հայաստանում սյունն ստացել է խարիսխ ու խոյակ, դարձել է Գառնի, վաղ միջնադարում կերտվել են Երերույքն ու Հռիփսիմեն, Զվարթնոցը՝ կրելով նաև դասական կնիքը: Իսկ երբ VII—IX դարերում արաբական տիրապետության ժամանակ որոշ չափով ընդհատվեց շինարարությունը, արաբների երկրից դուրս քշելուց հետո՝ X—XIII դարերում, վերստին փայլատակեց ճարտարապետներ Մանվելի, Տրդատի, Մոմիկի արվեստը, հանդիսանալով VII դարի ընդհատվածի շարունակությունը:

Սովետահայ ճարտարապետները, ուղեցույց ունենալով Թամանյանի ստեղծագործությունը, կամրջեցին հանճարեղ նախնիների՝ բռնի կերպով ընդհատված ճարտարապետությունը, նոր շունչ, նոր բովանդակություն հաղորդելով նրան:

Դիմելով ազգային ճարտարապետության հարուստ գանձարանին՝ Թամանյանը չդարձավ հին ձևերի մեխանիկական կրկնող. ըմբռնելով հայկականի տեկտոնիկ ու պլաստիկ յուրահատկությունները և հարազատ մնալով ազգայինին, նա հարստացրեց այն նոր բովանդակությամբ, օգտվելով նաև համաշխարհային ճարտարապետության պրոգրեսիվ ավանդույթներից, կառուցողական նոր հնարավորություններից:

Կառավարական տունը Լենինի անվան հրապարակի վրա, Հայաստանի նոր, սոցիալիստական պետականության խորհրդանիշը լինելով՝ ավելի, քան մի այլ շենք, հավակնություն ուներ ազգային ոճով հագեցված լինելու: Հեղինակը վարպետորեն կենսագործեց այդ, ստեղծելով հանրանշանակ նոր տիպի շենք, հարազատ իր հողին, որը թեպետ չունի իր նախատիպը մեր հին ճարտարապետության մեջ, բայց մարմնավորում է դրանց բոլորի լավագույն հատկանիշները: Երեկոյան, երբ մայր մտնող արևի բոսորագույն ճառագայթները ավելի վարդագույն են դարձնում այդ շենքի ճակատը, թվում է՝ կենդանանում են քարերը, ու լույսը նրանց



խորքից է բխում, և դժվար է առանց հուզմունքի, անտարբեր անցնել արվեստի վեհ հայտնագործության կողքով:

Իր երկրորդ խոշոր ստեղծագործության՝ ժողովրդական տան նախագծում Թամանյանը ձգտել է ստեղծել ժողովրդական մեծ հանդեսների և թատերական այնպիսի շենք, ուր բեմի ու դահլիճի, հանդիսատեսի ու դերակատարների փոխհարաբերությունները դրսևորվեին նոր սկզբունքներով. մի բան, որին ձգտում էին Մեյերխոլդը, Վախթանգովը, Յակուլովը: Այդ երկու կառույցներն ուղենիշ դարձան մայրաքաղաքի հետագա շինարարության և ճարտարապետների մի ամբողջ սերնդի համար:

Թամանյանը մենակ չէր, նրա հետ համագործակցում էին իր սերնդակից ճարտարապետները, իսկ հետագայում նաև սովետկան բուհերն ավարտած երիտասարդ շատ մասնագետներ: Մեծ ճարտարապետն ունեցավ բազմաթիվ շնորհալի հետնորդներ. նրա արվեստանոցում սովորեցին ու հմտացան Հայաստանի անվանի ճարտարապետներից շատերը, նրանց նախագծերով ավարտվեց Լենինի հրապարակի համալիրը, կառուցվեցին նոր Երևանը, Լենինականը, Կիրովականը և շատ բնակավայրեր:

20—30-ական թվականներին, երբ դեռ չէր կազմակերպվել ճարտարապետների միասնական միություն, կային ստեղծագործական տարբեր ուղղություններ՝ «թամանյանական դպրոց»-ին էին հարում ավագ սերնդի և երիտասարդության մի մասը: Սակայն Թամանյանի ըստեղծագործությունը 30-ական թվականներին չընդունվեց անվերապահորեն. կոնստրուկտիվիզմին հարողները փորձեցին այն համարել էկլեկտիկ, եկեղեցական, ֆեոդալական, հին ճարտարապետության վերականգնում: Մինչդեռ Թամանյանի ստեղծագործական մեթոդը զերծ էր այդ արատներից: Ժառանգությանը դիմելով հանդերձ, իր կառույցներում նա օգտագործում էր նոր մեխանիզմներ, կառուցողական հնարներ: Մինչ կոնստրուկտիվիստները քարով էին կառուցում պատը, դրան տալով բետոնի տեսք, իսկ ճարտարապետ Բաևը հասել էր այնպիսի աբսուրդի, որ քարաշատ երկրում արհեստական քարերով էր շենք կառուցում, Թամանյանը Կառավարական տան և օպերայի շենքերում կիրառում էր երկաթ-բետոնե կարկաս, բետոնե պատերը երեսպատում քարով: Նա միակն էր, որ բնավ չզիջեց իր ըստեղծագործական դիրքերը ճարտարապետական ժառանգության օգտագործման հարցում: Մեր կոնստրուկտիվիստների դերը տարբեր ժամանակներում միտումնավոր կերպով թերագնահատվել և գերագնահատվել է: Ճշմարտությունն այն է, որ նրանց գործունեությունն օգտակար էր ժառանգությանը քննադատորեն վերաբերվելու, ֆունկցիոնալ խնդիրներին ավելի ուշադրություն նվիրելու և քաղաքաշինական պրոգրեսիվ սկզբունքներ առաջադրելու առումով, բայց սխալը եղել է ազգայինը և Թամանյանին արժութավորելու հարցում: Իսկ նրանց գործերից շատերը չիրագործվեցին կյանքի պայմաններին անհամապատասխանելու պատճառով:

Աբովյան փողոցի վրա իրար դիմաց կառուցված են մեր կոնստրուկտիվիստների երկու շենքեր՝ «Կառուցողների ակումբը» (ռուսական թատրոնը և «Մոսկվա» կինոթատրոնը: Առաջինը կառուցված է վաղ շրջանում, երբ կենսագործվում էր կոնստրուկտիվիստների գլխավոր լոզունգներից մեկը՝ «Նոր շինանյութեր— նոր ճարտարապետություն», և այդ շենքը կառուցվեց երկաթ-բետոնի յուրահատկություններով, թեև դրա հիմնական մասի պատերը կառուցված են սովորական քարից, բայց սվաղված՝ երկաթ-բետոնի տեսք տալու նպատակով: Իսկ կինոթատրոնի շենքում նույն կոնստրուկտիվիզմը հանդես է գալիս կառավարական տան օրինակին հետևելու միտումով՝ գոգավոր շքամուտք, քանդակազարդ խոյակ ունեցող զույգ սյուներ, քարե երեսպատում:

Պայքարը ճարտարապետության այդ երկու ուղղությունների միջև օգտակար էր նրանով, որ մի կողմից զգուշացնում էր ավելի քննադատորեն մոտենալ ժառանգությանը, մյուսից մըղում ուսումնասիրելու, արժեքավորելու ժառանգությունը:

«Թամանյանական դպրոցը» գերիշխող հանդիսացավ երեսնական թվականներին. սովետահայ ճարտարապետությունը վերածնունդ ու ծաղկման շրջան ապրեց: Սակայն եղան և այնպիսիները, որոնք մակերեսորեն հասկանալով ժառանգության նշանակությունը, սկսեցին մեխանիկորեն կրկնել ավանդականն ու Թամանյանի կերտվածքները, ճարտարապետության մոնումենտալ ձևերն օգտագործելով նույնիսկ բնակելի շենքերում:

Ժառանգության օգտագործման սկզբունքն ավելի խորացավ Հայրենական պատերազմից հետո, հաղթանակի ոգևորության, ընդհանուր վերելքի մթնոլորտում, մոնումենտալիզմի, ցուցադրականության, «փասադային» ճարտարապետության գերիշխանությամբ, և ո՛չ միայն Հայաստանում: Այդ երևույթը, բնականաբար, հարուցեց հակադիր տրամադրություններ: Բեկումը հասունացել էր նաև նրանով, որ այդ ժամանակ ստեղծվել էին պայմաններ շինարարության ինդուստրացման համար: 1954 թվակա-

նին Մոսկվայում կայացավ համամիութենական խորհրդակցություն՝ նվիրված շինարարության ու ճարտարապետության խնդիրներին, որտեղ իրավամբ քննադատվեցին ճարտարապետության ասպարեզում տեղ գտած թերությունները՝ անբավարար ուշադրությունը ֆունկցիոնալ, տնտեսական, տեխնիկական խնդիրներին, ձևամոլությունը, չարդարացված ավելորդությունները և այլն:

Խորհրդակցությունը և դրան հաջորդող կառավարական որոշումները բարերար ազդեցություն ունեցան ճարտարապետության հետագա զարգացման վրա: Շինարարության ասպարեզում ներդրվեցին կառուցողական նոր մեթոդներ, ստեղծվեցին շենքերի հավաքովի մասեր պատրաստող գործարաններ: Այդ միջոցառումները նպաստեցին շինարարության աննախընթաց արագացմանը, հնարավորություն ընձեռելով մեծ մասշտաբներով ծավալելու մասսայական բնակելի ու հասարակական շենքերի կառուցումը՝ «զանգվածների» սկզբունքով, ազատ հողատարածությունների վրա, որը հույժ անհրաժեշտ էր դարձել արագ աճող քաղաքների համար: Միաժամանակ դա հարստացրեց ճարտարապետների ստեղծագործական հնարավորությունները, արտահայտչամիջոցների ներկապնակը:

Որոշակի բեկում ստեղծվեց ճարտարապետության ոճային ուղղության ոլորտում: Որոշ իմաստով վերականգնվեցին կոնստրուկտիվիզմի պրոգրեսիվ սկզբունքները, այս անգամ արդեն գիտատեխնիկական նպաստավոր պայմաններում, ուստի և՝ առավել արդյունավետ:

Ճարտարապետների նոր սերունդը հնարավորություն ստացավ՝ օգտագործելու ավելի ժամանակակից կառուցողական հնարներ և նոր շինանյութեր, համարձակ որոնելու և ստեղծելու կոմպոզիցիոն նոր հորինվածքներ: Նախկինում գերիշխող պարագծային կառուցապատմամբ «փասադային» ճարտարապետությունը փոխարինվեց ծավալատարածական անկաշկանդ կոմպոզիցիոն ձևերով: Վերամբարձների ներդրմամբ հնարավոր դարձավ բարձրացնել շենքերի հարկայնությունը, դրա հետ մեկտեղ՝ մասշտաբները:

Սակայն, ինչպես միշտ, նորի սկզբնավորման հետ եղան նաև անցյալի հասումները թերագնահատելու փորձեր, ավանդական արտահայտչամիջոցները, շինանյութերը համարելով ճարտարապետության արխայիկության դրսևորում: Վերստին փորձեցին ճարտարապետության ֆունկցիոնալ և կոնստրուկտիվ կողմերը հակադրել էսթետիկականին՝ խախտելով դրանց անհրաժեշտ միասնությունը:

Ձգտելով նորովի մոտենալ ժառանգության օգտագործման պրոբլեմին՝ սովետահայ ճարտարապետներն ստեղծեցին այնպիսի շենքեր, ինչպես՝ «Ռոսիա» կինոթատրոնը, սրտաբանության ինստիտուտի շենքը, «Անի» և «Դվին» հյուրանոցները, երիտասարդության պալատը, Մինիստրների խորհրդի վարչական նոր շենքը, Երևանի նոր հանրախանութը, ՀԿԿ Երքաղկոմի, ՀԿԿ հրատարակչության շենքերը և այլն, որոնք կառուցված են և՛ ավանդական ձևերի օգտագործմամբ, և՛ դրանց բացառման սկզբունքով, նոր՝ օրիգինալ մոդայիկ ձևերին հետևելով: Թեև բոլոր դեպքերում դրական է եղել այն, որ կա նոր որակ, բարձր մակարդակ, բազմազանություն:

Հասարակական կարծիքի, կառավարական որոշումների ու իրենց՝ ճարտարապետների անբավարարվածության հետևանքով, այդ տրամադրությունները տևական չեղան: Ճարտարապետության ազգային յուրահատկությունների պահպանման մտահոգությունն այժմ նկատելի է ամբողջ աշխարհում, բոլոր առաջադեմ ճարտարապետները ձգտել և ձգտում են դրան:

Սակայն ճիշտ է նաև այն, որ ազգայինի արտահայտումն այժմ անհամեմատ ավելի դժվար է, որովհետև կան բազմաթիվ գործոններ, որոնք նպաստում են տարբեր երկրների արվեստների ընդգրկման, նմանվելու երևույթին: Այս ասպարեզում կարծիքները հույժ տարբեր են՝ արագացնե՞լ այն, թե՞ գիտակցաբար ձըգտել պահպանել տարբեր երկրների արվեստների ինքնատիպությունն ու հիմքը: Հազարամյակներով մարդկությունը կառուցել է բնական շինանյութերով՝ քարով, փայտով, կավով և աստիճանաբար գտել դրանց պլաստիկայի հնարավորությունները, տեկտոնիկայի արտահայտման միջոցները:

Նոր շինանյութերի օգտագործման, օրըստօրե զարգացող կոնստրուկտիվ հնարներին տիրապետելու համար ժամանակ է պետք, չմոռանանք, որ նույնիսկ երկաթ-բետոնի՝ համեմատաբար արդեն «հին» նյութի, հնարավորությունները դեռևս շատ քիչ են բացահայտված: Ժամանակ է հարկավոր նաև ճարտարապետությունից օգտվողներին նորն ընկալելու, հասկանալու համար:

«Արվեստի առարկան,— ասում է Մարքսը,— ինչպես և ամեն մի արտադրանք, առաջ է բերում արվեստը հասկացող ու գեղեցկով հրճվելու ընդունակ հասարակություն: Ուստի և արտադրությունն արտադրում է ո՛չ միայն առարկա սուբյեկտի համար, այլև սուբյեկտ՝ առարկայի համար» (Քաղաքատնտեսության քննադատության շուրջը, «Հայպետհրատ», 1948 թ., էջ 244):

Ինչ վերաբերում է այժմ շատ տարածված այն տեսակետին, թե սոցիալիստական երկրների ճարտարապետությունը պետք է լինի «ազգային և ինտերնացիոնալիստական», ապա դա պետք է հասկանալ այսպես. ստեղծագործողը պետք է լինի իր գաղափարներով ինտերնացիոնալիստ, և նրա գործերը պետք է նպաստեն ինտերնացիոնալիզմի զարգացմանը և ոչ թե այդ գործերն ունենան հայրենազուրկ ոճ: Եվ իսկական ինտերնացիոնալիստ կարող է լինել միայն հայրենասեր մարդը: Արվեստի գործը համամարդկային է դառնում ազգային լինելով. Պարթենոնը՝ հունական, Քեոփսի բուրգը՝ եգիպտական, Վասիլի Բլաժեննիի (Երանելու) տաճարը՝ ռուսական. հնարավո՞ր է, արդյոք, դրանք միացնել մի ոճի մեջ:

Նորի, արդիականի հետ ազգայինը զգալու և արտահայտելու դրական փորձերից հիշարժան է Սովետական Միության ժողովրդական ճարտարապետ Ռաֆայել Իսրայելյանի ստեղծագործությունը: Նրան իրավամբ կարելի է համարել սովետահայ ճարտարապետության ուրույն դեմքի պահպանման ու զարգացման ջատագով՝ Թամանյանից հետո: Վարպետորեն տիրապետելով քարի պլաստիկ հատկություններին և զգալով դրա տեկտոնիկան, Իսրայելյանը, խորապես ուսումնասիրելով ժառանգությունը, մեծ ակնածանքով վերաբերվելով Թամանյանին, գտավ իր ուրույն ուղին, իր ոճը՝ Հաղթանակի մոնումենտի, Արարատ տրեստի մառանների երկրորդ հերթի, Սարդարապատի համալիրի և հատկապես նրա թանգարանի և բազում այլ գործերում: Ավանդական ձևերը, կամարները, սյուները, քանդակը Իսրայելյանի գործերում ոչ թե լրացուցիչ զարդարանք են, այլ կառուցվածքի էությունից բխող կոմպոզիցիային միաձույլ, կերպարը բացահայտող անհրաժեշտ տարրեր:

XX դարի պրոգրեսիվ ուղղության խոշորագույն ճարտարապետ Օգյուստ Պերրեն ասել է, որ եթե ճարտարապետն ստեղծում է մի գործ, որը թվում է թե միշտ գոյություն է ունեցել, նա կարող է իրեն բավարարված համարել: Իսրայելյանի գործերը ճիշտ այդպիսի տպավորություն են ստեղծում:

Նախասովետական Հայաստանը չի ունեցել ոչ մի հուշարձան՝ նվիրված իր պատմական նշանավոր իրադարձություններով հարուստ անցյալին, օտար զավթիչների դեմ ժողովրդի մղած հերոսական պայքարին: Մոնումենտալ պրոպագանդայի վերաբերյալ Վ. Ի. Լենինի առաջադրած խնդրի արձագանքը եղան բազմաթիվ հոյակապ հուշարձանները Հայաստանում. Լենինի, Շահումյանի, Մյասնիկյանի, Նալբանդյանի, Իսահակյանի, Սասունցի Դավթի, Վարդան Մամիկոնյանի, Գայի արձանները, բոլոր քաղաքներում ու գյուղերում բարձրացող հուշարձանները՝ նվիրված Հայրենական պատերազմում զոհվածներին... Այդ ժանրի զարգացմանը մեծ չափով նպաստել է նաև Իսրայելյանի համագործակցությունը քանդակագործների հետ:

60-ական թվականներից խոշոր դրական իրադարձություններ տեղի ունեցան նաև քաղաքաշինության բնագավառում: ՀԿԿ Կենտկոմի և Մինիստրների խորհրդի նախաձեռնությամբ միջոցներ ձեռնարկվեցին՝ արագացնելու հանրապետության միջին և փոքր քաղաքների սոցիալ-տնտեսական զարգացումը, բարձրացնելու դրանց արտադրական պոտենցիալը, ծավալելու բնակելի և հասարակական շենքերի ու բարեկարգման ավելի ինտենսիվ շինարարություն: Դրան նպաստեցին Երևան—Սևան, Աղստաֆա—Իջևան երկաթուղագծերի ավարտումը, նորանոր խճուղիների կառուցումը, բնական գազի ներմուծումը Հայաստան:

Վերջին երկու տասնամյակներում առանձնապես արագ զարգացան Լենինականն ու Կիրովականը: Ճարտարապետությունն այդ քաղաքներում, ինչպես նաև հանրապետության շատ այլ վայրերում, թոթափեց մինչ այդ գոյություն ունեցող որոշ գավառայնությունը: Դրան նպաստեցին տեղում ստեղծված նախագծային կազմակերպությունները: Լենինականում ձեռնարկվեց շատ կարևոր քաղաքաշինական միջոցառում: Այդ հինավուրց քաղաքը հարուստ է ճարտարապետական բազմաթիվ արժեքավոր հուշարձաններով (ո՛չ միայն առանձին, այլև ամբողջական թաղամասերով), ուստի մի ամբողջ քաղաքամաս որոշվեց դարձնել հուշարձանային արգելանոց՝ բարեկարգելով այն, առանց վերափոխումների, չտեղադրելով այնտեղ նոր կառույցներ: Կիրովականում ավարտվեցին Շահումյանի ու Կիրովի անվան հրապարակների բարձր արտահայտչականությամբ ստեղծված համալիրները:

Շատ կարևոր և մեծածավալ գործեր կատարվեցին 60—80-ական թվականներին հանրապետության բոլոր շրջաններում. ընդլայնվեցին ոռոգման սիստեմները, կառուցվեցին մեծ ջրամբարներ, արհեստական լճեր: Շարունակվեց ամայացած լեռների անտառապատումը հսկայական տարածությունների վրա, հիմնըրվեցին նոր էներգասիստեմներ, առաջին ատոմային էլեկտրակայանը՝ Մեծամոր քաղաքով:

Վերջերս գործարկվեց Մեղրի—Քաջարան ավտոճանապարհը, շահագործման է հանձնվել Երևանի օդանավակայանի առաջին հերթը: Առաջին ուղևորներին ընդունեց Երևանի մետրոպոլիտենը: Հանրապետության ճարտարա-







պետները մշակում են բնակելի և հասարակական ավելի հարմարավետ շենքերի, քաղաքների, ավանների ու գյուղերի հատակագծման, կառուցապատման նոր նախագծեր:

«Անցած հնգամյակում,— Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարում ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը,— Սովետական Հայաստանի ճարտարապետները նկատելի հաջողությունների են հասել ինչպես հանրապետության քաղաքների ու գյուղերի զարգացման, մասսայական բնակարանային շինարարության իրականացման, այնպես էլ եզակի ու մոնումենտալ շատ շենքերի և շինությունների կառուցման գործում»:

Օբյեկտիվորեն գնահատելով այս կարևորագույն բնագավառում կատարվածը՝ նշվեց նաև, որ հանրապետության ճարտարապետներն ու շինարարները դեռևս լրիվ չեն օգտագործում իրենց ընձեռվող հնարավորությունները. մեր քաղաքների, գյուղերի և արդյունաբերական շատ համալիրների ճարտարապետական ընդհանուր մակարդակը չի համապատասխանում ժամանակակից պահանջներին:

Մեր ողջ երկիրը թևակոխել է տասնմեկերորդ հնգամյակը, նորանոր հորիզոններ են բացվել մեր հայրենիքի աշխատավորների առջև: Այս հնգամյակում առավել կընդլայնվեն ստեղծագործական աշխատանքի մասշտաբները, հնարավորությունները: Սովետահայ ճարտարապետությունն այժմ որոշակիորեն ազատագրվում է մոդայական թեքումներից, կենսագործելով ազգային ավանդականի նորովի մեկնաբանում՝ ժամանակակից արտահայտչականությամբ, որի ցայտուն օրինակն է Երևանի մետրոպոլիտենը: Նրա կառուցմամբ բացահայտվեցին մեր ճարտարապետների, կոնստրուկտորների, քանդակագործների, կառուցողների ստեղծագործական ունակությունները, որակով կառուցելու հնարավորությունները:

Մայրաքաղաքի մետրոպոլիտենի առաջին հերթի կառուցման մասնակիցներին ուղղված շնորհավորական հեռագրում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշում է, որ ինժեներաերկրաբանական բարդ պայմաններում կատարված են մեծածավալի աշխատանքներ՝ ճարտարապետագեղարվեստական բարձր մակարդակով, ազգային ճարտարապետության լավագույն նվաճումների օգտագործմամբ: Ոգեշնչված ձեռք բերած հաջողություններով՝ Հայաստանի ճարտարապետներն ու շինարարները ջանք չեն խնայի՝ հայրենի քաղաքներն ու գյուղերը նոր, ավելի գեղեցիկ կառույցներով զարդարելու, հարազատ ժողովրդի համար ավելի բարեկեցիկ կյանք ստեղծելու համար:

Վերջապես ժամանակն է, որ մայրաքաղաքի հուշարձաններն ունենան հուշատախտակ, որի վրա երեք լեզվով գրված լինի կարճառոտ տեղեկություն տվյալ հուշարձանի վերաբերյալ: Սա անհրաժեշտ է ոչ միայն Երևան այցելող հյուրերի ու տուրիստների, այլև երևանցիների համար:

---



Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ **375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 20.4.81—6.5.81: Ստորագրված է տպագրության 13.5.81: ՎՖ 04580: Ֆորմատ՝ 70×1081/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ.: 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16132: Պատվեր 879:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

# *Նոր գրքեր*

Կ. ԴԵՄԻՐՃՅԱՆ— ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարին 1981 թ. հունվարի 22-ին: *«Հայաստան» հրատ., 1981:*

Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարի բանաձևը: *«Հայաստան» հրատ., 1981:*

Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ.— Անդրֆեդերացիայի պետա-իրավական ստատուսը ՍՍՀՄ կազմում: *ԵՊՀ հրատ., 1981:*

Ս. ԹԵՎՈՍՅԱՆ— Կանտը և 19-րդ դարի հայ փիլիսոփայական միտքը: *Ե., ԳԱ հրատ., 1980:*

ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ.— Ժուռնալիստիկան, ժուռնալիստը և ժամանակը: *(Սովետական ժուռնալիստիկայի տեսության հարցեր): «Հայաստան» հրատ., 1981:*

ԳՐ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Սյունիքը Օրբելյանների օրոք (13—15-րդ դարեր): *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Ձ. ԱԶԻԶՅԱՆ— Աշխատուժի կազմավորումը և զբաղվածությունը ՀՍՍՀ բնակչության կենցաղսպասարկման և բնակարանային-կոմունալ տնտեսության ճյուղերում: *Ե., ԳԱ հրատ., 1981:*

Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ— Արտադրության կառավարումը և նրա արդյունավետության բարձրացման ուղիները: *«Հայաստան» հրատ., 1981:*

Պ. ՊԱՊՅԱՆ— Էլեկտրատեխնիկան հնարամիտների ձեռքերում: *(Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման էլեկտրածառայության գյուտարարների և նորարարների ստեղծագործական աշխատանքների փորձից): «Հայաստան» հրատ., 1981:*

Л. И. БРЕЖНЕВ — **Отчетный доклад Центрального Комитета КПСС XXVI съезду Коммунистической партии Советского Союза и очередные задачи партии в области внутренней и внешней политики 23 февраля 1981 года.** М., Политиздат, 1981.

Н. ТИХОНОВ — **Основные направления экономического и социального развития СССР на 1981—1985 годы и на период до 1990 года.** М., Политиздат, 1981.

Б. ПОНОМАРЕВ — **Живое и действенное учение марксизма-ленинизма.** Изд. 3-е, доп., М., Политиздат, 1981.

**Владимир Ильич Ленин.** Биография. Изд. 6. М., Политиздат, 1931.

**Родина Советская. 1917—1980.** Исторический очерк. Изд. 4, доп. М., Политиздат, 1981.

М. ГОРШКОВ — **Партийные организации и общественное мнение.** М., Политиздат, 1981.

Г. КЛОТЧ, А. КОЛЬСДОРФ, Г. ОПИТЦ — **Свобода—преимущество социализма.** М., Политиздат, 1981.

С. ПОПОВ — **Социализм и оптимизм.** М., Политиздат, 1981.

И. КАЛИН — **Коммунистические идеалы. Как их утвердить и развить в человеке. Из опыта Компартии Молдавии по совершенствованию партийного руководства воспитательным процессом.** М., Политиздат, 1981.

А. СОРВИНА, И. ПОЛОЗКОВ — **Партийные организации и развитие специализации и концентрации сельскохозяйственного производства.** М., Политиздат, 1981.

К. НОВИКОВ — **Свобода воли и марксистский детерминизм.** М., Политиздат, 1981.

Р. ГЕВОНДЯН — **Конституционное строительство в Закавказской Федерации (1922—1936 гг.).** Изд. «Айастан», 1981.

ДЖ. ГАЛУСТЯН — **Культурная жизнь армянских колоний средневековой Польши (XVI—XVII вв.).** Изд. АН Арм. ССР, 1981.

В. МИХАЙЛЮК — **Легенды и правда о женском труде.** М., Политиздат, 1981.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ԽՆԱՅԵՆՔ ՎԱՌԵԼԻՔԸ՝ ՇԱՀԵԼՈՎ ՈՐԱԿԸ

*Հանրահայտ է՝ ցեմենտը շինարարական ինդուստրիայի հացն է: Տարեցտարի աճում է դրա պահանջը: Ավելանում է ցեմենտի ձեռնարկությունների թիվը, մեծանում են էներգետիկ ծախսերը: Չէ՞ որ հումքն այրվում է վառարաններում C 1500 ջերմաստիճանում: Կա՞ն, արդյոք, այստեղ վառելիքի տնտեսման ուղիներ:*

*Այդ հույժ կարևոր հարցի մշակմամբ զբաղվել է ցեմենտի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը (Մոսկվա): Մայրաքաղաքի գիտնականներին հաջողվել է ստեղծել տեխնոլոգիայի սկզբունքորեն նոր պրոցես, որի ընթացքում այրումը կատարվում է առավել արագ: Դրա հաշվին խնայվում է վառելիքը, մեծանում վերջնական արդյունքի քանակը և ստացվում է բարձրորակ ցեմենտ: Այս դեպքում բետոնը չի շոգեհարվում, չորանում է 20 անգամ ավելի արագ, քան պորտլանդ-ցեմենտը: Բավական է ասել, որ դրա ներդրումը ցեմենտի միայն որոշ կոմբինատներում երկրին բերում է չորս միլիոն տոննա վառելիքի պայմանական տնտեսում:*

*Այդ ամենին հասնելուն օգնել է էժան, հասարակ, արտադրական ծախսեր չպահանջող հատուկ հավելուկը: Առաջարկվում է սկզբնական բաղադրությանն ավելացնել ցինկի արտադրության խարամը: Նոր տեխնոլոգիան ստացել է 15 հեղինակային վկայական:*

## ՏԱՐԲԵՐ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻ ՀԱՄԱՏԵՂՈՒՄ

*Համաշխարհային պրակտիկայում մանածագործական առաջին «Մետապ—160» մեքենան բանում է կոմբինացված տեխնոլոգիայով. այն միացնում է գործվածքի ստացման երկու ամենահին և ամենատարբեր սկզբունքները՝ ջուլհակությունն ու գործելը: Այստեղ ճնդանաթելերի սիստեմը հյուսվում է գործվածքային մեթոդով: Ձեխական այս մեքենան բանում է շատ արագ, արտադրողականությունը բարձր է 2—3 անգամ, օգտագործվում են տարբեր հաստության թելեր: Գործվածքը ձեռք է բերում բարձր օդաթափանցիկություն, որը շատ կարևոր է սինթետիկ նյութերի կիրառման ժամանակ: Պատրաստի նյութը լվանալուց ու տորելուց հետո լրիվին վերականգնվում է: Այդ նոր գործվածքից կարում են վարագույրներ, աշխատանքային համազգեստներ, աստառներ, խալաթներ, վերնաշապիկներ, սփռոցներ, կահույքի և դեկորատիվ պաստառներ:*

## ԱՐԵՎԵԼՅԱՆ ԲԺՇԿՈՒԹՅԱՆ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻՑ

*Մոնղոլիայի գիտությունների ակադեմիային առընթեր բացվել է բնական միացությունների ինստիտուտ: Դրա յոթ լաբորատորիաներում աշխատում են կենսաբաններ, քիմիկոսներ, բուսաբաններ, դեղագործներ, պատմաբաններ, լեզվաբաններ: Տարբեր մասնագետների նման միավորումը պատահական չէ: Նրանց խնդիրն է վերծանել մոնղոլական հին ձեռագրերը, որոնք պարունակում են հինդո-տիբեթական հինավուրց բժշկության գաղտնիքները: Հին ձեռագրերն արժեքավոր են նրանով, որ դեղատոմսերի մեծ մասի (դրանք մոտ 3 հազար են) բաղադրատարրը բուժիչ խոտերն են և այլ բույսեր, որոնք այսօր էլ առատորեն աճում են ՄԺՀ-ում: Դրանց բաղադրությունն ստուգված է բազմադարյա պրակտիկայով, բայց մինչև օրս հասկանալի չէին, քանզի պատրաստման դեղատոմսերը գրված են հատուկ լեզվով—տիբեթյան սանսկրիտերենով, որը հայտնի է միայն շատ քչերին: Այս գործում օգնության են հասել թարգմանիչները՝ նախկին բուդդայական քահանաները: Նրանք վերծանել են հատկապես այն դեղատոմսերը, որոնց բաղադրատարրերից է և գայլուկը: Այժմ, ըստ այդ դեղատոմսի, ստացվել է «Ոսկե թել» պատրաստուկը, որը դադարեցնում է ներքին արյունահոսությունը այն ժամանակ, երբ նույնիսկ ոչ մի անտիբիոտիկ և ժամանակակից այլ դեղորայք չեն օգնում: Հին մոնղոլական դեղատոմսերը բարդ են, երբեմն ունեն մինչև 30 բաղադրատարր: Դրանք հիանալի բուժում են սրտի, լյարդի, հոդերի, ստամոքսի հիվանդությունները: Այդ բաղադրությունների քիմիական հետազոտությունները կատարել են ԳԴՀ-ի մասնագետները, բժշկական ստուգմանն օգնել են սովետական կենսաբանները:*